# ԻՄԱՄԱԹ

ԳՈՑՄՈՒԿՈՆ ՀԵՑՈՂՕՑՈՒԹԻՒՆ





Տպարան «ՇԻՐԱԿ» Ալեքսանդրապօլ

1 9 0 6

(36)

Ա.

# ՋԱՆՆԻՑԻՆ

1990





# ՋԱՆՆԻԸԻՆ

Թէև տասներկու դար հայերս ապրել ենք շիա պարսիկների հետ, նրանց դրացի կամ իշխանութեան տակ, շփուել ենք այդ ժողովրդի հետ, տարել ենք նրանց հետ անթիւ չար ու բարի, բայց ոչ միայն մինչև օրս մենք հիմնովին չենք ծանօթացել այդ դրացիների կրօնական հաւատալիքների հետ, չենք ըմբռնել նրանց դաւանական վարդապետութիւնը, չենք ունեցել մի ամփոփ գրուածք նրանց կրօնի էական կէտերի և աշխարհայեցութեան մասին, մեր ինտելլիգէնտ դասը շատ թիւր կարծիք ունի Իսլամի այս աղանդի վրայ, այլ տասնեակ դարի մեր գրականութեան մէջ էլ ոչինչ որոշ գործ չունենք նրանց վերաբերեալ։ Որպէսզի կարողանամ բացատրել, թէ ինչ ոյժ ունի շիա կղերը, որ կարողանում է ներգործութիւն ունենալ Իրանի ոչ միայն ներքին գործերի, այլ մինչև անգամ արտաքին քաղաքականութեան վրայ, հարկ տեսայ այս յօդուածովս ծանօթացնել հայրենակիցներիս շիա կղերի կազմի և դաւանանքի հետ։

1. Իսլամի վարդապետ-Մահմէդի մահից յետոյ, յայտնի է, որ նրա հետևորդները արաբական սովորութիւնների համեմատ հաւաքուեցան և Կուրանի որոշ այաթի, հանգուցեալի տուած աւանդութեան համաձայն իրանց Մարգարէին յաջորդ (խալիֆ) և համայնքի առաջնորդ (իմամ) ընտրե-

ցին կրօնի հիմնադրի աներոջը՝ Աբուբէքրին, որ մեծ ջանք էր գործ դրել Իսլամի տարածման և հաստատման գործին։ Այս ընտրութիւնը բորբոքեց մարգարէի հօրեղբօր որդուն և սիրելի դստեր Ֆաթիմէի ամուսին Ալիին, որը միայն իր անձըն էր համարում օրէնսդրին արժանաւոր յաջորդ և հաւատացեալների օրինական առաջնորդ։ Թէև անչափ վշտացաւ այս ընտրութիւնով, բայց չյանդգնեցաւ ամբոխի կամքին հակառակել, լռեց, հրապարակով հպատակեց և համակերպել ձևացաւ, յուսալով որ ծերունի Աբուբէքրից յետոյ, իրեն կյաջողւի առաջնորդի (իմամ) գաւազանը ժառանգել։ Աբուբէքրից յետոյ հաւատացեալների ծերակոյտը, համաձայն հանգուցեալի որոշման՝ յաջորդ (խալիֆ) հրատարակեց Էօմէրին, որով բոլորովին բորբոքուեց Ալին։ Մարգարէի փեսան անձայացած, ոչ միայն հպատակեց Էօմէրին, այլ սրան կնութեան տուեց իր աղջկան՝ Ումմի-Քիւլսիւմին, խորհրդական դարձաւ նրա ժողովներում։ Բայց սրա վրա կուտակուած դառնութիւնը չկարողանալով տանել, մտերիմների և կուսակիցների շըրջանում սկսեց քարոզել, թէ համաձայն Ղուրանի և արիւնակցի՝ մարգարէի կամքին, ինքն է ժողովրդի առաջնորդը և Նոր-գրքի բացատրողը։ («Մէն քունթու մովլա, լահազա Ալի-ուն մովլան».—Որոնց համար որ ես սիրելի եմ, նրանց համար Ալին էլ պիտի սիրելի դառնա)։ Ալին պնդում էր, որ ժողովուրդը իրաւունք չունի խալիֆ ընտրելու, քանի որ ինքը Երկնքից սահմանուած է կրօնը և գիրքը հաւատացեալներին բացատրելու։ Ղուրանի անորոշ և խրթին այաթների բացատրութիւնը նախասահմանութիւնից Ալիին յատկացած լինելը դաւանում էին վերջինիս կուսակիցները։ Էօմէրը, որ դեռ Մահմէդի կենդանութեան, որպէս անձնուէր ախոյեան Իսլամի վարդապետութեան, կաշկանդեց Մարգարէին,—երբ

վերջինս մահամերձ՝ եղէգը պահանջեց կտակ գրելու, ուրկե-լից ասելով.—«Ալլահի գիրքը բաւական է—Էքֆինա քիթաբ-Ուլլահ», կարող է հակառակուն բան գրել՝ ուշքը կորցրած է,—չկարողացաւ սանձել այս գաղափարի վարդապետութիւնը տարածողներին, որոնք Ալիին մեկնիչ (մուբէյին) Ղուրանի էին հաշւում։ Ալին ոչ միայն գաղափարի խրախուսում էր կուսակիցներին այս վարդապետութիւնը տարածելու, այլ նրանց էլ աւելի ոգևորում էր իր ունած մեկնութիւններով։ Մի անգամ երբ Ալիից հարցրին, թէ «Այաթ-Քիւբրան» ինչ մեծ նշան է, որ մի բոպէում Մահմէդը Մէդինէից հասաւ Երուսաղէմի տաճարը, երկինք համբարձաւ ու դարձաւ, նա պատասխանեց, թէ —«Ալլահը ինձնից մեծագոյն նշան չէ ունեւ և Ալլահի համար ինձնից մեծագոյն համբաւաբեր չկա.» (Մալիլլահի այաթիւն աքբերէ, վէ մա լիլլահի նէբէյուն ահզամէ մինի)։ Իօմէրի խօսքերը—գիրքը բաւական է —այնքան չէր բաղխւում Իսլամի դաւանողների ականջին, որքան տարածւում էր Ալիականների շրջանում ականջից ականջ վերջինի պատգամը,—«Էնա-քէլամ-ուլլահի էննաթիկ»—(Ես Աստուծու կենդանի խօսքն եմ)։

2. Զրադաշտի կրօնի վարդապետութեան դարեոր աշակերտածների համար դժւար էր հպատակել ժողովրդից ընտրւած սոսկ մահկանացու առաջնորդին։ Քաղդէաստանի, Բաբէլաստանի, Սուզանիայի, Փարսստանի ժողովուրդը, որ միայն անմահներից ճառագայթած գերբնական իշխանապետներ և առաջնորդներ էր որոնում իր արքունի փառապանծ գահի վրա, չէր կարող երկրպագել Իօմէրի նման ռամկավարն ու պարզաւէր խալիֆին, որը գիշերում էր Դամասկոսի մզկիթի բակում, աղքատ ծածկոյթով, սառը սալայատակի վրա, և արգելում էր Իսլամի հետևողներին բէհէզն ու ծիրանին, դիպակն

ու Թաւրիզը։ Փադիշահական քաղաքը, արևմտյան մասերը իրանց հետևողներով միասին Ալիին, որպէս Գերեզմանիցից ծագումնանմանեալ քըլըզլիշի շառաւիղին։ Սրանց համոզումով մահկանացու և սրբազնական մայրը ծնկածող էր աղջկը կատարեալ, օրէնքներ դնել և կարգեր սահմանել։ Դեռ էր Ալիի նման Աստուածներից սերւած դիւցազն, որին ժողովուրդը պարտաւոր էր անպայման խոնարհել և երկրպագել։ Արւելցին չէր կարող հաշտել Իսլամի այն յայտնութեան հետ, թէ ժողովուրդն է իրենն առաջնորդ ընտրելու և այդ ընտրեալը պարտաւոր է ժողովրդի խորհրդով կառավարելու պետութիւնը։ Արևելքցիների հետ ունեցած շփումներից յետոյ, Ալին ուրիշ առաջ գնաց իր պահանջների մէջ և յայտարարեց, որ ինքն էլ Գերազոյնի հետ յարաբերութեան մէջ է, Աստուածային շնորհիւ եւ անմիջապէս ներշնչում ունի։ Թէև Ալին շրջապատեց իր անձը նոր մարգարէ, նոր յայտնութիւն, այլ սոսկ օրէնսդրի պարգևաւոր առաջնորդի (իմամ) իրաւունքն էր պահանջում, բայց նրա հետևողները երկրպագեցին և մինչև անգամ «Ալիմ-Ալլահ» կանչեցին։ Իսլամի վարդապետութիւնը այնքան թարմ էր, Մահմէդի հետ դրոյց անողները այնքան բազմաթիւ էին, մարգարէի խօսքերը այնպէս տարածւած և հաստատւած էր ամբոխի սըրտում, հաւատք էական մասերը այնպէս խարսխւած էին հաւատացեալների, որ Ալին չհամարձակւեց և իրան Ալլահ անւանողներին պատժել տալ։ Շիա աստուածաբանները և առասպելները հաւատացնում են, որ կորւած գլուխների լեզուները անգամ—«Ալի-Ալլահ»-էին արտասանում մինչև սառչելը։

3. Էօմէրի մահից յետոյ, Իսլամ հաւատացեալների ժողովը Ալիից պահանջեց, որ խօսք տա սոսկ խալիֆ լինել, հետևել Նախորդ երկու խալիֆի ընթացքին և ղեկավարուել Ղու-

էլ միանալով Այիշէին, հինգ տարի շարունակ ներքին կռիւ շարունակեցին հակառակորդ Ալիի դէմ։ Իսլամի հետևողները պարտաւորուեցան ժամանակ դադարեցնել իրանց աշխարհակալութիւնները, յաղթութիւնները և սրածութիւնները, ձեռնամուխ եղան ներքին երկպառակչական, առանին պատերազմներին և զարհուրելի արիւնահեղութիւններին։ Այս պատերազմներից խոշորները այնչափ ճնշեցին, զզուեցին պառակտումներից, որ մի քանի ժողովրդասէր մարդիկ ուխտեցին և որոշեցին մի օրւա ընթացքում մահուան ենթարկել Ալիին, Մուավիէին և Եգիպտոսի ոստիկան Էմրային; որպէսզի հաւատացեալներին ազատեն զարհուրելի արիւնահեղութիւններից։ Բայց բաղդը Մուավիէին ազատեց տեռորի ճանկից, որոշուած օրը մզկիթ չգնալու պատճառով, որը, Ալիի մահից յետոյ, տիրեց խալիֆական գահը և Դամասկից սկսեց կառավարել իսլամ աշխարհը։

4։ Ալիի մահով վերածնեց Իմամաթը (առաջնորդութիւն), քանի որ նա իր կենդանութեանը՝ յատուկ յայտնութիւնով— հալխով Իմամական Դաւազանի յաջորդ, իսլամին առաջնորդ նշանակել էր իւր որդուն՝ Հասանին, որը այդ ժամանակ ապրում էր Մէդինէում։ Ալիի մահից յետոյ, Մուավիէն նենգութիւններով կաշառեց և գրաւեց Հասանին շրջապատող զօրքերին և զօրականներին, որոնք հեռացան Արաբիայից Սուրիա փոխադրուեցան։ Երբ Հասանին զինուորական ուժից զրկեց, Մուավիէն իր լիազօրների ձեռքով այնպէս նեղը գցեց մարգարէի թոռին, որ նրանից հպատակութիւն էլ կորզեց։ Բայց և այնպէս, արեւելքցիների համար Ղուրանի իւրաքանչիւր բառի եօթանասուն երկու նշանակութիւնը ո՞վ կարող էր իմանալ և բացատրել, եթէ ոչ Ալիի և Մահմէդի սերնդի դասեր Փաթիմէից ծառաւիղած Հասանը։ Ամբողջ Մի-

Ջաւգետքի, Սուլթանիայի, Պարսկաստանի և Մարաստանի հայեացքը ուղղուած էր այս չատաւեկլի կողմը։ Նրան էր ընդունում մարգարէի տոհմի ժառանգ, հաւատացեալների ամիրապետի յաջորդ։ Մուավիէի նման քաղաքագէտ մարդը, որ շատ կարճ միջոցում կարողացել էր ձեռք բերել խալիֆական գահաղանը, չէր կարող չնկատել Հասանի կուսակիցների կողմից իր գահին սպառնացող վտանգը։ Թէև Հասանը այնքան թոյլ մարդ էր, որ ինքնէք ղէնք չէր կարող բարձրացնել Մուավիէի դէմ, բայց վերջինս, իր որդու յաջորդութիւնը բոլորովին ապահովելու համար, պատգամաւորներ ուղարկեց գաղտնապէս Հասանի կնոջ մօտ և խոստացաւ նորան, իր որդուն Եզիդին կնութեան առնել, եթէ համաձայնի թունաւորել Հասանին։ Խաբուեցաւ խեղճ կինը, Հասանին աղուեց, բայց Եզիդին կնանալու էլ չարժանացաւ՝ դաւաճանութեան համար։

5. Հասանը մեռնելու պէս, Փաթիմէի երկրորդ որդուն՝ Հիւսէյնին խալիֆ ընդունեցին նրա հօր երկրպագուները։ Հիւսէյնի կացութիւնը սոսկալի էր. Մէքքէ—Մէդինէյում նրան սպասում էին հալածում խալիֆ Եզիդի ոստիկանները, իսկ Քուֆէցիք անվերջ նրան հրաւէր էին կարդում, որ գնա նրանց մօտ և հօր գահը բազմի։ Մուավիէն և ապա սրա յաջորդ Եզիդը այնպէս կենդրոնացրին իշխանութիւնը, այնպէս ժողովեցին կուսակալների և ոստիկանների սանձը իրանց ափի մէջ, այնպիսի վարչութիւն ստեղծեցին, որ կամա թէ ակամա Ալիի երկրպագուները հեռացան նրա ժառանգից, կամ երկիւղից չէին կարողանում հրապարակով նրան մօտենալ։ Հիւսէյնի և նրա հարազատների դրութիւնը անտանելի էր. սրանց սպառնում էր թոյնը, կամ յանկարծական դաշոյնը։ Ամէն րոպէ նա սպասում էր մի այդպիսի սոսկալի հարուածի։ Եզիդի լրտեսները նրան հետեւում էին։ Վերջապէս

նում է Իսլամի հետևողին, թե ինչպես կատարելու է իր լվա-
ցումը, աղոթքը, ծոմապահությունը, ողորմությունը, ընտա-
նեկան և դրացիական յարաբերությունները, առևտրական և
այլ դաշնագրերը, դեպի հարազատները և պետության հանդեպ
ունեցած պարտավորությունը, պատերազմի ձևը, ռազմից
ստացված ավարը, հարուցանելիք տուրքը և հարկը, Իսլամի
բայաների հետ (հպատակ) ունենալիք վարվեցողությունը և
իսլամի գոյության համար կատարելիք զոհողությունները:
Աբու-Հանիֆին այս գրքով ուզում էր ամեն մի մուսուլմանի
ընծայել ամբողջ իսլամի հավատալիքը, դավանանքի էական կե-
տերը, պարտքերն ու իրավունքը: «Թաֆագուհ»-ն Աբու-Հանի-
ֆեի հռչակը անչափ տարածեց Իսլամ աշխարհում, որ նրա
համբավը հասավ Ամիրապետի ապարանքից մինչև ամենայետա-
ընկած պարտիզպանի հյուղը: Իմամ Բաղըրը և սրա մահից հե-
տո որդին Իմամ Ջաֆերը սուննիների հադիսները և Աբու-
Հանիֆեի «Թաֆագուհը», որպես հասարակ մահկանացուների
աշխատություն, «զայիֆ» (վտիտ) հռչակեցին: Սրանք հետևե-
լով իրանց նախորդներին պնդում էին, որ միայն գերագոյնի
նրա յարաբերութեան մէջ գտնուող եւ անհրեւոյթը տեսնող
իմամներն լիազոր են հադիսներ գրելու, կարգեր սահմանե-
լու, Ղուրանի այաթները և մարգարեի ասածները պար-
զաբանելու եւ բացատրելու: Հետևապես Իմամ Բաղըրը և սրա
որդին Իմամ Ջաֆերը կազմեցին իրանց հադիսների հատոր-
ները, որոնք չորս անգամ ավելի շատ են սուննիների և Աբու-
Հանիֆեի «Թաֆագուհ»-ից, որոնք շիա հասարակության հա-
մար, որպես գերբնական զորութիւնից բղխած թելադրու-
թյուններ, հավատքի մասն են կազմում և անպայման պար-
տավորեցուցիչ են:

7. Իմամ Ջաֆերը յատուկ Աստվածային յայտնությունով,

իր նախորդներին հետևելով, իրան յաջորդ հրամայակից էր անդրանիկ որդին Իսմայիլը, բայց որովհետև սա անձնատուր եղաւ հարբեցողութեան, չպահպանեց Ղուրանի պատուիրանները, մարգարէի աւանդութիւնները և նախորդ իմամների գրքերը։ Հայրը պարտաւորւած մի երկրորդ յայտնութիւն սպասեց գերագոյն երկնքից, որով հեռացրեց իմամի յաջորդական բազմոցից Իսմայիլին, նրա տեղը նշանակելով Մուսային։ Այս Ալլահատուր պատգամի փոփոխութիւնը թէև մեծ պառակտում ձգեց շիաների մէջ, (այդ մասին «աղանդաւորները» մէջ խօսելու ենք) բայց մեծամասնութիւնը խոնարհելով երկնքի հետ յարաբերութեան մէջ գտնւող Իմամի կամքի առաջ և հետևեց Մուսային։ Շիաները այնպէս ցրւել և իմամներին հետևողները խալիֆների սարսափներից այնպէս ծածկւում, ցերանում էին իրանց նկրքին համոզումները և դաւանանքը, որ Դամասկի Օմմէեան խալիֆների ջնջւելուց յետոյ, Բէնի-Աբբասի (Աբբասեան) խալիֆները Բաղդադում թագաւորած շրջանում մոռացել էին անգամ սրանց գոյութիւնը։ Իմամ Բաքըր և Իմամ Ջաֆէրը թէև սիւննի իւլէմաների գրքերի հակառակ շատ ծէսերը փոփոխել էին, բայց խստիւ պատւիրել էին իրանց աշակերտողներին, որ եթէ հազարաւոր շիաներ մի տեղ գըտնւած ժամանակ, նրանց մէջ մի սիւննի յայտնւի, պարտաւոր էին իրանց ծէսերը և կարգերը բոլորովին ծածկել և հետևել սիւննի սովորութիւններին, կեանքերը վտանգի չենթարկելու համար։ Այսպէսով շիա վարդապետութիւնը խալիֆութեան հզօր զարկում արծարծւած և տարածւում էր գաղտնաբար, ինչպէս իրանց գոյութիւնը ներկայումս պահպանում են պարօվերցիները և ուրիշ աղանդաւորները Թուրքաստանում։ Բէնի Աբբասի խալիֆները Բաղդադում իրանց փառքի գագաթին հասած շրջանում, Հարուն-էլ-Ռաշիդը, որպէսզի կարողանա իր

լով Մուսային առաջարկեց, որ այդ Փաղաղ այգին սերը և սահմանները որոշէ, որպէսզի հրաման արձակէ Մէզինէի կառավարչին անմիջապէս այգին ժառանգներին յանձնելու։ Մուսան այգին սահմանները գրեց, արեւելքից՝ Ինդոս գետը, արեւմուտքից՝ Էբրօ գետը (Սպանիայում), Հիւսիսից Կովկասի և Պիւրէնէեան լեռները, և Հարաւից Կարմիր ծովն ու Հնդկական Ովկիանոսը։ Հարուն էլ-Ռաշիդը զգալով որ իւր գահն է սպահանջում Մուսան, նրան թունաւորել տուեց։

8 Հարուն-էլ-Ռաշիդը որդին Մամուն-էլ-Ռաշիդը աւելի փառքով և աւելի պատւով էր պահում իր արքունիքում՝ Խորասանում Մուսայի որդուն՝ Իմամ Ռզային։ Ազատամիտ էլ-Մամունը այնպէս էր գրաւած, որ Ռզային գահին ժառանգ էր հռչակել, հեռացնելով իր զաւակները։ Էլ-Մամունը համոզուած էր, որ Իսլամի պետի աթոռը իսկապէս պատկանում էր Ալիի ժառանգներին և ոչ թէ իրանց՝ Բէնի-Աբբասեաններին։ Բայց երկրում ծագած և էլ-Մամունի դէմ ուղղուած ամբոխի յարուցած խռովութեան առաջն առնելու համար, նրա էլ կեանքին թոյնով վերջ տուին, թէև սիւննիները չեն խոստովանում։ Ռզայի որդուն՝ Նաղիի և նորա յաջորդ Թաղիին շիաները թունաւորուած են համարում նոյն արքունիքի բժշկներով։ Ցաւնը մէկնելով իմամ Հասան Ասքէրին աշխարհից հեռացած, մեկուսացած ապրում էր Բաղդադի մօտերքը Սուրրէ-Մէրրա աւանում։ Սրա կանայքն ամուլ էին։ Հասան Ասքէրիի քոյրը՝ Հալիմէն Նարգիզ կոյսերի հետ էր սնուցանում եղբօրը, ջանալով ժառանգ-յաջորդ ունենալու Իմամի գահին, բայց զուր, Նպատակին չէր հասնում։ Վերջապէս մի օր Հասան-Ասքէրին աւետեց քրոջը, թէ կինը յղի է և շուտով զաւակ կծնէ։ Քոյրը քննելով եղբօր կնոջը աւետած յոյսը՝ չհաւատաց։ Մի քանի ժամանակից յետոյ, երբ

Հալիմէն կրկին եղբօրն այցի էր եկել, Իմամը նորան արգիլեց, հաւատացնելով որ այդ իրիկուն ծնելու էր ժառանգը։ Թերահաւատ քոյրը կրկին քննելով հարսի կողերը, զգում է եղբօր յուսախաբութիւնը, բայց վերջինս նորան համոզում է սպասել և տեսնել։ Գիշերը անցնելուց յետո, լուսադէմին պայծառ լոյսով ծածկւում է Հասան-Աղբէրի տունը և նրա կինը ծնում է տղա, որին անւանում են Մէհթի։ Քոյրը տարակուսելով նախընթաց գիշերը կատարած քննութեան վրա, նորից զննում է տղոցկանին և դառնալով եղբօրը պնդում է, որ երբէք իր հարսից չի ծնել այդ զաւակը։

—Սխալ ես, պատասխանում է Իմամը, նա է ծնել, բայց ոչ արգանդից, այլ ազդրից, ծնկից...

Այս հանելուկից բան չհասկանալով քոյրը, վերադառնում է տուն։ Մի ամիս յետո, կրկին եղբօրը այցելելիս, նկատելով գաւթում խաղացող մի երեխա, հարցնում է, թէ—ո՞ւմն է այդ տղան։

—Ժառանգն է, նա է. պատասխանում է Իմամը, ապշեցնելով քրոջը։

Սրանից յետո, Հասան-Աղբէրին իր ընտանիքով ամարանոց է գնում երեք ամսով։ Վերադարձին երբ քոյրը «բարիեկարի» է գնում և տեսնում է տանը մի դեռահաս պատանի, հարցնում է եղբօրից, թէ—ո՞վ է այդ ջիւանը, երեսը ծածկելով։

—Ինչի՞ ես ծածկւում, քոյրիկ, ասում է Իմամը, չե՞ս ճանաչում, նա է, մեր ժառանգը, որդիս։

Այս պատմութիւնը աւանդել է քոյրը՝ Հալիմէն շիա կղերին, Հասան-Աղբէրի մահից յետո։ Համաձայն շիա աստւածաբան պատմիչների խօսքին, Հասան-Աղբէրին մեռել է 28 տարւան և այդ ժամանակ Մէհթին միայն վեց տարւան էր։

9. *Մէհդին, հօր մահուանից յետոյ չորս հինգ տարի երև-ցաւ իւրայիններին։ Օտարները պատմում են, որ նրան էլ սպանել տուին, հօրը գցեցին, կամ թունաւորեցին խալիֆի գործակալները։ Բայց* միւթէհէրի *(չէրիական—ուղղափառ) կամ ինչպէս* Իսնա աշարի *(տասներկու իմամներին Ալիի շառաւիղներին հաւատացողները) շիաները հաւատում և դաւանում են, որ այս անձնաւորութիւնը Ղուրանում իրանց խոստացուած Մէհդին էր որը իր կեանք ամիրապետների հալածանքից փրկելու համար, Բաղդադի մօտերքը, Քեազիմէյնից հիւսիս Սուրրէ Մէրրա կալւածքում փակւեց 73 տարի, որը կոչւում է* ղիյաբէթի սուղրա *(փոքր աներևոյթացում)։ Այդ եօթանասունը երեք տարւա ընթացքում Մէհդին կառավարում էր իր շիա հօտը նաիբներով (փոխանորդ օգնականներ)։ Չորս հոգի իրար յաջորդեցին այդ ժամանակամիջոցում։ Այս աներևոյթացումը տարակուսանքի առիթ էր ժամանակին շիա հաւատացեալների համար, որոնցից շարունակաբար ուխտաւորներ էին գալիս, իրանց իմամին ահագին նուէրներով և թէև խիստ փափագում էին անձամբ տեսնել, ցաւերը բացատրել, որոշումն ու վճիռը ստանալ և օրհնութիւնովը վերադառնալ, բայց նաիբները (օգնական) այլ և այլ պատճառաբանութիւններով, իբր իմամի հրամանով՝ ոչ ոքի չէին թողնում անձամբ ներկայանալու։*

*Համաձայն Իմամ Բաղրի և Ջաֆէրի տուած որոշումներին, մահկանացուները որքան որ առաքինի և արդարասէր լինէին, կարող էին դառնալ մոլորւել, սխալւել, ինչպէս մոլորւած էին և սխալւած սիւննի ամենանշանաւոր իւլէմաները՝ Աբու-Հանիֆին և ուրիշները։ Շիա իմամների իսթիֆթաների համաձայն՝ մահկանացուն չի կարող արդար և ճշմարիտ վճիռ կայացնել, քանի որ ամենադիտուն մարդն էլ թէև համաձայն չէրիաթի, բայց դարձեալ իր խելքով, դատողութեամբ է եզ-*

բնակչութեան հասնելու, որոշումներ ու վճիռներ արձակելու, ուստի կարող է և սխալուել։ Այս հիման վրա, ամէն մի շիա իր խճճուած գործի արդար վճիռը իմամից պիտի ստանար, որ խիղճը կարողանայ կասկածանքներից փարատուել, քանի որ միայն գերագոյնի հետ յարաբերութեան մէջ գտնուող և անյայտը նկատող իմամը չէր կարող սխալուել։

Եօթանասնամեայ թագստի պատմութիւններից յուսահատուած, իմամի շրթունքից իրանց գործի վճիռը լսելու և խղճահարութիւնից ազատուելու փափագողները, Իրանի քաղաքներից առաջին ընծաներով եկել հասել էին Սուրրէ-Մէրրա և անպայման ցանկանում էին տեսնել իրանց Իմամի դէմքը և նրա շրթունքներից լսել նրա ձայնը և ցանկանալի հրամանները։ Երբ այս պատգամաւորները յամառած, ուզում էին բռնութեամբ մտնել իմամի Թագստարանը, նաիբը դուրս եկաւ յայտնեց, թէ Իմամը նրանց բռնութիւնից զայրացած, թողեց Սուրրէ-Մէրրան, գնաց Ջաբուլգա և յանձնարարեց յայտարարել այս նրա գրած պատգամը իր հետևողներին։

«Նայեցէք այն մահկանացուի դէմքին, որ գիտնական է, որը կարող է կրքերը զսպել, արգելուածները չգործադրել, որին Ալլահի սուրբ գրքով պատուիրածներին հպատակւում է, աշխարհային ճոխութիւններից և վայելչութիւններից խոյս է տալիս, որովհետև նա իմ հոգուս բնակարանն է—«Ջաննիշին»։

Այս պատգամը գրած էր կանանչ գոյնով, երկաթաքարի լուծուածքով։

Այս անհետանալը կոչւում է «ղեյաբեթի սուքրա» (մեծ անհետացում), որը շարունակւում է մինչև օրս։ Համաձայն ուղղափառ շիաների իսնա աշարի (տասներկու իմամ ճանաչողների) վարդապետութեան՝ այս Մէհտին նա է, որի մասին ակնարկուած է Ղուրանում, թէ պիտի աշխարհ

գա, որ մարդկի ազատութիւնից փրկէ և ամբողջ մարդկութիւնը դարձնելով Իսլամի դէնին, մի հօտի և մի հովւի վերածէ։ Այս մէջ Աստուածութեան անդրադարձումն են դառնում, որը աշխարհ գալիս՝ պիտի բերէ իրան հետ Յիսուսին, այնպէս օգնական, որը ջախջախելու է Նեռի գլուխը։

10. Մահուանից առաջ այս վերջին խմամբ գրաւոր պատգամի համաձայն, շիա ժողովուրդը սպասելով Նրա՝ Մէհդիի վերադարձին, իր աղօթքը կատարում է վերոյիշեալ առաւելութիւնը ունեցող մի միջթէհիդի հետևելով, որը քննում է Նրա բոլոր պատն ու դատաստանը, գրում է, վաւերացնում դաշնագիրը, կտակագիրը, կալուածագիրը, ամուսնագիրը, ապահարզանի թուղթը, ստանում է եկամուտի տասանորդը, աղքատի մասը, ժառանգութեան երկրորդական մասը. բաժանագիրը հաստատում և որոշում է բոլոր կրօնական և քաղաքացիական գործերը։ Այս միջթէհիդը համարւում է բացակա անմահ Իմամ Մէհդիի անդրադարձը աշխարհի վրա, որը տիրելու է միլիոնաւոր շիաների ամբողջ երկրին և հակելու է համաձայն Ղուրանի և հադիսների՝ շէրիաթի անպայման գործադրութեան վրա։ Միայն այսպիսի միջթէհիդի են հպատակւելու շիաները, միայն սա կարող է հրամայել ժողովուրդին, «Ջիհադ» (կրօնական պատերազմի) գնալ, կամ կռւել և մաքառել նոյն իսկ իրանց երկրում գտնւող բռնակալների, հէնց շահերի դէմ էլ։ Միջթէհիդը կարող է հրամայել, որ ժողովուրդը չհնազանդւի շահերի, կամ թագաւորների կրօնի հակառակ տւած կարգերին ու օրէնքներին, չթողնէ գործադրել այդպիսի հրովարտակները և օրէնսդրութիւնները։ Ուստի Իրանի շահերը—պետերը ժողովրդին հպատակեցնելու համար՝ պարտաւոր են միշտ սիրաշահել այս միջթէհիդներից ամենաշատ ժողովրդականացածներին, որոնք միլիոնաւոր

հետեւողներ ունին, որպէսզի իրանց իշխանութեան դէմ որոգայթներ չլարեն։

1890 Թ. երբ Նասրէդդին շահը անգլիացիներին կապալով տուեց Իրանում ծախուելիք ծխախոտը, Թաւրիզի մուջթէհիդ՝ Միրզա-Ջաւադ աղան հրամայեց բոլոր վիճակներին՝ փշրել կալիոնները, չիբուխները և դադարել ծխելուց—անգլիացիների ձեռքից գնուելիք ծխախոտը հարամ—ապականուած հրատարակելով: Միրզա Ջաւադի որոշումը երբ հաստատեց Միրզա-Աղա-Շիրազին, որ այն ժամանակ ամենաժողովրդական մուջթէհիդն էր Քէրբէլայում, ամբողջ Իրանի կալիոնները փշրուեցան մի օրւա մէջ և ծխախոտները թափուեցան աղբանոցները: Մինչև անգամ խանխաւանը՝ Իրանի ծառայող—աղնուականութիւնը չյանդգնեց ծխել, վախենալով իրանց ծառաների մատնութիւններից և ամբոխի գրգռումից։ Շահը նահանջեց, քանդեց անգլիացիներին տուած դաշնագիրը և հազիւ խաղաղացրեց գրգռուած ամբոխը։

Բայց ինչպէս իմանալ, թէ ո՞րն է այն կատարեալ իւլէման, որն ունի այն բոլոր առաւելութիւնները, որոնք թւել է անմահ Իմամը՝ Ջաբուլգա գնալուց առաջ։ Ընդհանրապէս Քիւֆէի մօտ Մէշէդի-Ալի Նէջէֆ կոչուած վայրում և Քէրբէլայում են գտնւում շիաների ամենանշանաւոր կրօնականները։

Այդտեղ է դիմում շիա կղերը կատարելագործելու իր ուսումնասիրած Իսլամի աստուածաբանութիւնը և իրաւագիտութիւնը։ Իմամ Մէհդիի մեծ Թագստեան օրից մինչև այսօր շիիզմի նշանաւոր քարոզիչները, անձնւէր հետևողները, այդտեղ են դիմում և հաստատւում։ Այդտեղ է դիմում ուխտի քիչ թէ շատ կարողութիւն ունեցող քաղաքային ու գիւղացին, դրանց հետ ծանօթանում, այդ կղերի նիստն ու կացը, վարքն ու բարքը, հասկացողութիւնն ու ընթացքը քննում

է շիա հաւատացեալը և դրանցից որ մէկի մօտ որ նկատում է կարևոր առաւելութիւնները, նրան ընդունում է իրան միջթէհիդ, նրա անձնաւորութիւնը դառնում է անմահ Իմամի հոգու բնակարան—«Ջաննիշին»։

Շիա կրօնի հիմնական և էական օրէնքների համաձայն, նրանց առաջնորդը (իմամ) կամ դատաւորը սահմանում է նախախնամութիւնից. որին Ալլահը անհայտը տեսնելու կարողութիւն է տալիս։ Այսպէս էին դառնում շիաները իրանց տասներկու իմամների օրով, այս է Իմամ Բաղրի և Իմամ Ջաֆէրի տւած պատգամը։ Սիւննիների նման շիաները իրաւունք չունեն իրանց Իմամ—խալիֆ ընտրելու։ Շիաների դաւանանքով Իմամի աստիճանը մի երկնային շնորհ է, որ բաշխւում է ընտրեալներին, որին չեն կարող ընտրել սխալման ենթակա մահկանացուները։ Ինչպէս իմամները երկնային շընորհով էին սահմանում, հետևաբար Իմամի հոգին էլ ինքն է ընտրելու գիտնական և բարեպաշտ մարդկանց սիրտը իրան բնակարան, որպէսզի նրանց միջոցով հովւէ իր հօտը ճշմարտութեան ճանապարհով՝ մինչև իր աշխարհ վերադառնալը։ Ուստի շիաները իրանց կրօնապետ կամ գործերի վերահասու լինող (միւջթէհիդ) չեն նշանակում, չեն ընտրում, այլ այնպիսի հեղինակաւորներին, որոնց քայլերից և գործերից նկատելի է լինում երկնային շնորհը, կուրաբար հետևում և նւիրւում են։

11. Քանի որ մարդիկ տարբեր հայեացք ունին, տարբեր համոզում ու զգացում, միևնոյն անձնաւորութիւնը չի կարող ընդհանրութեան վրա համանման ներգործութիւն ունենալ։ Մանաւանդ բարոյականութեան և առաքինութեան մասին մարդիկ անչափ տարբեր հայեացք ունին, չէրիաթն ու հադիսները անչափ առաձգական են։ Որովհետև ամենագէտ

իմամ Մէհդիին յայտնուելէն չի որոշել իմամի հոգու բնակման անձնաւորութիւնը, որպէսզի մրցման մղի առաքինիները, անշահասէրները, արդարասէրները, ժողովրդասէրները և գիտնականները, այլ թոյլ է տալիս, որ շիաները իրենք իրենց առաջ դատողութիւնով հետեւեն նրան, որի մէջ կնկատեն կատարելութիւնը։ Պէտք է նկատի առնել, որ շիական աստուածաբանութեամբ, մարդու կամքը ազատ է ստեղծուած և թողնուած. մահկանացուն իւր դատողութեամբ է չարն ու բարին որոշելու և նրանց հետեւելու. նախասահմանութիւնից նրան շնորհուած ընդունակութեան և արժանաւորութեան համեմատ։ Ուստի ամէն մի շիա-իսնաաշարի միւսլիմանի իւր հայեացքով այդպիսի կատարելատիպ իւլէմաներից մէկի վրա նկատելով, նրան է ընդունում Մէհդիի հոգու բնակարան, որը դառնում է իւր միւջթէհիդը։ Այս պատճառով Մէշէդ Ալիում, Քէրբալայում, Նէջէֆում, Խորասանի Մէշէդում, Թեհրան, Իսֆահան, Թաւրիզ և ուրիշ տեղեր հարիւրաւոր միւջթէհիդներ կան, որոնք իրենց միւրիդների (անձնուէրների) համոզմամբ Մէհդիի հոգու բնակարաններն են, տիրում են ժողովրդին, դատում են ազգաբնակութիւնը, պաշտպանում իրանց շէրիաթը և կառավարում ազգաբնակութիւնը։ Այսպէս է եղել Մէհդիի աներեւութանալուց մինչև մեր օրերը։

Ամէն մի շիա դեռահաս գիտնական, որը իւր կանդիդատուրան դնում է ժողովրդի առաջ, որպէս պատրաստուած նրա վարչութեան հոգածութիւնը յանձն առնելու, նա քարոզում է իւր ուսմութիւնները, հրատարակում և ցրւում է բրոշիւր, որով իւր գաղափարների աստիճանը և բարոյական տեսակէտը, շէրիաթի բացատրութիւնը և ժողովրդի պարտականութիւնը ցոյց է տալիս հաւատացեալներին։ Իրանի և Թուրանի քաղաքների, աւանների և գիւղերի ախունդները (կրօնա-

*կան—երէց) իրենց աղօթարան յաճախողներին հրապարակապէս կարդում և բացատրում են այդ բրօշիւրները, որի իւրաքանչիւր նոր միտքը, բառը, ոճը և դարձուածները ամիսների քննութեան նիւթ է մատակարարում։ Արժանաւորները ժողովրդի հետաքրքրութեան առարկա են դառնում երկար ժամանակ, իսկ թոյլերը ծաղրի են մատնւում։ Բայց միայն տէօրիայով ոչ ոք չի կարող միւջթէհիդ դառնալ։ Երբ ժողովուրդը մի կանդիդատի աստուածաբանական, իրաւաբանական և բարոյական գիտական բարձր ընդունակութիւնների հետ ծանօթանում է, ըմբռնում է նրա քարոզած մտքերը և գրաւում է նրա հեղինակութիւնով, տասնեակ տարիներ քննութեան նիւթ է դարձնում այդպիսի կանդիդատի վարքը։ Մէհթիի պատգամի համաձայն միմիայն այնպիսի գիտնականի կողմը պիտի դարձնի ժողովուրդը իւր հայեացքը, որը* «Կարող է զսպել իւր կրքերը, չկատարել արգիլածը, հպատակել Ալլահի սուրբ կամքով պատուիրածներին եւ խոյս տալ աշխարհային վայելչութիւններից, ճոխութիւններից եւ հաճոյութիւններից»։ *Միւջթէհիդացուն ոչ միայն բարձր գիտնական պիտի լինի, ոչ միայն ծանօթ պիտի լինի Ղուրանի վարդապետութեան, իմամներից դրւած հադիսներին, այլ կեանքում այդ բոլորը գործադրող. բարոյական, սակաւապետ, արդարասէր, անփառասէր, անշահասէր, անկաշառ և ժողովրդին նուիրած մարդ պիտի լինի։ Այս դարում այսպիսի յատկութիւններով մարդ կասկածելի է գտնել, բայց շատ կղերը անցեալ* XIX *դարում կարող է պարծենալ այդպիսի կղերականներով, որոնց առաջ թափում էր իւր գանձերը և երկրպագում։ Շէյխ Մուրթուզա Ալին արժանացած էր երկրպագութեան իւր անպատմելի բարեգործութիւնների, առաքինութիւնների և անշահասիրութիւնների համար։ Նրա ոտքերի տակ թափւած*

միլիոնները ետ էին դառնում շիա ժողովրդի ամենաթշուառների տունը եւ դադարեցնում արտասունքները։ Միրզա-Աղա Շիրազին, որ սրանից 7—8 տարի առաջ մեռաւ Քէրբէլա-յում, համարեա ամբողջ շիաներից պաշտուած մի անձնաւո-րութիւն էր, որից սոսկում էր Նասր-էդ-դին շահը։ Իրանի ժողովուրդը տարեկան երկուսից մինչեւ երեք միլիոն րուբլի փող էր ուղարկում նրան, որը առանց ձեռք տալու ետ էր դարձնում այդ գումարը Պարսկաստանի այնպիսի չքաւորնե-րին, որոնց արժան էր համարում։ Այս մարդը որ 20—30 տարի այսպիսի ահագին գումար էր ստացել, զուցէ աշխար-հի ամենասակաւապետ անձնաւորութիւնն էր։ Հասցնելով այդ խոշոր գումարները թշուառ ու կարօտ հօտին, ինքը սոսկ ար-մաւով էր կերակրւում, գիշերում էր Քէրբէլայի մզկիթի գաւ-թում խսիրի վրա. որտեղից պատգամ էր տալիս թագաւոր-ներին, իշխաններին, կղերին ու բոլոր հաւատացեալներին։ Մեռնելիս նա միայն մի-երկու րուբլու գոյք թողեց իր ժա-ռանգներին այն ահագին միլիոններից. այն ինչ Լէօն ԺԳԻ. ժառանգները ահաւոր կապիտալ դիզեցին՝ շնորհիւ իրենց պապ ազգականի։

Ներկայիս մուջթէհիդներից նշանաւորներն են Շէյխ-Հա-դի Թէհրանցի, Մոլլա Քեազիմ Խորասանցի, Ֆազըլի Չէլէ-բիանի Ղարադաղցի, Շէյխ Հասան Մամաղանի, Հաջի Միրզա Հիւսէյն-Հաջի Խալիլի Թէհրանցի, Շէյխ Աբդիւլ Հիւսէյն—Սա-ղըրի Իսֆահանցի եւ ուրիշները։ Թէեւ ամենից շատ հետեւող ունի Շէյխ Հադի Թէհրանցին, բայց ամենից ազդեցիկն է Ֆա-զըլի Չէլէբիանի Ղարադաղցին եւ Շէյխ-Հասան Մամաղանցին, (մեռան նոյն տարուա ընթացքում) որովհետեւ սրանց հետեւող Ատրպատականի ժողովուրդը բոլորը թորքաքուղ թիւրքեր են եւ իրենց Մուջթէհիդների հրամաններին կազմ ու պատրաստ

անձնանուէր զինուորներ։ Այժմ Թէհրանի կենտրոնական վարչութիւնը աւելի ակնածում է Փագրիից, որը համարեա գերիշխող է միւջթէհիդների մէջ։

12. Համաձայն Ղուրանի այաթների և իմամների հադիսներին, ամէն մի հաւատացեալ. չիա իւր տարեկան զուտ վաստակի տասանորդը տալու է աղքատի, կարօտեալի և թշուառի։ Այս գումարը հին ժամանակ ժողովուրդը յանձնում էր Իմամին՝ Մարգարէի տեղապահին, իսկ Իմամ Մէհթիի բացակայութիւնից յետո՝ միւջթէհիդին, որպէսզի բաժանեն արժանաւորներին։ Իրանի չիա ազգաբնակութիւնը ամէն տարուա վերջին, պաշտօնեա թէ գործակալ, վաճառական թէ արհեստաւոր, երկրագործ թէ մշակ պարտաւոր է տարեկան հաշիւները քննել, ելմուտքը ստուգել և իւր վաստակի զուտ տասը տոկոսը անմիջապէս փոխադրել այն միւջթէհիդին, որին անձնատուր է եղած։ Բացի այս, ամէն մի կարողութեան տէր հաւատացեալի մահից յետս, նրա ժառանգութեան երրորդ մասը նոյնպէս հասնում է միւջթէհիդին, որի ձեռքով բաժանւելու է աղքատներին, թշուառներին։ Ամէն մի ուրախ դէպքին, հարսանիքին, որդէծննդեան, յաջող գործերին, ուխտով ամէն մարդ դարձեալ որոշ բաժին է ուղարկում Միւջթէհիդին՝ կարօտեալներին ցրւելու։

Միւջթէհիդները ծառայելով ազգաբնակութեան, վարձ առնելու իրաւունք չունին. այդ ծառայութիւնը կատարելու են անձնուիրաբար։ Երզարեցի Միրզա Ալէքպէր միւջթէհիդը տարին տասներկու ամիս իւր երկրպագուներից ողորմութիւն է հաւաքում և աղքատներին ցրւում, կարօտեալներին կերակրում ու հագցնում է։ Նա դեռ կեանքում ժողովրդից ոչ ոքի ոչ մի պատառ հաց է կերել և ոչ էլ թէյն է խմել։ Ոչ ոքի տուն հիւր չի գնալ, ոչ ոքի նւիրած հագուս-

տը չի հագնիլ. Թէև ինքն էլ շատ չնչին, տարեկան 2—300 թումբլի եկամուտ ունի։ Իսլամի միւջթէհիդները խոյս են տալիս վարձ ստանալուց, որը խստիւ արգելւած է, իսկ աղքատի բաժնից զեղջելուց մեծ յանցանք չկա։

Ամէն մի միւջթէհիդ իւր նաիբն է (փոխանորդ) կարգում Պարսկաստանի զանազան քաղաքներում, կամ աւաններում, իւր ժողովրդի ծէսերը կատարելու, քաղաքացիական, վաճառականական թղթերը վաւերացնելու, հաշւելու, կտակագրելու, քարոզելու, մեռելթաղելու և հոգևոր պէտքերը լրացնելու։ Ինչպէս Քէրբէլայում շատ է միւջթէհիդների թիւը, ամէն քաղաքում էլ ազգաբնակութեան շատութեան և համոզման տարբերութեան համեմատ մեծ է և այդպիսի նաիբների թիւը։ Այս փոխանորդները, որ ախունդ էլ են կոչւում, իրենց բոլոր գործավարութիւնը կատարում են իրենց լիազօրութիւն տւող միւջթէհիդի անունով, որը յիշատակում են մինչև անգամ վաւերացրած իւրաքանչիւր թղթի ճակատին։ Այս նաիբներն ինչ տասանորդ, նւէր, կամ որևէ գումար որ ստանան իրենց գործավարութեան ընթացքում, ամբողջապէս պարտաւոր են հասցնել իրենց լիազօրութիւն տւող միւջթէհիդին, որը յիշատակում են մինչև անգամ վաւերացրած իւրաքանչիւր թղթի ճակատին, կամ նրա որոշման համաձայն բաժանել ուր հարկն է, վեր առնելով միայն իրենց համար իշխանութիւնից սահմանւած բաժը, կամ ռոճիկը։

13. Ինչպէս վերև ասացի, թէև ամէն մի շիա պարտաւոր է դէմքը, հայեացքը ուղղել դէպի մի միւջթէհիդ, բայց ոչ ոքի չեն կարող բռնադատել, որ առաջնորդ (Իմամ) ընդունի այս կամ այն միւջթէհիդին։ Հաւատացեալը իւր համոզմամբ ազատ է հետևելու հաւանած մօլլային, որին համարում է Մէհդիի ծրագրած ուղու վրա կանգնած։ Կան միւջթէհիդներ,

որոնք միլիոնաւոր հետեւողներ ունին. կան այնպիսինները, որ տաս հազար, հինգ հազար, հինգ հարիւր ժողովուրդի տէր են և ձգտում են միլիոնի հասցնել իրենց ծխերի թիւը։ Մի միւջթէհիդ մեռնելիս, նրա հետեւողներից իւրաքանչիւրը ընտրում է իրեն նոր միւջթէհիդ, հետեւում սրան։ Ամէն մի անհատ կարող է իւր համոզումը փոխել, եթէ միւջթէհիդի գործի—կեանքի ընթացքում որեւէ գայթակղեցուցիչ, կամ միտք պղտորող բան նկատի։ Այսպիսի դէպքերում գայթակղութեան պատճառից չհեռանալը յանցանք է շիա կղերի վարդապետութեան համաձայն։

Պարտաւորեցուցիչ չէ, որ միւջթէհիդը նստի Քէրբէլա, Քիւֆա, Մէշէդ, կամ մի ուրիշ տեղ. այդ կախուած է միւջթէհիդի կամքից. ժողովուրդը կապւում է անձնաւորութեան, ոչ թէ բնակավայրի հետ։ Բայց ընդհանրապէս շիաները անձնատուր են լինում Քէրբէլայի միւջթէհիդներին, քանի որ Թիւրքիայի խորքերում դրանց կեանքի խորշերը թափանցելու, ուսումնասիրելու և ծանօթանալու հնարաւորութիւն քիչ ունին և վստահանում են համբաւներին։ Մանաւանդ Իմամ Հիւսէյնի նահատակութեան վայրը կապում է շիաների սիրտը նրա գերեզմանի շուրջը պատած ողբասացների հետ։

Միւջթէհիդների այսքան բազմութիւնը այնպիսի հակառակութիւններ չի ծնեցնում շիաների մէջ, որքան գոյութիւն ունին ուրիշ կղերի դասում։ Թէև ամէն մի միւջթէհիդ ինքնագլուխ է գործում, նա չի ճանաչում որեւէ հեղինակութիւն, համարելով իւր անձը ուղղակի Մէհթիի հոգու բնակարան, բայց երբէք չի խանգարում գործավարութիւնը շիաների մէջ Պարսկաստանում։ Սրա պատճառն այն է, որ միւջթէհիդները ամէն ճիգ գործ են դնում հեղինակութիւնները պահպանելու, արդարատէր, խաղաղասէր, համբերող, հեզ, համերաշխ,

անչահասէր և անփառասէր լինելու, որպէսզի այս առաքինի յատկութիւններով ազգաբնակութեան համակրութիւնը գրաւեն և պաշտպանեն։ Մինչև անգամ, եթէ ժողովուրդը մի միւջթէհիդի թողնելով՝ միւսի կողմն անցնի, մերժուած կղերականը չի յանդգնի որևէ գործով անբաւականութիւնը արտայայտել։ Այսպիսի դէպքում անհամբերատար խլեման կըզրկւի բոլոր հետևողներից։ Մանաւանդ որ մեծամեծ միւջթէհիդների երկրպագուները շատ դժուարութեամբ են փոխում իրենց առաջնորդին, և եթէ պատահում էլ, միւջթէհիդները հազիւ թէ որևէ կորուստ ունենան։ Իսկ դեռահաս միւջթէհիդները, փոքր թւով հետևորդ ունեցողները, միշտ խոնարհւում և համակերպւում են մեծամեծներին։

14. Անցեալ դարում, քաղաքներում ապրող շիա կղերը այնպէս դուրս եկաւ իրեն պարտաւորութեան ուղուց, որ պարսիկ քաղաքացուն և գիւղական ամբոխին ցնցեցին ու արթնացրին իւր դարաւոր թմրութիւնից։ Հին ժամանակները շիա կղերը չափաւորութեամբ ապրելով, իւր եկամուտի մեծագոյն մասը բաժանում էր չքաւորներին և կարիքներից ճնշուածներին։ Շիա կղերի նշանաբանն էր, ազգաբնակութիւնը չծանրաբեռնել հարկերով եւ նրա կեանքը դառնութեամբ չխեղդել։ Մոլլաները սակաւապետութեան կենդանի օրինակ դարձած, քարոզում էին ամենաքչով բաւականանալ եւ չթունաւորել անտանելի տուրքերով հասարակութեան կեանքը։ Շիա քաղաքաբնակ կղերը կանգնելով իւր պարտաւորութեան սահմանի մէջ, վայելում էր թէ ժողովրդի, թէ պետութեան վարիչների և պաշտօնականների և թէ ամբոխի յարգանքը, պահպանում էր իւր դիրքը և ստիպում Շահերի գործակալներին խոնարհւելու իրենց ժողովրդական ոյժի առաջ։ Շիա կղերի գերիշխանութիւնը ժողովրդի վրա, ինչպէս վերև ա-

սայի, անսահման է և ահաւոր, ուստի ամբոխին ղեկավարող և շարժող այս ոյժից ակնածում էին ոչ միայն իշխանաւորները, այլ մինչև անգամ միւջթէհիդներից սոսկում էին անհատաս աւազակները. անզուսպ յափշտակիչները և բռնութեամբ այս ու այն գաւառները, վիճակները, սարերն ու ձորերը տիրող խանիշխանները։ Անիրաւութիւն, բռնութիւն և յափշտակութիւն կատարողները միշտ սարսափում էին կղերի վրէժխնդրութիւնից։

Բայց երբ մոլլաները—միւջթէհիդ անուանուողները թողին իրենց քարոզութիւնը, և ձգտեցին կալուածատիրութեան, նրանց վարկը ընկաւ թէ ամբոխի և թէ պաշտօնակալութեան աչքում։ Կղերը երբ կաշառակեր, կեղեքող, հարստահարող խանխաւանից իրենց կալուածական խնդիրներում պաշտպանութեան կարօտ դարձաւ, ամբոխը երես շուռ տուեց իւլէմաներից։ Մանաւանդ որ ունևոր դասից նրանց վստահած աղքատներին, անանկներին, թշուառներին, սովածներին, մերկերին, հիւանդներին ու գօսացածներին բաժանելի գումարները, երբ կղերը ոչ միայն իւրացրեց, այլ այդ դրամով իշխանականների ձեռքից կալուածներ գնեց,—ժողովուրդը հիասթափուեց։ Այսօր Իրանի քաղաքների ու աւանների մոլլաները բոլորն էլ կալուածատէր են դարձել և իրենց ճիգն ու ջանքը գործ են դնում, որ կալուածները ընդարձակեն, ճոխացնեն և զարդարեն։ Սրան հետևեց և շռայլութիւնը, սարսափելի ծախսեր, փարթամ կեանք և ճոխութիւն։

Ագահութիւնը բուն դնելով այս կղերի հոգում, զինուած շէրիաթով, ընկան կեանքի մրցման մէջ, պաշտպանելով իրենց ոյժով, դիրքով և գիտութիւնով կողմնակի ոտնձգութիւններից։ Մառախլապատ մութ կեանքում դիմադրելով պատահարներին, կեղեքում են ազգաբնակութիւնը և հազարներ գե-

ղում, նորանոր գիւղեր, կալքեր գնելու և իրենց կալուածները ընդարձակելու։ Իսլամական օրէնքով, կալուածատէրը կամ երկրագործը իրեն տան կարեոր հացահատիկից աւելորդը պարտաւոր է անպայման քառասուն օրւա ընթացքում, իսկ սովի ժամանակ—չորս օրւա մէջ ծախել։ Ամբարել պահելը ամենամեծ յանցանք է և սոսկալի մեղք, որի համար ներումն չկայ։ Կալուածատէր մոլլաները իրենց դարեոր քարոզութեան հակառակ սկսեցին ամբարել գիւղերից ստացած մթերքը, արհեստական սով առաջացնել, որպէսզի հացը թանկ ծախեն։ Երբ կառավարութիւնը նրանց չէրիաթն յիշեցնելով, պահանջեց բանալ ամբարները և ծախել ցորենը, գարին, ժողովրդին սովից ազատելու և երկիրը խռովութիւններից փրկելու համար, սրանից տասը տարի առաջ յայտնի Թաւրիզեցի մուջթէհիդ Հաջի միրզա Ջաւադը Ղուրանից մի նոր այաթ մատնացոյց արաւ, որը անսահման իրաւունք է տալիս ապրանքատիրոջ իւր գոյքի հետ կամքի համեմատ վարւելու *)։ Այս չէրիաթական նենգամտութիւնը աւելի ուշաբերեց խոր քնի մէջ թմբածներին, որոնք սթափւած՝ էլ հեռացան կղերական պարազիտներից։

15. Սրանից մօտ երեսուն տարի առաջ մեռնող մուջթէհիդ Միրզա Բաղրը երեք-չորս գիւղ ունէր, իսկ այսօր նրա թոռը՝ որ գիտութիւն բնաւ չունի, բայց քառասուն արշինոց ապարօշ է փաթաթում, հարիւր յիսուն գիւղ ունի։ Այս մուջթէհիդի եղբայրը՝ Միրզա Ջաւադը, որ հօրից մի, թէ երկու անյայտ գիւղ էր ժառանգել, քանի տարւա պաշտօնավարութեան ընթացքում երկու հարիւր գիւղ իւրացրեց և

---

*) Էննաս մուսալլաթունէ ալա էնվալիհիմ, ամմէսալլութիլ միլլաք ֆի իմլաքիհիմ, (արարածը իւր կայքի տէրն է, ինչպէս կալուածատէրը իւր կայքի)։

եօթը տարի առաջ մեռնելիս, այդ ահագին հարստութիւնը
թողեց զաւակներին, որոնք ժառանգաբար մօլլա էին։ Քսան
տարի հազիւ կա, որ այս միջթէհիդի փոքր եղբայրը՝ Միր-
զա Հասանը պաշտօն է վարում և այսօր վաթսուն—եօթա-
նասուն գիւղ ունի։

Տասնը հինգ տարի առաջ Թաւրիզ գաղթած Միրզա
Մէօհսինը այսօր քառասուն—յիսուն գիւղ ունի և այլն։

Առաջ միջթէհիդները մրցում էին իրենց առաքինութիւ-
նով, բարեգործութիւնով, սակաւապետութիւնով, արդարա
սիրութիւնով, ողորմածութիւնով և հետևողների գնդերով,
այսօր մրցում են գիւղերի թիւը շատացնելով, դանձեր դի-
զելով, իրարից հող ու ռայաթ (երկրագործ դաս) յափշտա-
կելով։ Թաւրիզի մօլլաները, Թէհրանի իշխանները տարիներով
իրար հետ կռւում են, վիճում են զանազան կալուածների,
կայքերի սահմանների կամ ջրերի համար։ Նորերս աքսորւած
Միրզա Հասանը ռուսահպատակ Նաղիևին ճնշելու համար, ո-
րը յանդգնել էր նրա վարձում գտնւած Քիւր գիւղը գնելու,
իր հպատակ Բախշէիշցիներին սովորացնում էր, գնալ հար-
ւածել, աւարել, յափշտակել Քիւրի բնիկներին և նրանց գոյ-
քը, որպէսզի Նաղիևը ընկճւի, յուսահատւի և աժան գնով
նրան ծախէ այդ գիւղը։ Կարելի է հարիւրաւոր փաստեր բե-
րել կալուածական վէճերից, թէ ինչպէս իրար դէմ թակարդ-
ներ են լարում մօլլաները, որ յափշտակեն իրար կալուածնե-
րը, բայց քանի որ Պարսկաստանում պետական հիմնարկու-
թիւններ չկան, դատարաններ, արխիւներ, գրագրութիւններ
գոյութիւն չունին, մարդ չի կարող կարգին ստատիստիկա
պատրաստել և հետևանքները հրատարակել։

Մօլլաների իրար դէմ բացած այս վէճերը, հակառակու-
թիւնները, կալուածներ յափշտակելու համար կատարած նեն-

գութիւնները, ոխակալութիւնները, վրէժխնդրութիւնները այնպէս է ստորացրել նրանց վարկը, պատիւը Իրանի ժողովուրդի աչքում, միւջթէհիդները այնպէս են թուլացել և այնքա՜ն են խղճացել, և ստորացել, որ ոչ միայն ամբոխը, վարձական ծառայողները և անհատները նրանց արհամարհում են, այլ կասկած է ծնել և հաւատները խախտել է Մէշէդի, Քիւֆէի, Քէրբէլայի միւջթէհիդների մասին և օրից օր թերեհաւատութիւնը տարածւում է:

16. Շիա կղերի քարոզած դաւանութեան համեմատ, ինչպէս ասացի, իմամ Մէհդիի ջաննիշինին է տրւած ամբողջ ժողովուրդը և երկիրը կառավարելու իշխանութիւնը: Սրանից հետևցնում են, որ իրանք՝ միւջթէհիդներն էլ պիտի կառավարեն պետութիւնը: Ինչպէս տասներկու Իմամները պահանջում էին ջնջել ընտրողական խալիֆութիւնը, իրենց՝ որպէս նախախնամութիւնից սահմանւած Իմամի (առաջնորդի) հպատակել, այնպէս էլ ջաննիշինները միշտ պահանջել են, որ ջնջւեն իսլամական Սուլթանները, իրենց՝ երկրի շէրիական իշխանաւորներին յանձնել պետութեան կառավարութեան ղեկը: Ինչպէս տասներկու Իմամները բողոքել են խալիֆների դէմ, այնպէս էլ միւջթէհիդ—ջաննիշինները բողոքել են սիւննի Աբբասեանների, Սէլջուքների, Չինգիզխանի, Տուղրիլի, Լանկթէմուրի դէմ, նոյնպէս էլ բողոքել են շիա Սէֆէվի, կամ Ղաջար շահնշահերի իշխանութեան դէմ, համարելով բոլորին յափշտակիչներ, բռնակալ ուզուրպատորներ:

Սէֆէվի շահերը, որ իրենց համարում էին Իմամ Մուսայի սերունդից, Մահմէդի Ֆաթմա դստեր և Ալիի արիւնից առաջացած Սէիդներ, բանադրւած էին միւջթէհիդներից, ինչպէս Նադիր Շահը և Ղաջարները: Շիա թագաւորների, իշխանների լուծը այնքան դառն է շիայի համար, որքան

անտանելի է սիւննի, կամ քրիստոնեա թագաւորի գերիշխանութիւնը։ Ահա, թէ ինչ վիհ է բացել շիա կղերը ժողովրդի և նրա իշխանականների մէջ, ահա, թէ ինչ է պատճառը, որ Իրանի գահակալները այնքա՜ն խախուտ դիրք են ունեցել, չնայելով որ ամէն միջոցի դիմել են, չէրիաթին հպատակւել են, որ հաշտւեն կղերի հետ և սիրւին հպատակներից։ Ժողովրդի սէրը և համարումը գրաւելու համար, Նասրէդդին (պաշտպան կրօնի) շահը իրեն Գուլամ-Մէշէդի (Մէշէդին սպասաւոր) և Իմամ Րզայի գերեզմանի փոշին աւելող էր անւանում։ Այդ ուխտատեղի եկամուտից ստացւած ցորենից նրա համար յատուկ հաց էին պատրաստում, որ ջերմեռանդ նկատւի հասարակութիւնից, բայց ժողովուրդին այնպիսի քարոզներ ու դասեր է կարդացել դարերի ընթացքում շիա կղերը, որ այդպիսի ցոյցերը նրա համոզումները չէին կարող փոխել։

Շիա հաւատացեալները երբէք և ոչ մի դէպքում չի կարող հպատակւել որևէ աշխարհային իշխանութեան։ Ջաննիշինից զատ, բոլոր իշխանութիւնները բռնակալութիւն է նկատում և ձգտում է ազատւել այդ բռնակալներից։ Բայց մինչև ազատւելը, նա իր կեանքը փրկելու (Թագիյէ) համար պարտաւոր է կեղծել, հպատակութիւն ձևացնել, հաւատարմութիւն երդնել, համաձայն Իմամ Ջաֆէրի հադիսների։ Բացի այս՝ պէտք է նկատի ունենալ, որ ինչպէս ամէն մի սոսկ շիա իրեն առաջնորդ. Իմամին Ջաննիշին ընդունում է միւջթէհիդներից մէկին, Իրանի շահերին էլ որպէս շիա հաւատացեալներ, դաւանում են և ընդունում են միւջթէհիդներից ամենաժողովրդականին Իմամի հոգու բնակարան և հպատակւում սրա արձակած վճիռներին։ Այս պատճառով միւջթէհիդները ժողովրդին քարոզում են, թէ քանի որ համայնքը հովիւ կարիք ունի և իրենք հնարք չեն գտնում բռնակալութիւնը ջըն-

ջելու, ուստի Նախապատիւ համարել չիա հաւատացեալ Ճահերին մնացեալ բնակիչներից, քանի որ Ղուրանին անպայման հպատակւում են, կամ խոստանում են հպատակել Իմամների ջաննիշիների վճիռներին։

17. Թէև Իրանի ներկա շահնշահը ջերմ հաւատացեալ է, յարգում, խոնարհւում է ջաննիշիններին, նրանց գծած կրօնական շաւղից հազիւ թէ դուրս գա, բայց Թէհրանում կատարուած վերջին փոփոխութիւնը չի կարելի վերագրել միայն կղերի—Քէրբէլայի միջթէհիդների ազդեցութեան։ Ամբողջ Իրանի խանխաւանը (ազնուականութիւն, պաշտօնակալութիւն) շատ խոժոռ հայեացք է գցում Եւրոպացի պաշտօնականների դէմ, որոնք կառավարում են պարսկական մաքսատունները և պոստը։ Այս հիմնարկութիւնների արդիւնքի մեծագոյն մասը առաջ կլանում էր այդ իշխանական դասը, որը այսօր անպաշտօն է մնացել։ Մանաւանդ որ մինչև Եւրոպացիների երևալը մաքսերը կապալով էր տրւում պարսիկ խաւան կաքաղութեան տէրերին, որոնք համարեա թէ կէսուկէս օգտւում էին իրենց ձեռնարկութիւններից։

Պարապ մնացած իշխանական կապալառու դասին միացան կղերը, սարրաֆները և կալւածատէր խանխաւանը, քանի որ պաշտօնանկ Աթաբէկը մտածում էր երկրի ֆինանսը ամբողջապէս յանձնել այդ եւրոպացիներին։ Իրանի եկամուտի մեծագոյն մասը երկրի բուսականութեան տասնորդական, կալւածական և ազգաբնակութիւնից առացւած ծխական հարկերից է կազմւած։ Ինչպէս յայտնի է, պետական այս հարկը մինչև օրս դանձում են և պետութեան մնացուկը հասցնում են կալւածատէրները, յայտնի բան է կլանելով պետական բաժնի երեք քառորդ մասը։ Եթէ Աթաբէկը կարողանար իւր ծրագիրը իրագործել, կալւածատէր կղերը, խաւանը և

սարրաֆները պիտի զրկէին իրենց ահագին եկամուտից։ Այս պատճառով կալուածատէրները միացան կղերին, խաններին և զինեցին Քէրբէլայի մուջթէհիդներին, որ խափանեն Աթաբէգի ծրագիրը։ Պարսիկ երիտասարդութիւնը անհեռատեսութեամբ և նրա մամուլը, որ դժգոհ էր նոյնպէս Աթաբէգի պօլիտիկայից, միացան կալուածատէրներին, երկիրը կեղեքող մաքսային կապալառու խաներին, միահամուռ ույժով ճնշեցին կենդրոնական վարչութեան Աթաբէգին։

Աթաբէգին մեղադրում են գլխաւորաբար այն պետական պարտքի համար, որ նա առաւ ռուսական ֆինանսիստներից և այն էլ շատ անձեռնտու պայմաններով, այն էլ գրաւ դնելով երկրի մաքսային հասոյթը։ Բացի այս, Աթաբէգին յանցաւոր են համարում, որ նա երկաթուղային գծեր անցկացնելու կոնցէսիա տուեց։ Այս պատրուակները զէնք շինելով, կալուածատէրները կարողացան Քէրբէլայի մուջթէհիդներին իրենց կողմը գրաւել և այնքան ճնշեցին, որ չթողին երկրի ֆինանսները Բէլջիքացւոց ձեռքն անցնի և իրենք զրկուեն այն խղալի պատառից՝ կալուածներից, պետութեան հասանելի բաժնի աւելորդը խլացնելուց։



# ԹԱՂՎԻԱԹ

Ահա տարին մօտենում է, ինչ մեր հարևան շիա-Թուրքերը մեզ հետ համբուրւում, հաշտւում և իրենց սուրբ գրքի՝ ղուրանի վրա երդւում և դարձեալ դրժում են։ Գիտական աշխարհին, քննող և հետամուտ հասարակութեան անչափ անբացատրելի է մնում, թէ ինչ պատճառով այդ մարդիկ այդքան դիւրութեամբ դրժում են իրենց երդումը և ոտնատակ են տալիս այն խոստումները, որոնք արել էին իրենց սրբազնագոյն գրքի ղուրանի առաջ։

Այս հարցը մասամբ շօշափել է մեր և օտար մամուլը, որի որոշ եզրակացութեան չհասնելը ինձ ստիպեց մի քանի տողով բացատրել և պարզել ընթերցողներին խնդրի ճշմարտութիւնը։

Ինչպէս մենք հարևանները, նոյնպէս եւրոպացիները, շատ փորձերով համոզւած են, որ շիա-թուրքերը չեն կարող անկեղծ յարաբերութեան մէջ մտնել ոչ-շիաների հետ։ Շատ դէպքերը ապացուցել են շիաների նենգամտութիւնը, խարդախութիւնը և կեղծիքը, որը նիւթ է տւել Հաջի-Բաբաների արկածների նկարագրութեան Եւրոպայում, որոնց համար պարսիկ բառը համանիշ է դարձել—կեղծաւոր եւ նենգ բառերին։ Այն հին պարսիկները, որոնք պարծենում

լին ճշմարտասիրութեամբ, որոնց վէպերն ու առակները շըրջում էին անաչառութեան և ճշմարտութեան շուրջը, այսօր գուցէ նրանց հոգիները ցնցւում են, նկատելով իրենց յաջորդների այս ամօթալի կեանքը։

Ճշմարիտ է, տնտեսական պայմանների ներգործութիւնն է, որ փոփոխում է—յեղաշրջում է կեանքը, բայց այս խնդրում նպաստաւոր դեր է կատարել նոյնպէս կրօնական պատգամը։

Մահմէդից ոչ շատ ուշ յետոյ, իմամ Հանիֆին, Մահմէդի հետ ապրող երեք հարիւրից աւելի հասակաւոր կրօնակիցների զրոյցը, բերանացի պատմուածքները հաւաքեց և դրանց կարգի բերելով կազմեց Սիւննի—Իսլամների օրէնսգիրքը—Սիւննան, որին այսօր հետեւում է ամբողջ մուսուլման աշխարհը, բացի շիաներից։ Ճշմարիտ է, բացի իմամ-Հանիֆիի հետեւողներից Մալիքի, Թէմբէլի, Շաֆի, աղանդաւորներ էլ կան, բայց սրանց տարբերութիւնը այնքան աննշան է, որ բոլորին էլ կարելի է անբաժան սիւննի համարել, այն ինչ Շիաները հիմնաւորապէս անջատւած և հերձւած են իսլամից, որի օրէնքները խմբագրեցին Իմամ-Ջաֆէրը և Իմամ Բագրը՝ Իմամ Հանիֆիի հակառակ։

Պէտք է ասել, որ Իմամ Հանիֆին ինքն անձամբ տեսել և լսել էր իսլամի հիմնադրին և ամենաբարեխիղճ կերպով հաւաքել ու գրել օրէնսգիրքը՝ Սիւննան, այն ինչ իմամ Ջաֆէրը ոչ միայն չէր տեսել օրէնսդրին, այլ չէր էլ ուզում լսել ականատեսների պատմուածքները և գրուածքները։

Իմամ-Ջաֆէրը և Իմամ Բագրը՝ Մարգարէի Թոռի՝ Իմամ Հիւսէյինի թոռնու թոռն էին և շիաների հինգերորդ և վեցերորդ իմամները։ Ինչպէս յայտնի է, Ալին և սրա յաջորդները հրատարակեցին, թէ իրենք՝ որպէս մարգարէի օրինական յաջորդներ, յարա-

թերութեան մէջ են Գերագոյնի հետ և տուած բոլոր պատգամները ամենագէտից է բղխած։ Հետեւաբար այս իմամների բոլոր հադիսները—բացատրութիւնները համարւում է շիաների համար—Գերագոյն յայտնութիւն։

Իմամ Ջաֆէրի տուած բոլոր պատգամները հակառակ էին Իմամ Հանիֆի պատգամներին, և խալիֆները Մուավեա, Եղիդ և յաջորդները, այս հակավարդապետութեան համար, սկսեցին հալածել շիաներին։ Հալածանքն այնքան հասաւ, որ շիաներին բանտարկում, տանջում և սպանում էին չարաչար կերպով։

Ճնշումը այն աստիճանի սաստկացաւ, որ իմամ Ջաֆէրը հետեւողներին փրկելու համար ուղղակի հադիս—բացատրութիւն և պատգամ տուեց շիաներին, որ կեանքերը փրկելու համար պարտաւոր են Թաղվիաք անելու, այսինքն կեղծելու, ծածկելու իրենց ներքին աշխարհը և մտածմունքները իրենց հակառակորդներից:

Այս Թաղվիաքի հադիսներում ասուած է, որ եթէ մի տեղ հարիւր շիա լինի և մի սուննի, բոլոր շիաները թէ լւացումը և աղօթքը պիտի կատարեն սուննիների իմամի—Հանիֆի պատուիրած ձեւով։ Եթէ մի տեղ հազար շիա լինի և մի սուննի, շիաները պիտի ջանան սուննի ձեւանալ և կեղծել սուննիի առաջ։ Շիաները պարտաւոր են շատ ճարպիկ կերպով կեղծել և չթոյլ տալ, որ սուննին կասկածի և նրանց կեանքը վտանգի մատնի։ Շիան նեղ ընկած պարագային պարտաւոր է միշտ կեղծել և ծածկել իր ներքին աշխարհը հակառակորդներից։ Այս հադիսին հակառակ վարւողը դատապարտելի է, թէ իւրայինների շրջանում և թէ հանդերձեալ կեանքում:

Շիաների այս ծպտեալ վիճակը ամբողջ դարեր տեւեց,

մինչև որ կարողացան ազատ համարձակ դաւանել իրենց կրօնը։ Այս դարերի ընթացքում այնպէս կեղծելու և ծպտելու վարժեցան, որ կեղծելը դարձաւ սրբազան պարտականութիւն ամէն մի շիայի համար։ Ոչ միայն սոսկ քաղաքացիները, այլ և պաշտօնականները և կղերը պարտաւորուած էին կեղծելու։

Իմամ-Ջաֆէրի անընական հադիսներից մէկն էլ այն է, որ ի հարկին. շիաները կեանքերը փրկելու համար, ոչ միայն կարող են կեղծել, այլ կարող են երդւել և այդ երդումը ոչ մի նշանակութիւն չի կարող ունենալ, ոչ մի յանցանք չի կարող համարւել նրանց հետևողներին։ Այս դրական բացատրութիւններից և Գերագոյնից ներշնչւած իմամի օրէնքները իւրացնելուց յետո, ամբողջ տասը դար շիա աշխարհը ապրել է կեղծիքով, կեղծել է ամէն մի պարագային և կեղծում է մինչև օրս։

Մինչև անգամ շիա ամենամեծ կղերականները մուջթէհիդները, որոնք իրենց անձը իմամի-Մէհդիի հոգու բնակարան են համարում, կեղծում են սիւննի կղերի առաջ, երբ Մէքքէ ուխտի են գնում և կատարում են իրենց կրօնական պարտականութիւնը։ Այդտեղ գնացող բոլոր շիաները—նոյն իսկ մուջթէհիդները կարող են մեծ հալածանքի ենթարկւել, տանջւել, եթէ չկեղծեն, թէ իրենք սիւննի—Շաֆի աղանդին են պատկանում։

Այսպէս կեղծիքը—կեղծելը կրօնական պարտականութիւն է դարձել շիա Թուրքի համար և ով շատ ճարպիկ է կեղծում, նա ամենաօրինակելի հետևողն է համարւում և ամենքն էլ ջանք են գործ դնում իրար գերազանցելու։

Ես կարծում եմ, թէ պարզ է ընթերցողների համար, որ երդմնազանցութեան պատճառները, որտեղ պէտք է փնտռել։



# Գ.

# ԲԱԲԻ

կամ

# ԲԵՀԱՅԻ

# ԲԱԲԻ ԿԱՄ ԲԷՀԱՅԻ

## Պատմական տեսութիւն

Բովանդակութիւն: 1. Պարսկաստանի վիճակը XIX դարի սկզբներին. 2. Արտաքին աշխարհի ներգործութիւնը Իրանի վրա. 3. Շիա—կղերի անկեալ վիճակը. 4. Բաբի յայտնութիւնը. 5. Բաբի ծնունդը և մանկութիւնը. 6. Սկզբնական քարոզութիւնները. 7. Շիխիզմի աղանդները և ընդհանուր տրամադրութիւնը. 8. Շէյխի վարդապետութեան նպաստաւոր պարագաները Բաբի քարոզութեան. 9. 19 միւջթէհիդների դարձը և Բաբէլ-բաբ. 10. Հալածանք և Բաբի Մաքու աքսորը. 11. Ընդհանուր ռէֆօրմների կարիքները. 12. Թէբէրսի բերդում ապաստանած Բաբիները. 13. Պատերազմների, արիւնահեղութիւնների սաստկացումը. 14. Բաբիների անձնատուր լինելը. 15. Նէյրիզի Բաբիների խռովութիւնները. 16. Պարսից զօրքերի անգթութիւնները. 17. Զէնջանի խռովութիւնը. 18. Զէնջանի կոտորածը. Ժաննա դ' արք. 19. Զէնջանի Բաբիների գերեվարութիւնը. 20. Բաբին փոխադրում են Սալմաստի Չէհրիքի բերդը. 21. Բաբի գործի քննութիւնը Թաւրիզում. 22. Բաբի հռչակը և նրա այցելող ուխտաւորները. 23. Բաբի խաչելութիւնը և գնդակահարութիւնը. 24. Բաբի ոսկրատիքի Քարմել լեռան գագաթը փոխադրելը և Տաճարը. 25. Բաբի բնաւորութիւնը և բնատուր ձիրքերը. 26. Թահիրէ-խանումի քարոզութիւնները. 27. Թահիրէի ազգականներից հալածուելը և ընկերակիցների մահը. 28. Թահիրէի հռչակը.—Թէհրանի ժողովները. 29. Եօթը Բաբիների գլխատութիւնը Թէհրանում. 30. Սիւլէյման-Խանի չարչարանքը—մահը: 31. 370. բաբիների զարհուրելի տանջանքներով սպանուելը Թէհրանում. 32. Բէհայի կալանաւորումը. 33. Բէհայն Բաղդադում. 34. Բէհայն Սիւլէյմանէ. 35. Բէհայի քա-

# ԲԱԲԻ ԿԱՄ ԲԵՀԱՅԻ

## Ա. ԲԱԲԻ

1. *Ինչպէս Իսլամի վարդապետութեան սկզբնական շրջանում, Մահմէդի մահից անմիջապէս յետոյ, կազմակերպուեց Ճիա աղանդը դրադաշտական կրօնի սերունդի ձեռքով, որն այնքան նորանոր աղանդների ծագման պատճառ դարձաւ. ինչպէս Պարսիկի վառ երեւակայութիւնը իսլամի օրէնսդրին, սրա արիւնակից՝ Ալիին և սրանից սերուած տասներկու յաջորդներին դիւցազնացրեց Աքէմէնեան Արշակունի և Սասանեան Թագաւորների նման և այդ սերունդը գերբնականի հետ յարաբերութեան մէջ դնելով՝ մի ֆանտաստիքական դիւցաբանութիւն յօրինեց, սրանց ծագումը նախասահմանական հրից արտադրուիլը դաւանեցրեց, միեւնոյն բանը դարէդար շարունակեցին քուռն երեւակայութիւններով յափշտակուած «կրակի-որդիքը»—«արեւի զաւակները», որոնք հազարաւոր կերպարանափոխութիւններով ընդարձակեցին, բազմացրին և տարածեցին այն անթիւ աղանդները, որոնք ներկայիս գոյութիւն ունին ամբողջ Պարսկաստանում։ Եթէ ամէն մի պարսիկ անհատ, որպէս մի* հիւլէ այն գերբնականութեան, *որին դաւանում ու պատկանում է, իւր մտաւոր աշխարհով չի կազմում մի ինքնուրոյն աղանդ, գոնէ ամէն մի գրագէտ, ամէն մի*

դէրվիշ, ամէն մի մտածող, փիլիսոփա այնպիսի ինքնուրոյն ներքին դաւանանք ունեցել է և ունի, որ բոլորովին ան-կախ մի աղանդ է կազմում, լիովին մնացեալներից տար-բեր հայեացքով։ Շքեղ բնութեան սքանչելիքներից հիպնոսուած պարսկի երեւակայութիւնը ինչեր չէ գուշակել, մակաբերել և այդ երազանքներով հրապուրուած ինչ առասպելներ չէ ար-ծարծել տարածել դարերի ընթացքում, որոնք դիւթել ու թմրեցրել են ժողովրդի միտքը և խոր քնով քնացրել են նը-րան։ Այս անուրջների մէջ կաշկանդուած պարսիկը, լեթար-գիական քնով թմրած, չէր էլ զգացել, թէ ինքը որքա՞ն ետ էր ընկել, քաղաքակրթութիւնը ինչ հսկայական քայլեր էր գործել և թէ ինչ էր նրան սպառնում։

2. XIX դարի շոգեշարժ մեքենաների գիւտերը, երկա-թուղիների շոգենաւերի սուլիչների որոտը, մեքենաներով պատրաստուած կիսաքաղաքակիրթ և վայրենի ազգերի մէջ տիրուած ապրանքները, միջազգային յարաբերութիւնների դիւրութիւնները և մարդերի շփումները չէին կարող իրենց ներգործութիւնը չունենալ Պարսկաստանի վրա։ Այս երկրում ապրող Արիական ցեղի ընդունակ զաւակներին ցնցեց ու յան-կարծակի սթափեցրեց եւրոպական կուլտուրան։ Մանաւանդ Ռուս-Պարսկական 1800—1828 թ. պատերազմները, արծուի յաղթանակները առիւծի դէմ, Կովկասի անջատումը անակըն-կալ կերպով զգաստացրին գոռոզ շահերին, որոնք երեւակա-յում էին, թէ իրենց է պատկանում ամենավեհ կրօնը, ամե-նավսեմ գիտութիւնը, ամենահզօր զօրական ոյժը, գեղար-ուեստական սքանչելիքներ արտադրելու հանճարը, արագ, յախճապակ և ռէֆլէ-մէթալիք դանգուածներ յարդարելու, յօ-րինելու ձիրքը, բրդի, բամբակի, քաթանի, մետաքսի և ոս-կեթել կերպասներ գործելու արհեստը։ Պարսկական առաս-

պելնները, վէպերը՝ բարին, գեղեցիկը, սքանչելին, ազնիւն ու անգինը կենարոնացրել էին իրենց հայրենիքում, խոպանն ու բիրտը թողել աշխարհի մնացեալ ազգերին։ Յանկարծ այս բոլորի հակառակ կատարուածը շօշափեցին։ Երբ նկատեցին եւրոպական գործուածների առաւելութիւնը, իրենց գալեար քնքշութիւնը, զգացին իրենց սխալը։ Նրանք նախ ենթադրում էին, որ ամբողջ աշխարհը չուռ է եկել, նախասահմանական կարգերը այլանդակուել են և ամէն բան իրենց հակառակ է թւում։ Նրանց անչափ դժուար էր տեսնել, թէ ինչպէս պարսկական գործարանները օրէցօր փակւում էին, արհեստաւորների ձեռագործները չէին ծախւում, հետզհետէ վաճառականները քայքայւում էին, ագարակի ապրանքը նւազում, իսկ բանւորները կարիքից տանջւում, պանդխտում... Այս սթափումը կարեկից սրտերի մէջ արհամարհանք ծնեցրեց դէպի իրենց տիրող անշարժութիւնը, և ձգտում՝ դէպի առաջադիմութիւն։ Յայտնի բան է զարգացածն ու ամբոխը չէին կարող միևնոյն հայեացքով զննել շուրջը կատարուածները, ամէնքը միևնոյն տեսակէտով չէին կարող քննել անցքերը, բայց բոլորի համար զգալի էր իրենց ողորմելի թմրած ու ետ մնացած վիճակը, ամէնքն էլ ըմբռնում էին, թէ ինչ էին կորցրել և բոլորի սրտի մէջ եռում էր մի ձըգտում, որը նրանց մղում էր առաջ, որոնելու, գտնելու մի բան, որը կարողանար կորուստը փոխարինել։ Բայց երկրին տիրած մառախուղը, տգիտութիւնը նրանց մոլորեցրել էր, չէին իմանում ուր դիմել. Նրանք մի հովուի, մի ուժեղ առաջնորդի պէտք էին զգում, բայց երկիրը չէր կարող խաւարից մեծ մարդ ծնեցնել։

3. Այս անկումը չէր կարող խոր ներգործութիւն չունենալ նոյնպէս շիա կրօնի վրա, որի պատգամատուները ոչ

միայն առաջւան նման խոր խուզում էին իրենց աշխարհները, այլ դարի ոգու համեմատ հետամտում էին ժողովրդին մաշկել, ճարպն էլ պոկել, մեծամեծ դրամագլուխ դիզել, կալուածները իւրացնելու, եկամուտները ճոխացնելու, իրենց փարթամ կեանքի շռայլութիւններին յագուրդ տալու համար։ Շիա կրօնի աղանդաւորները իրենց առանձին վարդապետութիւններով մշտնջենաւորապէս իրար դէմ կռիւ էին մղում, մրցում և մէկը միւսի արատները մերկացնելով, ծաղրի նիւթ էին դարձրել կրօնի էական դաւանութիւնները և գայթակղեցրել ամբոխին անգամ։ Կղերը վաղուց պարզութիւնը մոռացել, անձնատուր էր եղել փարթամութեան, անձնուրացութեան յաջորդել էր ղեղխութիւնը, պորտաբուծութիւնը, սակաւապետութեան՝ ագահութիւնը, ժողովրդասիրութեան՝ ցոփութիւնը, արդարադատութեան՝ կաշառակերութիւնը, աշառութիւնը։ Ժողովուրդը զզւել էր միջթէհիդներից, նորանոր աղանդաւոր քարոզիչներից, որոնք ձգտում էին իրար ձեռքից յափշտակել ամբոխը։ Շիական վարդապետութիւնը այնքան էր մաշուել։ Մեհթիի, Ջաբուլգաի առասպելները այնպէս էին թուլացել, որ ոչ միայն կրիտիքայի չէին դիմանում, այլ այնպէս ծաղրւած էին, որ ամենքը սպասում էին որևէ հիմնական վերանորոգչի։

4. Պարսիկ ժողովրդի զարգացած անհաշտ դասը արտաքին—եւրոպական վերանորոգութեան կարիք էր զգում, իսկ ամբոխը սպասում էր հազար տարուց ի վեր անյայտացած Մէհթիին (Աստուածայայտնութեան). յուսալով որ նա վերադառնալով Ջաբուլգաից կառաջացնէ աշխարհի վրա այն երանելի վիճակը, որ բոլոր ազգերը մի հօտի վերածած, մի հովւի հովանու տակ բարեբաղդութեան մէջ կապրեն և աշխարհը մշտնջենաւոր դրախտի կվերածւի, իրենք էլ դար-

նեալ իրենց առաջնակարգ դիրքը կորցրին։ Այն խառնաշփոթութեան մէջ առաջացաւ Բաբիականութիւնը, որն ապա առաջնորդողի անունով Բեհականութիւն կոչուեցաւ։ 1844 թ. Շիրազցի Սէիդ-Ալի Մէհմէդ երիտասարդը, որ հասարակ վաճառական էր, ոչ այնքան մտաւոր և նիւթական կարողութեան տէր, Մէքքէի ուխտագնութիւնից ծննդավայր վերադառնալով, քարոզեց թէ ինքը Գիտութեան—Ճշմարտութեան դուռն է (բաբ), Աստուածաշնչի, և Ղուրանի որոշ ցուցմունքների համեմատ ինքն այն մարգարէն է, որ եկել է կարգաւորելու, աւետելու աշխարհին շուտով երևալիք «Աստուածայայտնութեան» մասին, ազգերին պատրաստելու ընդառաջելու Խորագոյնին և ժողովուրդներին ուղղել դէպի Ճշմարտութեան դուռը (բաբ): Նա քարոզում էր համարձակ, համոզուած, դիմում ու գրաւում էր լսողներին. կապում էր իրեն հետ ոչ միայն ժողովրդին, այլ Իսլամի գիտնականների սիրտը։ Կարճ ժամանակամիջոցում այնքան շատ հետևողներ ունեցաւ, այնպիսի նշանաւոր չիա—իւլէմներ, մուջթէհիդներ նրա փարդապետութիւնը դաւանեցին, նրա քարոզութիւնից այնպիսի նըշանաւոր հակառակորդներ պապանձուեցան, որ մեծ զարմանք ու խլրտում առաջացաւ «Սրբ-Ամիւծի» աշխարհում։

5. Բաբը ծնել է 1819 թուականի հոկտեմբերի 5-ին (1 Մուհարէմ 1235 թ. հիջիրի)։ Նրա հայրը Սէիդ-Րզան Շիրազում հասարակ կտաւի վաճառական էր, փոքր դրամագլխի տէր և հազիւ ընտանիքը կերակրող։ Հայրը մեռնելիս մանուկ Սէիդ-Ալի-Մէհմէդը եօթը տարեկան չկար, նա մեծացաւ քեռիի՝ Հաջի-Սէիդ-Ալիի խնամակալութեան տակ։ Ընդհանրապէս Սէիդ-Ալի-Մէհմէդը սակաւախօս, լռակեաց, համեստ և հանդարտ տղայ էր։ Մայրը պատմում էր, որ զաւակը երբէք փողոցում երեխաների հետ խաղով չի զբաղուել, նա

տանը մի անկիւն քաշուած՝ անվերջ խորասուզուած է եղել իւր խոհերով։ Եօթը տարեկան հասակից նա անձնատուր է լինում աղօթքի, բացի օրական սովորական հինգ ժամերի աղօթքը, նա շարունակ կարդացել է Ղուրանից այլեայլ աղօթքներ և ընկղմել է այդ փառաբանութիւնների ներգործութեան տակ։ Երբ առաջին անգամ վարժապետը նրան յանձնեց այբենարանը և ասաց,—«Կարդա վերնագիրը, «ՆԱ է բանալին գիտութեան», «երեխան հարցրեց ախունդ վարժապետից—«իսկ այս «ՆԱ»ն ո՞վ է· Մանկութեան մասին շատ քիչ տեղեկութիւն կա, այն էլ կասկածելի, նրա կենսագիրները լռութեամբ են անցկացրել Սէիդ-Ալի-Մէհմէդի կեանքի այս շրջանը։ Տասնեութ տարեկան հասակում նա գնաց Քէրբէլա ուխտի, իմամ Հիւսէյնի գերեզմանին, ուր երկու ամիս բնակուեցաւ և ծանօթացաւ յայտնի Հաջի-Սէիդ Քեազիմ Րէշտիյի վարդապետութեան և աշակերտների հետ։ Այս քարոզութիւնները—Շէյխի վարդապետութիւնը նրա հոգու վրա մեծ ներգործութիւն ունեցաւ, այնպէս որ Շիրազ դառնալով նրա մտածութիւնները կենտրոնացած էր այդ վարդապետութեան շուրջը։

6. Բաբի քարոզները այնքա՜ն հետաքրքրում է, այնպէ՜ս հրապուրում է, որ ամէն մի քիչ թէ շատ գրագէտ պարսիկ —շիա հետամտում է նրա քարոզութեան, ձեռք է բերում գրուածները, լսում է ներքնատներում գաղտագողի նրա քարոզները, յաճախում է ժողովներին, և, առանց վախենալու ուրացող մուսլիմանի մասին սահմանուած զարհուրելի պատժամներից՝ քարկոծուելուց, եթէ ոչ յայտնի, համարձակ, գոնէ գաղտնապէս իրեն բաբի է համարում, երեսը շուռ է տալիս իւր աւանդական կրօնից, որը նրան յուսախաբել և կործանման դուռն էր հասցրել։ Շիրազում այնպէս տարածուեց,

այնքան բազմայան բաբի հետեւողները, որ կառավարչապետը անճարացած կալանաւորեց Սէիդ-Ալի-Մէհմէդին, սաստիկ ցանակոծեց, բայց զուր. սրանով աւելի բորբոքեց նորադանդ-ներին։ Բաբիզմի յաջողութեան և շուտափոյթ տարածման գլխաւոր պատճառն այն էր, որ Սէիդ-Ալի,Մէհմէդը իւր բոլոր քարոզութիւնները հիմնում էր Ղուրանի որոշ այաթների վրա, Աստուածաշնչից համարներ էր բերում և իւր ճար-տար լեզուով դիւթում էր լսողներին։ Մանաւանդ նա իւր գրուածներով աւելի գրաւում էր գիտնականներին, որոնք զարմանում էին, թէ ինչպէ՞ս այդ թերուսը այդպիսի սքան-չելի ոճով արաբերէն էր գրում։ Բաբի քարոզած Ալլահն էլ Մովսէսի, Մահմէդի դաւանած Եհովան էր։ Նա ասում էր, որ մարգարէների, առաքեալների գործերի լրացման, օրէնքները կարգաւորելու, պատուիրանները հաստատելու համար Աստ-ւածութիւնը յայտնելու է աշխարհին, որպէսզի ամբողջ մարդկութիւնը միացնէ, միաբանեցնէ, խաղաղութեան թագա-ւորութիւնը երկրի վրա տարածէ։ Ղուրանի «Լիգա» այաթի համաձայն իսլամն սպասում է մի այդպիսի յայտնութեան, որի մասին ահաւոր գրականութիւն և անվերջ վէճեր են ու-նեցել սիւննիները շիաների հետ, որոնք իրարից բոլորովին տարբեր դաւանանք ունին այդ գալողի մասին։

7. Բաբը անվերկիւղ սկսեց քարոզել, թէ—Նա, որին գի-տութեան, անյայտի, գերբնական գաղտնիքների աղբիւրն ու ակն էք համարում, նա, որին Մէհթի (Մահդի) անուան տակ սպասում էք, որը իբր թէ գալու է Ջաբուլղաից, այդ ես եմ։ Ջաբուլգա քաղաք կամ երկիր չկա, այդ առասպելական անու-նը երեւակայութեան ծնունդ է, որով Քէազիմէն կամ Սուր-րէ-Մէրւա (Բաղդադի մօտ) նստող չորս նայիբները (իմամի փոխանորդները—Մէհթիի օգնականները) խաբեցին ժողովրը-

դէն ութսուն տարի և այն թւականից մինչև օրս հազար տարի են։ Այդ չորս նայիբների տւած բոլոր հաւատները ա-ռաքելներ են, որոնք բոլորը ճշմարտութեան և ղուրանի հակառակ են, դրանց հաւատացողները միւշրիք (Աստծուն ընկերակից յատկացողներ-բազմաստուածեան) են, մոլորուած են, պէտք է զգաստանալ և պատրաստուել այն աստուածա-յայտնութիւնը ընդունելու, որը շուտով երևալու է աշխարհին և ջնջելու մարդապաշտութիւնը։

Այս քարոզութիւնը մի յանդուգն քայլ էր ՇԻԱ ԽՍՆԱԱ-ՇԱՐԻ—ՄԻԻԹԷՇԷՐԻ կղերի դէմ, որոնք տիրում են Պարսկաս-տանին։ Միւթէշէրինները սրբապղծութիւն հրատարակեցին Բաբի վարդապետութիւնը, իրան էլ մահապարտ։ Բայց Բաբն արհամարհելով միւջթէհիդների (դեսպոտ) սպառնալիքները, շարունակում էր իր քարոզներով հրապուրել անհամար ուն-կընդիրներին, որոնք ոգևորուած, գիւթւած խոստովանում էին, դաւանում նրա վարդապետութիւնը։

Բաբի քարոզութիւնից քառասուն—յիսուն տարի առաջ, յայտնի Շէյխ-Ահմէդ Բահրէյնին հիմնել էր Շիաների «Շէյ-խի» աղանդը, որը միւթէշէրինների վարդապետութեան բոլո-րովին հակառակ հայեացք ունէր Մէհթիի մասին։ Միւթէշա-րինները համաձայն իրենց հաւատների դաւանումն, թէ Մէհ-թին—տասներկուերորդ իմամը ծննդով մի կերպագոյն Աստ-ւածայայտնութիւն էր, կատարեալ Աստուած, որի համար մահ չէ նախասահմանւած յաւիտեան։ Նա Ջաբուլգա հեռա-ցել է, ուր ընտանիք, զաւակներ և ահաւոր սերունդ ունի, (յայտնի բան է դարձեալ անմահ), որոնց հետ մի օր վերա-դառնալու է Միջագետք, որ տիրէ երկրին և հիմնէ երկրային յաւիտենական հաւասարութեան և եղբայրութեան դրախտը։ Շէյխ Ահմէդը հերքեց այս վարդապետութիւնը, հիմնելով

դաւրանի վրա, Աստուածութիւնը երբէք չի կարող մարմնանալ. Նա անհիւթ է։ Ամէն մարմին փթութեան-նեխման, քայքայման ենթակա լինելով, երբէք մարմնացած Մէհթին հազարաւոր տարի ապրել չէր կարող։ Ջէյխի դաւանանքով Մէհթիի հոգին միշտ աշխարհի վրա է եղել, միշտ իրեն բնակարան է ունեցել որևէ բարեկրօն գիտնականի սիրտը, որի շրթունքներով քարոզել է Աստուծու խօսքը աշխարհին։ Այս քարոզութեան համար այնպէս ոխակալեցան մութէշէրիները, որ Ջէյխ—Ահմէդը պարտաւորուած հեռացաւ Քէրբէլայից։ Սրա աշակերտ Հաջի Սէիդ—Քեազիմը մեռնելիս կտակեց աշակերտներին, թէ շուտով երևելու է աշխարհին Մէհթիի հոգին, պէտք է հետամտել նրան գտնելու։ Աշակերտները իրենց ուսուցչի մահից յետո, քառասուն օր ծոմ պահեցին, աղօթեցին և ցրուեցին զանազան կողմեր հետամտելու, գտնելու Աստուածային հոգով ներշնչուած հոգեորականի, Սէիդ-Քէազիմին յաջորդ անւանելու համար։

Երբ իրար ետևից «Ջէյխի» աղանդի նշանաւոր տանեւթիւլէմները (գիտնականներ) խոստովանեցին և դաւանեցին Բաբի վարդապետութիւնը. Սէիդ-Ալի-Մէհմէդին յաջորդ ընտրեցին Ջէյխ-Ահմէդին, Սէիդ-Քէազիմին, ամբողջ Պարսկաստանում այնպիսի հռչակ ստացաւ Բաբը, որ Մէհմէդ-Ջահը այս շփոթութիւններից վախենալով. Եզիդի հռչակաւոր տղա Սէիդ-Ջաֆէր Քէաշի որդուն—աղա Սէիդ-Եահեային ուղարկեց Ջիրազ, որ շիաներին Բաբի մոլորութիւններից ետ դարձնի և նրա խաբէութիւնը բացատրելով՝ խայտառակի։ Երբ Սէիդ-Եահեան մօտեցաւ Ջիրազին, ճանապարհորդութեան վերջին գիշերը մի երազ տեսաւ։ Այս տեսիլը մեծ ներգործութիւն ունեցաւ. Եահեան, որպէս ներշնչման հաւատացող շիա, ընկաւ խոր մտքերի մէջ։ Սէիդ-Եահեային երազում թւում էր,

թէ ինքն արդէն հասել էր Շիրազ, մտել էր Բաբի բնակարանը, որի հետ երկար վիճելիս, Բաբը իւր խմած թէյի կիսատ բաժակը նրան մեկնելով առաջարկել էր խմել և նա երազում հնազանդուել ու կատարել էր Բաբի խնդիրը։ Այս երազի ներգործութեան տակ, երբ Սէիդ-Եահեան Շիրազ հասնելուց յետո, ներկայացաւ Բաբին, վերջինս ձեռքի կիսատ բաժակով թէյը նրան առաջարկեց, ասելով—«խմիր այս կիսատ բաժակի մնացորդ թէյը, որը գիշերս դարձեալ միասին խմեցինք»։ Բաբի այս խօսքերը, ձայնը, դէմքը, կազմը և շարժումները այնքան նման էին տեսիլքին, որ Եահեան շուարած առաւ բաժակը, խմեց և շարունակեցին իրենց «անուրջներում» թերատ թողած վիճաբանութիւնը։ Շիա կղերի և ամբոխի համար մի սոսկալի պարտութիւն էր, երբ ամբողջ Պարսկաստան լուր տարածուեց, շրջաբերականներ ցրուեցին, թէ Բաբի դէմ հակաճառելու և նրան խայտառակելու համար ուղարկուած յայտնի մուջթէհիդը պարտուեց, խոստովանեց և դաւանեց Բաբի վարդապետութիւնը։

Գայթակղութիւնը հասաւ գագաթնակէտին։

8, Բաբի քարոզութիւնները դաւանող և հետևողները խոստովանում էին, թէ Միրզա-Սէյիդ Ալի-Մէհմէդը ինքը Մէհդին էր, որին սպասում էին պարսիկները, այն ինչ իսնա աշարի-միւթէշէրիների դաւանութեան համաձայն, Մէհդին չպէտք է որևէ կնոջից ծնէր, այլ որպէս «գերբնական կատարելութիւն» պիտի վերադառնար երկիր։ Հետևաբար Բաբը իւր քարոզութիւնով ոչ միայն հակասում էր շիաների հադիսներին, ոչ միայն աւանդութիւններն էր եղծում, այլ դաւանանքը, հաւատի էական մասն էր հերքում, այնպէս որ, մի ահաւոր ըսպառնալիք էր այդ քայլը, որ կարող էր իսպառ ջնջել շիական կրօնը։ Ամբողջ Շիրազի ազգաբնակութիւնը ճանաչում

էր Աղա Սէիդ-Բղա վաճառականի որդուն, որին, ամէնքը տեսել էին նրա ծնունդը, հետեւաբար ամբողջ տասը դար Ջաբուլգայից Մէհդիի վերադարձին սպասող շիաները ինչպէս կարող էին զիջել և դաւանել, թէ այս երեխայից մեծացած Բաբը նոյն ինքը Մէհդին է։ Դրութիւնը այնտեղ հասաւ, որ հարկ եղաւ կառավարութեան խիստ միջամտութեան, որը մինչ այդ տատանւում էր։ Կառավարութիւնը դանդաղելու էլ իրաւունք ունէր, քանի որ Մէհդիի վարդապետութիւնն դինաստիայի գոյութեան հակառակ ներշնչումներ էր տարածում ժողովրդի ամէն դասում, որոնք հաւատացած էին, թէ Մէհդիի վերադարձը պիտի ջնջէ ոչ միայն պարսկական, այլ ամբողջ հողագնդի թագաւորութիւնները։ Շէյխ-Ահմէդ-Քահրէինի Արաբացիի քարոզութիւնները և վարդապետութիւնը բոլորովին տարբեր հիմունք ունենալով իսկ աշխարհ—միւթէշէրիների դաւանանքից, բաւական խախտել էր շիաների դաւանանքը՝ Մէհդիի մեծազօր դալստեան մասին, որով ամրապնդել էր արքունական տան դրութիւնը։ Կառավարութիւնը չէր կարող իրեն նպաստաւոր վարդապետութեան աշակերտներին հալածել, քանի որ Շէյխ-Ահմէդի, Հաջի Սէիդ Քեազիմի բոլոր նշանաւոր աշակերտները շրջապատել էին Սէիդ-Ալի-Մէհմէդին՝ Բաբին, իսկ սրանք իրենց վարդապետութեամբ արդէն տիրել էին Պարսկաստանի շիա հասարակութեան կէսից աւելի մասը։ Շէյխ-Ահմէդի վարդապետութեան համաձայն, ինչպէս Աստուած երբէք չի կարող մարմնանալ, նոյնպէս որևէ մարմին չի կարող աստուածանալ, այլ աստուածային ոգին անդրադառնալով որևէ մաքուր մարդկային սրտում, նրան ներշնչէ Աստուծո բանը—Երկնաւորի պատուիրանը խօսելու մարդկային ցեղին։ Մինչև անգամ նա պնդում էր, որ աշխարհիս վերջին էլ մարդկային մնացած, փթած դիակները

չպիտի կենդանանան, չպիտի վերստանան իրենց հոգիները, այլ այդ հոգիները պիտի նոր-թարմ մարմին հագնեն, ինչպէս ծիրանի կորիզից աճած ու հասած ծառը տալիս է, արտադրում է ճիշտ իւր նման ծիրան, տանձի սերմից աճած ծառը՝ տանձ է տալիս, նոյնպէս նոյն հողի մէջ փթած մարմինները պիտի իրենց համանմանները ծնեցնեն, որոնք իրենց հոգիներով պիտի վերակենդանանան։ Այս վարդապետութիւնը աւելի ապաւաղեց Հաջի Քէրիմ-խան Ղաջարը, որ քարոզում էր, թէ իւր կուրծքը բնակարան է Մէհթիի հոգուն և պատգամներ էր տալիս։ Բայց, երբ արքայական տանից արիւնակիցները քննութիւն բացին, Աստուածութեան բանը խօսելու յաւակնող այդ արքայազնը քաջութիւն չունեցաւ պաշտպանելու իւր հրատարակութիւնները և նրան պատասխանատուութեան ենթարկեցին։

9. Շէյխի վարդապետութիւնը անչափ նպաստեց Բաբի վարդապետութեան տարածման. իսկ շէյխի աղանդաւորների տասնեութ նշանաւոր կղերականների Բաբին յարելը, բոլորովին հաստատեց Բաբիական աղանդը Պարսկաստանում։ Այս տասնեութ աշակերտները իրենց քարոզութիւնների մէջ ամէն տեղ մատնանիշ էին անում Շէյխ-Ահմէդի և Սէիդ-Քեազիմի այն գրուածները, այն քարոզութիւնները, որոնք ակնարկում էին Բաբի գալուստը, սրա յայտնութիւնը և այդ քարոզութիւններով, այս տասնեութ աշակերտների ձեռքով Իրանի ամէն կողմ կատարուած պրօպագանդան տարաւ յաղթանակը, Բաբիզմը բուն դրեց Պարսկաստանի նշանաւոր քաղաքներում, աւաններում, նոյն իսկ գիւղերում։ Այս տասնութը ուլէմների աւած դաւանութիւնը, կատարած քարոզութիւնը այնպիսի ոգևորութիւն ներշնչեց Սէիդ-Ալի-Մէհմէդի վրա, որ սա Բաբը իր անունն էլ աւելացնելով—կցելով նրանց թւին, հրաշա-

գործ տասնիննը թիւը կազմեց, տարին բաժանեց տասնիննը ամսի, ամիսը տասնիննը օրուան։ Այս տասն և իննը անձերը համարուեցան Նոր կրօնի սիւները և Բաբիական շատ թուեր տասն և իննի վերածուեցան։ Հարկը 19-րդ բաժին է հաւաքուելու, տուրքերը 19-րդ մասն է գանձուելու, ժառանգութեան տասնիննըներորդը պիտի տրուի հասարակական գանձարանին, քաղաքական, արդարութեան ժողովի անդամները 19-ից է բաղկանալու, եայլն, եայլն։

Բիշրոյեցի Մօլլա Հիւսէյն Միւջթեհիդը, որբ Քէրբէլայից բաժանուեց իր ընկերակիցներից, իրենց հանգուցեալ վարժապետին՝ Սէիդ Քեազիմին մի արժանաւոր յաջորդ գտնելու յոյսով, նա որոշեց ուղղակի Շիրազ գալ և իջնել իր մտերիմ Սէիդ-Ալի-Մէհմէդի տունը, տասը-քսան օր հանգստանալ, կազդուրուել։ Սէիդ-Ալի-Մէհմէդը մեծ յարգանքով ընդունեց բարեկամին և շատ սիրալիր անցկացրին։ Գիշերը երկար խօսակցութիւնից յետոյ, տան տէր երիտասարդը հարցրեց Բիշրոյեցիից, թէ—«Արդեօք շէխիների պարագլխին վայել արժանաւորութիւնները ինքը չէ՞ իւրացրած, ինքը արժանի չէ՞ այդ կոչման»։ Բիշրոյեցին ժպտալով ասաց,—«Երբէք։ Ուղիղ է վարքով, բարքով, խելքով դուք շատ արժանաւորութիւն ունիք, բայց Սէիդ-Քեազիմին յաջորդելու համար անհրաժեշտ է բարձր գիտութիւն ունենալ, անսահման մտաւոր հայեացք, հռետորական ձիրք, բնատուր տաղանդ, որոնցից բարեկամս, դուք զուրկ էք»։ Այս խօսքերից չյուսահատուեց Սէիդ-Ալի-Մէհմէդը, բայց երիտասարդի յանդուգն երեւակայութիւնը փոթորիկ բարձրացրեց Բիշրոյեցիի գանկում։ Մաքի ալէկոծման առաջն առնելու նպատակով, հիւրը սենեակի թախճաից մի գիրք վերցրեց կարդալու, որի ճակատին գրուած էր «Բէզարա—Սուրիէի՝ «մեկնութիւնը» (ղուրանի ր. գլխի), որը լարեց

Բիշրոյեցիի հետաքրքրութիւնը: Այդ արաբական գրուածքից մի քանի երես կարդալով, նրա թարմութեամբ բոլորովին յափշտակուեց հիւրը և հարցրեց, թէ—ով է գրել այս «մեկնութիւնը»:—Մի յաւակնութիւն ունեցող երիտասարդ, պատասխանեց տանտէրը: Բայց այնքան հմտութեամբ և այնպիսի ճարտար ոճով էր գրուած այդ «Մեկնութիւնը», որ Բիշրոյեցին տարակուսելով հիւրընկալի վրա, նրան մեկնեց գիրքը և ասաց,—ես յոգնել եմ, խնդրում եմ դուք կարդաք, ես քիչ տարածուած լսեմ: Սէիդ-Ալի-Մէհմէդը կարդում էր դանդաղ և մեծ առոգանութեամբ, որից հիւրը եզրակացրեց, թէ դա նրա գործը չէր կարող լինել: Հետևեալ օրը Բիշրոյեցին տարան մզկիթ քարոզելու, բայց նա կարկամեց և յոգնածութիւնը պատրուակ բերելով՝ տուն դարձաւ: Երրորդ, չորրորդ օրերն էլ չկարողացաւ քարոզել, այնպէս որ նրա մըտքում զամուած էր հիւրընկալի առաջարկը, կարդում էր նրա գրած «մեկնութիւնը» և մտածում: Այդ դիշեր նորից կրկնեց տանտէրը իւր հարցը, թէ—«արդեօք ինքը արժանի չէ՞ Սէիդ-Քեազիմին յաջորդելու»: Այս անգամ Բիշրոյեցին մի խրատական խօսեց, երիտասարդին մոլորութիւնից և մանիայից ազատելու և իր միտքն էլ խաղաղացնելու դիտմամբ՝ նրան մի քանի շատ խրթին հարցեր տուեց: Երբ Բիշրոյեցիի հարցերի դէմ տանտէր երիտասարդը սկսեց արաբական ընտիր ոճով ինքնաբուղխ այաթներ կարդալ, բացատրել իրեն տըրուած հարցերը, Բիշրոյեցին շւարեց: Այս անգամ Սէիդ-Ալի-Մէհմէդին բոլորովին ընկճելու համար հարցրեց, թէ «—ինչ է պատճառը, որ Ղուրանի «Յովսէփ Սուրէն» համարւում է պատմութիւնների սքանչելիքը: Սէիդ-Ալի-Մէհմէդը պատասխանեց, թէ—«այդ հարցը տուել էիք Սէիդ-Քէազիմին, նա պատասխանել էր, թէ դրա ժամանակը դեռ չէ հասել: Իսկ

ես տեսել եմ, ահա այսօր լրացաւ այն ժամանակը» և իբրև նանից երեք չորս հարիւր այաթով արաբերէն լեզուով մի ճառ արտասանեց, որից Բիշրոյեցին մոլորուած, արձանացած մնաց։ Տանտէրը թողեց հիւրին հանգստանալու, մտաւ կանանոցը, որտեղից մի-երկու ժամ յետո վերադարձաւ Բիշրոյէցիի մօտ, նրա համար մի բաժակ թէյ բերեց, առաջարկեց և սթափեցրեց միւջթէհիդին խորասուզուած մտքերից։ Այս սթափումից յետո խոստովանեց հիւրը, թէ ճշմարիտ որ Սէիդ-Ալի-Մէհմէդը աստուածայայտնութիւն է, որի առաջին դաւանողը, ամենայայտնի քարոզիչը և մարտնչողը դարձաւ, որի համար էլ նրան կանչեցին Բաբ-էլ-բաբ (Դռան-դուռը)։

10. Շիրազի կառավարչապետը՝ Սահաբի Իխթիարը նորաղանդներին սանձելու համար, Բաբի հետևողներից նշանաւորներին կալանաւորեց, մօրուքները կտրել տւեց, պարօշները բացեց, երեսները մրոտեց, էշերի վրա նստացնելով պոչերը ձեռքերը տւած ման ածեց քաղաքի փողոցները, Շիրազի թաղերը, մունետիկների միջոցով խայտառակեց և սպառնաց քաղաքացիներին նոյն խայտառակութեամբ պատժել, ով որ յանդգնի հետևելու աղանդաւորներին։ Բայց այս հալածանքը աւելի բորբոքեց Բաբի հետևողներին, որոնք աւելի գրգռուած՝ էլ համարձակ քարոզեցին Սէիդ-Ալի-Մէհմէդի վարդապետութիւնը։ Իսֆահանի կառավարչապետ՝ Մութէմէդ—Դօվլէն Մանուչէհր խանը, որ ազգով վրացի էր և փոքր հասակից գերուած, ներքինիացած ծառայում էր արքունիքում, իւր մօտ հրաւիրեց Բաբին Շիրազից, որը երկար հակաճառութիւն ունեցաւ Իսֆահանի միւջթէհիդների հետ, բայց որևէ եզրակացութեան չհասան։ Մանուչէհր-խանի մահից յետո, նրա եղբօրորդին՝ Գէորգին-խանը յաջորդելով. մեծ-վէզիրի հրամանի համաձայն կալանաւորեց Սէիդ-Ալի-Մէհմէդին

և ուղղակի ճանապարհեց Թաւրիզ։ Կենդրոնական վարչութեան կարգադրութեան համաձայն, Թաւրիզից էլ մի քանի օր յետոյ ուղարկեցին Մաքու, ուր բանտարկուած մնաց բերդում երկար ժամանակ, Մաքուի իշխան Ալի խանի մօտ, որից անչափ յարգւած էր։ Պարսից կառավարութիւնը կալանաւորեց Բաբին, բայց չկարողացաւ շղթայել, կապկպել նրա քարոզութիւնը, որը հսկայական քայլերով մտնում էր Պարսկաստանի նշանաւոր քաղաքները, աւանները, ժողովուրդը, պաշտօնականները, զօրքը, մինչև անգամ կղերը խոնարհում և հպատակւում էին այն կալանաւորին, որը Մասիսի լանջերից աչքերը յառած դէպի արևելք, այդ ժողովրդի վիճակով էր տոչորւում և գրիչը սրտի արիւնի մէջ թաթախելով, նրանց յորդոր էր գրում սթափւելու իրենց դարևոր լետարգիական քնից։ Բաբի քարոզութեան երրորդ տարին, երբ նրան տարան Մաքուի բերդը, արդէն Եզդ, Քիրման, Իսֆահան, Թէհրան, Րէշտ, Մազանդարան, Ղազուին, Զէնջան, Թաւրիզ անհաւոր հետևողներ ունէր Բաբականութիւնը, այն էլ երկրի հասկացող դասից, նշանաւոր կղերից և Սէիդ Ալի-Մէհմէդի նամակները, բրօշիւրները, գրքերը նրա աշակերտները անխափան Մաքուից տանում էին, տարածում էին Իրանի ամէն կողմը. ամէն տեղ արտագրւում և սփռւում էին ժողովրդի բոլոր խաւերում։ Շատ կարճ ժամանակամիջոց քարոզեց Բաբը, եօթը տարի, որից չորս տարին բանտարկուած էր և այդ եօթը տարուան ընթացքում անչափ գրւածներ թողեց, որոնցից նշանաւորներն են, 1. Բէյանը Արաբի (մեկնութիւն-սուրէի-բէգարա), նոյնը Փարսի, 2. Ահսան էլ Գսաս (պատմութիւնների սքանչելիքը), 3. Թաֆսիրի սուրէի Քէֆսէր (Քէֆսէրի բացատրութիւնը), 4. Դեալայիլ Սէբէա (եօթը փաստեր), 5. նամակներ Հաջի-Միրզա-Աղասի մեծ վէզիրին և ու-

րիշներին, 6. Ղայում-էլ-իսմէա (անունների հաստատութիւնը), 7. Միւթէֆէրիքա (այլ և այլք), 8. Նուրուվէթի-խասսէ (իսկական-մարգարէութիւն), 9. Թաֆսիրի Սուրէի-վկալիէօ (բացատրութիւն) և ուրիշները: Այս գրուածներից մեծ մասը նա Մաքուի բերդում շարադրեց և տարածեց: Այս գրուածները ձեռքէ ձեռք խլում, ընդօրինակում, տարածում էին և ամէն մի պարսիկ իրեն մեծ փառք էր համարում, եթէ կարողանում էր այս նոր մարգարէի գրուածներից մի քանի տող ձեռք բերել, կամ գոնէ պատճէնը գտնել: Ամբողջ Պարսկաստանի քաղաքներում և աւաններում գաղտագողի հաւաքւում էին ներքնատներում ZERZEMIN [զէրզէմի), մեծ հրճւանքով կարդում, բացատրում էին այդ գրուածները և անհասկանալի կէտերի մասին նորանոր մեկնութիւններ էին խնդրում Սէիդ Ալի-Մէհմէդից, որ ամենայն սիրով բոլոր հարցերին պատասխանում և շրջաբերականներով տարածում էր, հետևողների—սիրելիների շրջանում: Բաբը կալանաւորուած էր, բայց նրա գրիչը քարոզում էր ամբողջ երկրում: Որքան խստացնում էին հսկողութիւնը, այնքան շատ սաստկանում էր թղթակցութիւնը:

11. Ինչպէս յայտնի է, Իսլամի հետևողների աշխարհահայեացքով որևէ կրօնական ըէֆորմ, պետական—քաղաքական վերանորոգութեան նշանակութիւն ունի, քանի որ Իսլամի վարդապետարանը—Ղուրանը և հադիսները միւսուլմանների համար մի կրօնաքաղաքական—կանոնական և օրէնսդրական կօդէքս է. մի սահմանադրութիւն է Ալլահից նախասահմանուած ժողովրդի իրար մէջ, համայնքի, կղերի և առաջնորդի մէջ, ընտանեկան, հասարակական, դատաստանական, քրէական, անհատական և ռազմական բոլոր գործողութիւնների համար: Հետևաբար Իրանի բնակիչները այն

յոյսն էին տածում, թէ Բաբի նոր—կոդէքսը պիտի հիմնիվեր տապալէր շիաների շէրիաթը և պիտի հիմնէր մի նորագոյն օրէնսդրութիւն՝ ժամանակի ոգու և կարիքների համեմատ։ Բաբը ասում էր, թէ—«Ինքն է այն դուռը (Բաբ) որից խօսում է ամէնագէտը, Ամենակալը, և երկնային պատուէրները մարդիկներին տրւում է այդ դռնից»: Առաջ նա ասում էր, թէ ինքն է Զարուլգա հեռացածի դուռը, որից նա ստանում է պատգամները, ապա նա քարոզեց, թէ նա ինքն է Զարուլգայից սպասւածը և ապա, թէ Զարուլգան առաքեալ է, իսկ իր մէջ է բնակւում այն գերագոյն հոգին, որ քարոզում է ճշմարտութիւնը և աւետում է աշխարհին շուտով գալիք աստւածայայտնութիւնը։ Այս պատճառով կղերը—շիա մուջթէհիդները կասկածում էին, թէ կարող էին իրենց դիրքը կորցնել, կառավարութիւնը մտածում էր շփոթութիւնների առաջն առնել, երիտասարդ ռէֆորմիստները տենչում էին Բաբիականների ոյժից օգտւել, երկրում վերանորոգութիւն մըտցնել, գրկւած, կեղեքւած, անարգւածները ջանում էին կործանել հին կարգերը, դրանց պահպանողներին ու գործադրողներին, երկրագործը երեւակայում էր օձիքն ազատել անկուշտ խաներից—կալւածատէրերից, ուստի բոլոր դժգոհները, բողոքողները ամէն տեղ շրջապատում էին Բաբի աշակերտներին, և երազում էին երկրից անիրաւութիւնը վերցնել, համաձայն քարոզչի, նոր մարգարէի խոստացած աւետիսներին·

12. Բիշրօյէցին, երբ լսեց Բաբի Մաքու աքսորւելը և բանտարկւելը, նա գնաց Մաքու իւր պաշտելի վարդապետին այցելելու։ Վերադարձին թէև Բաբը նրան յայտնեց իրան պատահելիք փորձանքները, արիւնահեղութիւնները և սպանւելը, բայց Բիշրօյէցին աներկիւղ՝ ընկերակիցների հետ դի-

մեզ Խորասանի։ Ճանապարհին երբ լսեցին Մէհմէդ շահի մահը, վտանգից զերծ մնալու համար մտածեցին մի առժամանակ մնալ Մազանդարան, մինչև Նոր շահի Թաւրիզից Թէհրան համնելը, գահ բարձրանալը, երկրում կարգերի վերահաստատուելը և խաղաղուելը։ Երբ ուզեցին Սարի քաղաքը մըտնել, այնտեղի միւջթէհիդ՝ Սայիդ-իւլ-իւլէման, որ թէ Բիշրոյէցիի և թէ Մոլլա Գուդդուսի մեծ հակառակորդն էր, հրաման ուղարկեց, որ այդ քեաֆիր (հայհոյող) Բաբիները չհամարձակուեն ապականել իրենց քաղաքը։ Քաղաքի դռներում սրանց գնդակներով հալածելիս, Բաբի վարդապետութեան համար առաջին անգամ երեք զոհ ընկան Սարիի պարիսպների տակ, որի պատճառով սուր բարձրացրին Բիշրօյէցին և ընկերները պաշտպանուելու համար և բռնութեամբ քաղաք մտան, Սարգա մէյդանի վրա մի քարվանսարայում ապաստանեցան։ Քարվանսարայի կտրից ազան կարդացող երեք Բաբիներին իրար յետևից դարձեալ գնդակահար արին Սարեցիները, այնպէս որ Բաբիները պարտաւորուած ամրացրին քարվանսարայի դռները, պաշտպանուեցան, որոնց պաշարեցին Սայիդ-իւլ-իւլէմի հետևորդները։ Հինգ-վեց օր տևեց կռիւը, երկու կողմից էլ զոհեր ընկան։ Երբ կառավարչական պաշտօնականները միջամտեցան և ձգտում էին խաղաղացնել, միանգամայն կողոպտել Բաբիներին, Բիշրօյէցին զարկեց սրանեց կառավարութեան ներկայացուցչին, քաղաքում և շրջակայքում ունեցած կրօնակիցների աջակցութեամբ, մօտ 360 հոգի, դուրս եկան Սարիից, գնացին մօտակա Շէյխ-Թէբէրսի աւերակ բերդը մտան, նորոգեցին, ամրացան և ամբողջ ինն ամիս կռւեցան պարսկական բանակների դէմ։

13. Ամբողջ գիւղական ազգաբնակութիւնը, նախապատչարուած դասը անցաւ Բիշրօյէցիի կողմը, ամէնքը ընդունեցին

Բաբի վարդապետութիւնը և ամէն մարդ իւր կարողութեան չափով օգնում էր, թէ բերդի շինութեան, նորոգութեան, ատաղձով, մթերքով, պաշարով, զէնքով, այնպէս որ կառավարութիւնը պարտաւորւած ահաւոր բանակ ուղարկեց Բաբիների դէմ։ Յաճախ կողմերը իրար դէմ յարձակւում, արիւնահեղ կոտորածներ էին անում, Բաբիները դուրս գալով բերդից կոտորում էին հակառակորդներին, ցրւում նրանց ոյժը, կրակ տալիս զօրանոցներին, մթերանոցներին։ Այնքան ծանրացաւ զօրքի ու չիաների վիճակը, որ Սայիդ-իւլ-իւլէման Ջհադ (կրօնական պատերազմ) հրատարակեց։ Բայց զուր, քանի որ պարսիկները երբ տեսնում էին Բաբիների հերոսական կռիւը, մի բուռը մարդիկների այսպիսի աներկիւղ դիմադրութիւնը, իրենց ծանօթների և հարազատների մարմիններից անջատւած և ցիցերի վրա բարձրացրած գլուխները, որոնք տնկած էին Թէբէրսի բերդի շուրջը, յուսահատ վերադառնում էին իրենց բնակարանները։ Այս յարձակումների ժամանակ Բաբիները մտան Բարֆրուշ, աւերեցին, այրեցին Շահզադէի ապարանքը, որի բոցերի մէջ խանձւեցին շահզադէները։ Կառավարութիւնը անճարացած օրից օր աւելացնում էր զօրքի և թնդանօթների թիւը, որոնք գիշեր-ցերեկ ռմբնում էին տապալել Թէբերսի բերդը և Բաբիներին։ Որպէսզի գիշերները հնարաւոր լինի գործելու, զօրքերը կրակ էին տալիս շրջակա անտառներին, որոնց լուսով յարձակւում թշնամիների վրա։ Մի գիշեր Աբբաս-Ղուլի խանը՝ Մազանդարանի զօրքերի հրամանակալը կարողացաւ գնդակահար տապալել Մոլլա Հիւսէյն Բիշրոյէցիին, որին յաջորդեց Մոլլա Գուդդուսը։ Բիշրոյէցիին թաղեցին Շէյխ-Թէբէրսի բերդում, բայց բերդին տիրելուց յետո պարսիկները նրա դիակը հանեցին, մանրեցին և թափեցին շներին։

14. *Պարսիկները* 7000 *զօրքով, թնդանօթներով և ձիաւորներով պաշարել էին Թէքէրսի բերդը, իսկ Բաբիները թէև անզէն, առանց մթերքի, քաղցած, խոնաւութիւնից թուլացած. դարձեալ հերոսաբար դիմադրում էին մինչ այն աստիճան, որ Շահզադա Մէհթի-Ղուլի-Միրզան ընկճուած, գիջաւ դաշնակցելու Բաբիների հետ և պայմանաւորուեց նրանց ազատ թողնելու, անցնել Պարսկաստանի միջով, գնալ Բաղդադ։ Դաշնագիրը գրեցին. Ղուրանով երդուեցին պարսիկները, յանձնեցին Գուդդուսին։ Բաբիները անձնատուր եղան, երբ զէնքը, մթերքը յանձնեցին, երբ պատրաստւում էին ճանապարհ ընկնելու, երբ նստած սեղանի ընթրում էին անզէն ընկճուածները, շիաները—զօրքերը վրա պրծան, գնդակահար արին բոլորին։ Անձնատուր եղած* 350 *մարդուց միայն* 16 *հոգի կարողացան ազատուել, որոնք պատերազմի մանրամասնութիւնները տարածեցին ամբողջ Պարսկաստանում, Շահզադա կառավարչապետը մոլլա Գուդդուսին հազար թումանով ծախեց նրա հակառակորդ մոլլա Սայիդ-իւլ-իւլէմային, որը չարաչար տանջանքով կտրտել տուեց Գուդդուսին իւր թալաբաների ձեռքով և մարմինը թափեցին շների առաջ,* 1849 *թուականի աշնանը։*

15. *Սէիդ-Միրզա Եահեա Դարաբին. Բաբի վարդապետութիւնը ընդունելուց յետոյ, խիստ հալածանքի ենթարկուեց։ Իսֆանից, Եզդից, Շիրազից ամէն տեղից նա պարտաւորուած էր խոյս տալու, այնպէս որ նա մի խուլ անկիւն քաշուեց՝ Նէյրիզ քաղաքը, իւր ընտանիքի մօտ։ Ուր որ գնում էր Եահեան, նրա վրա յարձակւում էին շիա կղերը, որպէս ուրացողի՝ հալածում էին, տանջում էին առանց միջոցների մէջ խտրութիւն դնելու, նոյն իսկ ձգտում էին նրան սպանել, գոյութիւնը ջնջել աշխարհի երեսից։ Հալածուածը կրկնում էր*

ամէն տեղ.—«Չէ՞ որ ես այն միւջթէհիդն եմ, որին ամբողջ Իրանը երկրպագում էր, հրամանները գործադրում, ինչի այժմ ինձ այսպէս հալածում էք, մինչև անգամ չէք թողնում, որ ընտանիքիս մօտ քիչ ժամանակ էլ է խաղաղեմ»: Սէիդ-Եահեան Նէյրիզում բաւական հետևողներ ունէր, այնպէս որ ոչ բնիկ հակառակորդները, ոչ կղերը, ոչ էլ կառավարչական գործակալները չէին յանդգնում նրա վրա ձեռք բարձրացնելու, իսկ ատելութիւնը օրից օր սաստկանում էր, կենտրոնական վարչութիւնը Մազանդարանի արկածներից սարսափած, ուզում էր Բաբիականներին ամէն տեղ բնաջինջ անել: Երբ խռովութիւններին վերջ տալու նպատակով, երկրի կառավարիչը հրաւէր սարքեց, կանչեց տեղական միւջթէհիդներին, ուլէմներին և Սէիդ-Եահեային, որ բացատրեն, պարզեն խնդիրը, վերջ տան քինախնդրութեան և վէճերին: Երբ Սէիդ-Եահեան առանձնացաւ, կառավարիչը նրան կալանաւորեց: Բաբիները երբ լսեցին, թէ իրենց առաջնորդը կառավարչի բնակարանում արգելուած է, իսկոյն շրջապատեցին այդ տունը և ձգտում էին հանել, տանել Եահեային: Ամբոխի աղմուկից և նրանց բազմութիւնից սոսկալով կառավարիչը, երդումով խոստացաւ արձակել բոլորին, այնպէս որ Եահեան պատուիրեց իւրայիններին հրամայել՝ ցրուել, վերադառնալ բնակարանները: Այս նենգութիւնով ժողովրդին ցրուելուց յետոյ, Եահեային գնդակահար արին և գիշերով մէկ մէկ մտան աղանդաւորների տները, գլխաւորներին կալանաւորեցին, սպանեցին, կին, աղջիկ, տղա գերեցին և աւարի առին նրանց գոյքը, կարողութիւնը: Այս բարբարոսական բռնութիւններից սարսափած Բաբիները իրենց ընտանիքով, մանր ու խոշորով ապաստանեցան լեռները, անտառները և այրերը, որտեղերից ամբողջ երկու տարի քաջութեամբ կռուեցան

պարսկական զինուորների և անկուշտ պաշտօնեաների հետ, որոնք կեղեքում, կողոպտում էին պատահածին և զուր զըր-պարտութիւններով տանջում էին նոյն իսկ ոչ Բաբիներին: Պաշտօնեաները և շահ-կղերը զուր մատնութիւններով, զրպարտութիւններով կեղեքում էին ամբողջ նահանգը և ողբաց նում թշուառ ազգաբնակութիւնը:

16. Կռիւն այնտեղ հասաւ, որ կառավարութիւնը տասը հազար զօրք ուղարկեց, թնդանօթներով և հեծելազօրքով, որոնք ռմբակոծում էին ապառաժները, այրելով ու անտառ-ները: Յուսահատութիւնից բորբոքուած Բաբիները անվերջ իջնում էին լեռներից, հարւածում, կոտորում, ցրւում էին զինուորական գնդերը, սրանց վառօդը, զէնքերը, ուտեստը յափշտակելով՝ վերադառնում էին իրենց ապաստանները: Մինչև անգամ պարսիկ զինուորների ձեռքից թնդանօթները խլեցին, լեռները տարան Բաբիները և դրանցով հալածեցին զօրքին: Կռուող Բաբիների թիւը թէև եօթը-ութը հարիւրից աւելի չէր, բայց նրանց սարսափը դողացնում էր բանակի սպարապետ Շահզադա Ֆիրման-Ֆէրմային, որը չէր իմանում, թէ ինչ հնարքով խորտակէ ապստամբներին և նրանց ջնջէ: Բայց և այնպէս քաղցը, ցուրտը, մթերքի պակասութիւնը, կանանց, երեխաների տանջանքը, երկու տարուան անվերջ յոգնածութիւնը, ջրերի կտրումները թուլացրին և ստիպե-ցին Բաբիներին զիջանելու, հաւատալու պարսիկ զօրականին, անձնատուր լինելու իրենց դահիճներին: Հրամանատարը Բա-բինների գլխաւորներին կոտորել տւեց, նշանաւորներին ու-ղարկեց Ֆարսիստանի զանազան քաղաքները և աւանները խայտառակութեամբ տանջելու և սպանելու, երեխաներին, կանանց և աղջիկներին գերի վարեցին Շիրազ դարհուրելի տեսարաններով: Զօրքերը իրենց նիզակների ծայրերին ցցած

տանում էին քաջ Բաբինների գլուխները, կամ նրանց բարուրով երեխաները: Բաբինների դեռահաս աղջիկներն ու կանայք հրապարակով պիտի յագեցնում տային իրենց թշնամիների լպիրշ կրքերին. ․։ Դեռ մինչև այսօր Փարսիստանի բնիկները սարսափում են, երբ նկարագրում է նրանց Բաբինների կեանքից որևէ արկած. դեռ մինչ այսօր Շիրազի բնիկների ականջներից չէ հեռացել այն սրբի, կոծի ձայնը, որոնք բողխել են նրանց ականջներին կէս դար առաջ: Ամբողջ տասը-քսան տարի ամէն մի պարսիկ պաշտօնականի, մոլլայի, թալաբայի համար անսպառ աղբիւր էր Բաբիններին մատնելու և կեղեքելու արհեստը: Ամէն մի սոված, ամէն մի վրէժխնդիր թշուառացնում էր հակառակորդին՝ նրան Բաբի հրատարակելով և ագահ կառավարիչները իրենց անհեռատես ընթացքով քայքայեցին երկիրը:

Եւ որքա՜ն հետամտում էին, որքա՜ն տանջում էին, այնքան բազմանում էին Բաբինները:

17. Բաբի անձնւէր քարոզիչներից և տասնութը աշակերտողներից մէկն էլ Զէնջանցի Մոլլա-Մէհմէդ-Ալի միւջթէհիդն էր, որին անւանում են Հէօջաթ: Սրա հայրը Շէյխ-Ահմէդ-Բահրէյնիի աշակերտներից էր, իսկ ինքը Սէիդ-Քէազիմի և ապա եռանդով մարտնչող Բաբիզմի: Հայր ու որդի մեծահամբաւ տանից էին, ահաւոր հետևողներ ունէին իրենց ծննդավայրում և վիճակում, այնպէս որ Հէօջաթը շատ կարճ միջոցում տարածեց նոր վարդապետութիւնը Զէնջանում: Շէյխի ժողովուրդը այնպէս կապւեց Բաբի եկեղեցու հետ, Հէօջաթի թալաբաները (ուսանող) այնպէս իւրացրին նոր վարդապետութիւնը, որ աներկիւղ ամէն տեղ Սէիդ-Ալի-Մէհմէդին քարոզում էին Մէհդի և դրացիներին հրաւէր էին կարդում յարել իրենց դաւանանքին: Որովհետև քաղաքի ժո-

ղովրդի հասկացող, ապահով դաստակարդը Հէօջաթին էր յառած, միւս կէսը նախանձից անվերջ բողոքներ էին ուղարկում արքունիք, պահանջում էին սանձել նորադարձներին։ Երկու անգամ Հէօջաթը Թէհրան կանչւեցաւ, որտեղ նա աներկիւղ պաշտպանեց իր դաւանանքը և վերջին անգամ բանտից փախաւ ծննդավայրը, Մէհմէդ-Շահի մեռնելուց յետոյ, երբ ժառանգը դեռ չէր հասել մայրաքաղաք։ Բայց Մազանդարանի, Նէյրիզի կռիւների պատճառով տարբեր ընթացք ստացաւ Բաբինների հալածանքը։ Մինչ այս՝ Բաբի քարոզութիւնը, Շէյխի շարունակութիւնը կամ մի նոր աղանդի յաւելումը համարելով, կառավարութիւնը այնքան էլ նշանակութիւն չէր տալիս, բայց երբ նկատեց, որ աղանդաւորները հիմնովին ուզում են փոփոխել երկրի կազմը, կարգերը, որոնց աջակցում էին «Թանզիմաթի» երազողները, կենտրոնական վարչութիւնը տակտիկան հիմնովին փոխեց։

18. 1850 թւականի մայիսին Զէնջանի կառավարիչ Ամիր Ասլան խանը մունետիկով հրաման արձակեց, որ Միւթէշէրիները ջոկւեն Բաբիներից, որով քաղաքը երկու մասի բաժանւեց. դեռ մի կողմը հաւաքւեցան Շիաները, միւսում՝ Բաբիները։ Սոսկալի էր ճգնաժամը, հայրը՝ որդուց, քոյրը՝ եղբօրից, եղբայրը՝ եղբօրից, կինը՝ մարդուց, աղջիկը՝ ծնողներից բաժանւում և իրար հակառակ զինւում էին։ Երբ թշնամական դիրք բռնեց կառավարիչը, Բաբիները մտան իրենց թաղին կից աւերակ «Ալի-Մարդան-խանի» բերդը, իսկոյն նորոգեցին, ամրացրին, փոքրիկ մարտկոցներ շինեցին կառավարչական ուժին դիմադրելու համար։ Այստեղ էլ շիա միւջթէհիդները «Ջհադ» հրատարակեցին, այնպէս որ ամբոխն էլ միացած զօրքին մարտնչում էր իր եղբայր-քոյր Բաբիների դէմ։ Թէև զօրքն ու զօրականները անվերջ բողո-

քում էին, երբ նկատեցին հակառակորդների հերոսական դիմադրութիւնը, թէ չին ցանկանում իրենց հայրազատների դահիճները դառնալ, թէ իրենց հաճելի չէ անմեղների արիւնը թափել և հաւատացեալներին, մարգարէի շառաւիղից սերւածներին Չիմրիի նման կոտորել, բայց կառավարութիւնը փոփոխում էր զօրականներին էլ, զօրքերին էլ, որ ջնջէ նորադանդներին։ Ամէնից դաժան դահիճներ դարձան Գերուսի գնդի զօրականներն ու զօրքերը, որոնք դաժանաբար կոտորում, կողոպտում էին թշւառներին, անխտիր ծերին էլ, մանուկին էլ, էգին էլ, որձին էլ։ Բաբինները համոզուած լինելով, որ պիտի աւարէին իրենց գոյքը, գերի պիտի վարէին իրենց կիներն ու աղջիկները, անխնա պիտի կոտորէին իրենց ամենավերջին զինակրին, միասիրտ, միահոգի, իրար թեւութիկունք դարձած ինն ամիս դիմադրեցին։ Բոլորի գոյքը, մթերքը դիզել—հաւաքել էին մի տեղ, ամէն մարդ օգտւում էր ընդհանուրի հարստութիւնից, ամէն բան հասարակական էր և ամենքը միայն մտածում էին ընդհանուրի շահի և իրենց գաղափարի իրագործման համար, կիներն անգամ չէին ուզում ետ մնալ իրենց այրերից, ոչ միայն պատրաստում էին կռւողների պէտքերը, այլ կարևոր դէպքերում յարձակւում էին թշնամիների վրա։

Ջէնջանի Ժաննա Դ՚Արքը—տղամարդի շորեր հագած և Ռուսթէմ Ալի անունն ընդունած այնպիսի հերոսական կռիւներ մղեց Պարսիկների դէմ, այնպէս անվեհեր կերպով մարտնչում էր շիաների, մանաւանդ Գերուսների դէմ և կոտորում էր նրանց, որ այդ դեւահասո կնոջ երևոյթը սարսափ էր սփռում, շանթահարում էր բոլորին և ցրւում։ Այս քաջասիրտ կինը իր խիզախ յարձակումներով այնպէս էր բորբոքել բանակի զօրականներին, որ թակարդ մտած, մի անգամ

յարձակման ժամանակ, նորան գնդակահար արին։

19. Թէև կառավարութիւնը հետզհետէ զօրքի թիւը հասցրեց երեսուն հազարի. տասնը ինը թնդանօթով, բայց արիաբար մարտնչող Բաբիները անխնա նրանց կոտորում և ցրւում էին։ Բազմաթիւ Ղարադաղցի և Աֆշար ձիաւորներն անգամ երես էին շուռ տալիս, փախչում Բաբիների յուսահատական կռիւներից։ Եօթը-ութը ամսի կռիւը վերջապէս սպառեց Բաբիների ույժը, որոնց թիւը 1800 հոգիից աւելի չէր, իսկ դրանց կիսից աւելին էլ արդէն քաջութեամբ ընկել էր, ահաւոր զոհ տանելով հակառակորդներից։ Իսկ երբ մի ռումբից վիրաւորւեց, մեռաւ Հէօջաթը, բաբիներին թողեց յուսահատութիւնը։ Զէնջանի կառավարիչը և զօրքի հրամանատարը Ղուրանի վրա երդւեցան, կնքեցին և ուղարկեցին Բաբիներին, հաւատացնելով որ կառավարութեան նպատակը Հէօջաթին կալանաւորելն էր, ժողովրդի հետ գործ չունի։ Նրանք երդումով խոստացան, որ ժողովրդին, մարտնչողներին ոչ մի վնաս չեն հասցնի, եթէ անձնատուր լինեն և զէնքերը յանձնեն։ Թէև Բաբիները համոզւած էին, որ շիաները չէին յարգելու իրենց երդումը, բայց անվերջ անձրևների նեղութիւնը, վերահաս ձմեռւա ցուրտը, մթերքի սպառումը, մանուկների մրմունջները նրանց գլորեցին իրենց թշնամու գիրկը, որն անխնա կոտորել տւեց այրերին, յափշտակեցին գոյքի մնացորդը, մինչև անգամ տների ծածկը քանդեցին, տարան, մանուկներին ոտքերի տակ տրորեցին, ծծկերներին սրերի ցցեցին, մանկահաս աղջիկներին, տղաներին, կիներին գերեցին, զարհուրելի տանջանքների ենթարկելով յետո, որբերին, այրիներին և անպէտքներին վարեցին Շիրազ։ Միւջթէհիդի տանը ապաստանած հարիւրաւոր մանկահաս աղջիկներին, կիներին զարհուրելի տանջանքների մատնելով, հա-

գի արժեքաւոր հագուստներն անգամ հանելուց յետո, ցըն-
ցոտիների մէջ պլլած ճանապարհեցին, ցրւեցին...:

20. Մազանդարանի, Նէյրիզի կոտորածներից բորբոքւած Հաջի-Միրզա Աղասին՝ Իրանի սարսափների հրամանակալ վէզիրը հրաման ուղարկեց Թաւրիզ, որ Մաքուից Չէհրիք տեղափոխեն Բաբին, քուրդ բէգերին յանձնեն, խստիւ հսկեն նրան, քանի որ այդ խիզախ քարոզչի ձեռագիրները հասնում էին մինչև անգամ Իրանի շահնշահի պալատը և պղտորում մտքերը: Բայց Բաբի յեղուն, վարքը, քարոզութիւններն ու աւետիսները դիւթում էին շրջապատողներին: Արևելեան բանականների ճնշումներից ընկճւած ամէն մի պաշտօնակալ, թէ տառապեալ հոգւով պաշտում էր այդ վերանորոգչին, որը սէր, միաբանութիւն, համերաշխութիւն, հաւասարութիւն, անկախութիւն, կարեկցութիւն և որ ամենագլխաւորն է ազատութիւն էր քարոզում և հաւատացնում էր, թէ շուտով ամենակալի զօրութիւնը երևալու է աշխարհին, որ հաստատէ կարգերը և գործադրէ այդ բոլորը: Ուրմիի կառավարիչն էլ, Չէհրիքի բերդապահն էլ, զինւորն էլ, ժողովուրդն էլ մեծ հաճոյքով ուզում էին ծառայել այդ մարգարէին, փափագելով օր առաջ հասնել քարոզութեան կատարւածին և գաղտնապէս կարելւոյն չափ նրան օգնում: Բաբի հռչակն հասել էր մինչև Հնդկաստան, որտեղից անգամ այցելուներ էին գալիս նրան տեսութեան, իսկապէս նրա շրթունքից լսելու այդ քարոզները: Բայց կառավարութեան լրտեսների հսկողութիւնն էլ այնքան սաստիկ էր, սոված պաշտօնեաների, մանաւանդ ստորին ծառայողների ընչաքաղցութիւնը այնքան մեծ էր, որ մի անգամ Բաբին այցելող մի հնդիկի, մի դէվրիշի և մի ոէրդի կալանաւորեցին, կողոպտեցին, ծեծի տակ մէկին սպանեցին, միւսներն էլ հազիւ կարողացան ճողոպրել դահիճների

ճանկից։ Հաջի-Միրզա-Աղասին այնքան սարսափում էր Բաբի անունից, որ ամէն պոստի նորանոր հրամաններ էր արձակում Ատրպատականի կուսակալին, Չէհրիքի հրամանակալին, խիստ հսկել Բաբի վրա, նրան կտրել աշխարհից, խզել յարաբերութիւնները։

21. Վերջապէս գործն այնտեղ հասաւ, որ Հաջի-Միրզա-Աղասին մի նոր հրամանագրով հրամայեց Ատրպատականի կուսակալին, Չէհրիքից Թաւրիզ փոխադրել Բաբին և դատաստանի մատնելով գոյութիւնը ջնջել։ Բաբին բերին Թաւրիզ, բայց կառավարութիւնը առանց կղերի միջամտութեան չէր կարող այդպիսի մի նշանաւոր Սէիդի սպանել, իսկ միւթէչարի կղերը ձեռնպահ մնաց, չուզեցան մի այդպիսի անձնաւորութեան դատապարտութեան մասնակցել։ Կուսակալը մնացել էր շւարած, նա անճարացած դիմեց Շէյխի միւջթէհիդներին, որոնք բորբոքել էին. թէ ինչպէս այդ երիտասարդը կարողացել էր իրենց ընկերակից այնքան նշանաւոր իւլէմաների գիւթել և իրեն կողմը դարձնել։ Թաւրիզում Միր-Ալի-Ասկէր Շէյխ-Իւլ-Իսլամը նրան դատի կանչեց իր բնակարանում, որտեղ հաւաքւած էին բոլոր շէյխի իւլէմաները։ Երբ դռնից ներս մտաւ, դահլիճում նրա համար տեղ չէին թողել, այնպէս որ Բաբը պարտաւորւած «Սէլամ»-ը տւեց և նստեց շէմի վրա։ Շէյխ-իւլ Իսլամի հարցերին աներկիւղ պատասխանելով՝ նա կրկնեց, թէ ինքն է այն դուռը, որտեղից աշխարհին պատգամներ է գալիս, ինքն է այն հոգին, որին սպասում են միւսլիմները։ Շէյխ-Իւլ-Իսլամը հրամայեց, որ բերանին-շրթունքներին խփեն և լռեցնեն, բայց ոչ ոք չյանդգնեցաւ պաշտօնակալներից, թէ ֆարրաշներից այդ հրամանը կատարել։ Շէյխ-Իւլ-Իսլամը անճարացած ինքը վեր ելաւ, թակեց և մի սինի կապելով սաստիկ ձողկեց կալանաւորին։

Այնպէս սարսափ էր սփռել, այնպիսի ակնածութիւն ունէին պարսիկները Բաբի մասին, որ ոչ ոք չյանդգնեց Զէյխ-Իւլ-Իսլամին աջակցել, կառավարչական պաշտօնականներն էլ սարսափած նրան ետ ուղարկեցին Չէհրիք։

22. Բաբի հռչակն այնպէս էր տարածուած ամբոխի մէջ, ամբողջ Պարսկաստանում նրա մասին այնպիսի առասպելական պատմութիւններ էր տարածուած, ժողովուրդը այնպիսի հաւատքով էր դիմում և վերաբերւում, որ մարդ դժուար թէ կարողանա հաւատալ, եթէ աչքով չտեսնի և ականջով չլսէ ժողովրդից դրանց մանրամասնութիւնները։ Թէև կենտրոնական վարչութեան կարգադրութեան համաձայն Սէիդ-Ալի-Մէհմէդին ծպտեալ բերին Իսփահանից Թաւրիզ-Մաքու, բայց ամէն տեղ ժողովուրդը նրան ընդառաջ էր դուրս գալիս, հիւանդներ էին բերում, որ բուժէ, ցաւագարների համար աղօթք էին խնդրում և ամէն մարդ կարողացածի չափով աշխատում էր նրան հաճելի դառնալ։ Ոմանք ուտելիք էին բերում, ուրիշը խմելիք, հագնելիք և բոլորն էլ ջանում էին նրան տանող պաշտօնականներին գրաւել, որ արժանաւոր յարգանքով նրան հասցնեն աքսորավայրը։ Քանի՜ քանի՜ անգամ աշխատեցան նրան յափշտակել, պաշտօնեաների ձեռքից ազատել, բայց նա չյօժարեց դիմադրել իշխանութեան, որը նրան տանջանքի էր մատնել։ Դեռ մինչև այսօր Զօրս գիւղում, Մաքուի մօտերքը, շիշերի մէջ պահում են Բաբի երեսը լուացած ջուրը, որը որպէս «հրաշալի-դեղ» տալիս են վտանգաւոր հիւանդներին կաթիլներով։ Տան գանձը, անդրանիկներին այնքան խնամքով չեն պահում, ինչպէս այդ շիշերի ջուրն են պահում, որը տրւում է ամենակարևոր դէպքերում մի մի կաթիլ։ Խոյի մօտերից անցած ժամանակ Բաբին դիմաւորեց մի թշւառ հայր, խնդրելով որ իր մինուճար

հիւանդ աղջկան փրկէ։ Բաբը խղճալով ծերունի հօրը աղօթեց և աղբերակից մի գաւաթ ջուր վերցնելով կէսը խմեց, կէսն էլ տւեց հօրը, որ տանի աղջկան ասելով.—Ես խնդրեցի ամենազթածից, որ օգնէ քո աղջկան, տար այս ջուրը, թող խմէ ու վեր կենա։ Հաւատացնում են, որ աղջիկը գաւաթի ջուրը խմել և ոտքի է ելել անկողնից։ Այսպիսի անթիւ դէպքեր են պատմում, բայց սրանց քարոզութիւնը թէ Բաբից և թէ Բէհայից խստիւ արգելած լինելով բաբիներին, չի կարելի ամբողջութեամբ հաւաքել։ Խոյի միւջթէհիդի՝ Մոլլա-Իսքէնդէրի աղջիկը թոքախտով վարակած մահւան անկողնում տառապած ժամանակը, կողմնակի ճանապարհով դիմում են բերդի բանտարկեալին՝ Բաբին և խնդրում, որ աղօթէ և մի նշան տա աղջկան փրկելու։ Կալանաւորը աղօթում է և ուրիշ բան չունենալով՝ առախչինը (գտակ) տալիս է, որ դնեն աղջկա գլխին։ Աղջիկը առողջանում է, կազդուրւում և դրանից յետո երեսուն երկու տարի ապրելով դառնում է Բաբի եռանդուն քարոզիչը իւր սեռի շրջանում։ Մինչ այսօր որպէս մի նշանաւոր «հրաշալիք» պահում է այդ գըտակը և դրում է ծանր հիւանդներին։ Չէհրիք եղած ժամանակ, խաներից չորս հոգի որոշում են հետը գնալ «Հազրաթի-Սահաբին» (քրդերը այսպէս էին կանչում Բաբին), տեսնելու և ճանապարհ են ընկնում։ Չորս-հինգ փարսախ ճանապարհ կտրելու վարժւած չլինելով, իջնում են մի քարվանսարա հանգստանալու։ Այստեղ նրանք խօսում են, թէ այդքան յոգնածութիւնից յետո, ինչպէս կարող են մնացեալ 3 փարսախ ճանապարհը շարունակել-հասնել Չէհրիք։ Մինչև նրանք թէյերը խմելը, երեք քուրդ են գալիս և չորս ձի բերելով ներկայացնում են ուխտաւորներին և ասում են.— «Հազրաթը—Սահաբը» ղրկեց ձեզ, ասաց, որ դուք հէյրէթ չէք

կարող ոտքով այսչափ ճանապարհ կտրել։ Ուխտաւորները շւարած հեծան ձիերը և գնացին երկրպագելու «Հազրաթը—Սահաբին»։ Բայց հաւաքածներից ամենազարմանալին այս է. մի օր Մաքուի խանը առաւօտ վաղ գնում է տեսնելու իր կալանաւորին, որը բերդում, ապառաժի գլխի զօրանոցում էր բանտարկւած։ Յանկարծ ճանապարհի կիսին զառիվայրի վրա ապշած, անշարժանում է Ալի խանը, երբ նկատում է Սէիդ-Ալի-Մէհմէդին առակի մօտ լւացւելիս։—Մի՛ վախենալ, Ալի—խա՛ն, ասում է Բաբը, ինձնից քեզ վնաս չի կարող հասնել։ Ուզեցի այսօր քեզ ապացուցանել, որ ես ո՛չ քո, ո՛չ էլ քո իշխանաւորի կալանաւորը եմ, այլ այստեղ մնում եմ միայն Տիրոջս կամքը կատարելու համար։ Բարձրացիր բերդը և պիտի համոզւիս»։ Ալի-խանը դողալով բարձրանում է, տեսնում է, որ զինւորները նստած են պահականոցի առաջը, փականքով էլ կապւած է Բաբի բանտի դուռը։ Զինւորները բացում են դուռը և մնում են շւարած։

Համանման արկածներից և բժշկութիւններից Սէիդ—Միրզա—Մէհթին արձանագրում է երեք հազար դէպք և ներկայացնում է Բաբին բանտում։ Կալանաւորը հրամայում է մէկ մէկ բոլորը կարդալ։ Երբ Սէիդ-Մէհթին աւարտում է ընթերցումը, ասում է։

—Ափսո՛ս, շա՛տ ես տանջւել, ինչքա՛ն ես յոգնել, մինչև այդ բոլորը հաւաքել ու արձանագրել ես։ Բայց ցաւում եմ, որ քեզ մեծ տհաճութիւն պիտի պատճառեմ։ Տա՛ր, այդ բոլոր գրածդ լւա՛, դրանից հետքն անգամ չմնա այդ թղթի վրա։ Ես հրաշք գործելու ո՛չ իրաւունք ունիմ, ո՛չ էլ կարողութիւն, այդ բոլորը Տիրոջ ողորմութեամբ կատարւած դէպքեր են։ Այդպիսի գրւածները և պատմւածները ընթերցողներին և հաւատացեալներին կարող են մոլորութիւնների մէջ գցել և

տարակուսանքներ առաջացնել, գայթակղեցնել։ Իմ իրաւունքս միայն շրթունքներիցս թռած խօսքն է, Աստուծու բանն է. իսկ հետեւորդներս պիտի հաւատան քարոզութեանս միմիայն գրչիցս արտադրուածներով։ Հրաշքի դարն անցաւ, մտքի դարը պիտի թագաւորէ, գաղափարը պիտի յաղթանակէ։ Այնպէս մաքուր լւա այդ գիրքդ, որ թուղթը գոնէ քեզ պէտք գայ։

23. Նասր-էդդինի շահը գահ բարձրանալուց յետոյ, երկրի շփոթութիւնները դադարեցնելու նպատակով, խիստ հրաման ուղարկեց Թաւրիզ յատուկ պաշտօնակալներով, որպէս զի դատեն և մահուան դատապարտելով վերջ տան Բաբի քարոզութիւններին, որը տարւան ընթացքում այնքան կոտորածների, ծախսերի և խռովութիւնների պատճառ էր դարձել։ Բաբին կրկին Թաւրիզ բերին։ Միւթէշարի կղերը յամառած շուզեցին կառավարութեան ձեռքին գործիք դառնալ և Ալիի ու Ֆաթիմէի սերնդից շառաւիղած այդ քարոզչին մահի ենթարկել։ Ատրպատականի կուսակալ Շահզադա-Համզա Միրզան Պիղատոսի նման ձեռները լւաց, կրկնելով թէ.—«Ինքը ոչ մի յանցանք չի տեսնում այդ մարդու ընթացքի մէջ»։ Շէյխի կղերի աւագագոյնը՝ Մամաղանցի Մոլլա-Մէհմէդը, որպէս զի հաճոյանայ կառավարութեան, միւթէշէրիների հալածանքից ազատուի, կառավարութեան հաւատարմութեան և համարումին արժանանալով որոշ գիրք ստեղծի իր և հետևորդների համար, վճիռ տուեց, թէ «Սէիդ-Ալի-Մէհմէդը, որ ժողովրդից պահանջում է իրեն Մէհդի դաւանել, ճշմարտութեան դուռ ընդունել. իր գրքին հետևել. խօսած այդ սուտերի և հայհոյութեան համար մահապարտ է, սպանութեան արժանի»։

1850 թուականի յուլիսի 27-ին (28 Շաբան 1266 թ.) կէսօրից առաջ Թաւրիզի Ջաբախանայում Բաբին և նորա աշակերտին Միրզա-Մէհմէդ-Ալի Թաբրիզցիին պատից շւանով կապ

կպած կախեցին. վերևը Սէիդ-Ալի-Մէհմէդին, սրա ոտքերի տակ աշակերտին: Ասորի գնդից արձակուած գնդակներից ոչ մէկը չդիպաւ սրանց մարմնին, այլ չուանները կտրտելով վար ընկան: Դահիճները մօտեցան մի քանի հարուած տւին և գլխի կանաչ ապարօշը վար գլորեցին ասելով. Թէ—«Այս ապարօշները (սէիդական) փրկեցին ձեր կեանքը և կրկին կապեցին երկուսին էլ, կախեցին նոյն պատից: Խասսա գնդի զինուորներին հրամայեցին կրակել, որոնց գնդակներից երեքը խրուեցան Բաբի սիրտը, մի քանիսն էլ աշակերտի կուրծքը, ընկան գետին՝ քարոզութեան եօթներորդ տարում: Նոյն իրիկունը Ռուսական կօնսուլը՝ Խանիկովը դիակներից (ակւարել) ջրանկարեց սպանուածների պատկերը:

24. Երկու օր դիակները մնացին հրապարակում և երկրորդ գիշերը պալատական սննեկապան Հաջի Սուլէյման խանի օգնութեամբ Բաբի հետևողները նրանց դիակները վերցրին, յատուկ սնդուկների մէջ ամփոփեցին և հեռացրին քաղաքից: Այդ սնդուկները ապահովութեան համար երկար ժամանակ պահուեցան Իրանի զանազան քաղաքներում և աւաններում, վերջապէս 1900 թ. փոխադրեցին Աքքա, ուր թաղեցին Կարմէլ լեռան լանջին, յատկապէս նրա համար կառուցուած տաճարում, որը դեռ աւարտած չէ: Բաբի հետ կալանաւորուած նրա միւս երկու աշակերտները, որ իրենց վարդապետի յատուկ հրամանի համաձայն նրան ուրացել էին դատաւորների առաջ, ազատուեցան կապանքներից և իրենց օրէնսդրի գրուածների սնդուկները, իրենց բովանդակած կարեւոր թղթերով և գրուածներով, նրանց տուած յատուկ հրամանի համաձայն տարան Թէհրան յանձնեցին Բէհային: Այս թղթերը ապա փոխադրուեցան Բաղդադ, այնտեղից Կ. Պօլիս, Ադրիանապօլիս և Աքքա: Բէհայի փոքր եղբայրը Կիպրոս

աքսորուած ժամանակ եղբօրից պահանջեց այդ Թղթերը: Բէհան հրամայից արկղները բոլոր պարագաներով յանձնել եղբօրը՝ Եղէլեի պատգամաւորին, որոնք տարան Կիպրոս, որտեղ և մինչև այսօր պահւում է: Բաբի շրթները դադարեցին քարոզելուց, նրա մատներից ընկաւ գրիչը, բայց այս գրածները ցրւելով Իրանի և Թուրանի ամէն կողմը, նրա սպանութիւնից յետո, աւելի մեծ Թւով հետևորդներ գտան, որոնք սփռւած ամէն կողմը, մահւան դէմ կռւելով տարածեցին իրենց վարդապետութեան Թագաւորութիւնը ճնշւածների, Թշւառացածների և դառնացածների շրջանում:

25. Սէիդ-Ալի-Մէհմէդը՝ Բաբը մելանխօլիք բնաւորութիւն ունէր. նա անչափ սրամիտ և սաստիկ խորաքննին տեսողութիւն ունէր: Պատմում էր մայրը, քեռին, որ նա Սոկրատի նման առանձնացած, ժամերով հայեացքը մի կէտի վրա յառած մտածում էր անԹարԹ, անշարժ և յանկարծակի սԹափւելիս, չէր էլ զգում, Թէ ինքը ժամերով անզգա վիճակ է ունեցել: Մանուկ հասակից նա ենԹակա է եղել այսպիսի խորասուզումների և անվերջ, մինչև կեանքի վերջը, շարունակել է այս մտազբաղումները, երևակայութեամբ մի տար աշխարհ տեղափոխւած: Երկար ժամանակ նա մաքով Թափառել է գտնելու, տեսնելու այն աշխարհը, ուր իբր ժամանակով առանձնացել է, ապրում է, ըստ շիական վարդապետութեան, իրենց վերջին իմամ Մէհթին, որտեղից վերադառնալու է ահաւոր ահրունդով: Ինչպէս երևում է Քէրբէլայի ախտագնացութիւնը, Հաջի—Սէիդ—Քեազիմ Միւջթէհիդը, որա աշակերտների հետ ծանօթութիւնը շատ բարերար ներգործութիւն է ունեցել Բաբի մտաւոր աշխարհի վրա, որը առասպելական—վերացական աշխարհից անդրադարձել է բնական աշխարհը: Աւելի ևս գրականապէս փոխեց Բաբի աշխար-

հայեացքը Մէքքէի Սև-քարի ուխտից դառնալուց յետոյ, այնպէս որ՝ նա որոշեց Իսլամի պարզութիւնից նախապաշարումների և մարդապաշտութիւնների մէջ խրւած ժողովրդին իր անզգայութիւնից սթափեցնել և մի զարկ տալ դէպի առաջադիմութիւն։ Նա իր այս կոչումի մասին մեծ հաւատ ունէր, նա համոզւած էր. որ ինքը աշխարհ էր եկել, որ մարդկութիւնը սթափեցնէ և առաջնորդէ այն երանելի խաղաղութեան վայրը, որին ձգտել և չեն հասել նախորդ մարգարէներն ու առաքեալները և մեծ յոյսով սկսեց քարոզութիւնները, որը անչափ աջողութիւնով առաջ տարաւ։ Անչափ փաստեր կան, որ Բաբը իր խօսակցի, ընկերակցի մտքերը կարդալու և յայտնելու մեծ ընդունակութիւն ունէր, մանաւանդ դիւթելու, կաշկանդելու։ Այս բնատուր կարողութիւնը Աստուածային շնորհի մի հիւլէն համարելով,(Նուգդէի-Ուլահը) Աստուածութեան մի կէտը դաւանելով, նա վստահ քարոզեց և նրան դաւանեցին հազարաւորներ։ Բաբ-էլ-Բաբ Բէշրօյեցին երբ երեք չորս օր կաշկանդուեց, չկարողացաւ մզկիթում շուրթերը շարժել և դաս—քարոզ խօսել, նա մինչև մահ այդ պարագան բացատրում էր. թէ մզկիթում իրենից բարձր հասկացողի, մտածողի և բացատրողի ներկայութիւնը նրան կարկամեցրել էր։ Բաբի ազդու խօսքը այնքան մեծ հաւատ էր ներշնչում, որ նրա հետ վիճող իւլէմները ոչ միայն անպայման դաւանում էին նրա աստուածայայտնութիւնը, այլ մինչև անգամ բուժւում էին իրենց ախտերից։ Այնքան վստահ և ուժեղ կամք ունէր Բաբը, որ նրա առաջ ընկճւեցին, լռեցին ամենանշանաւոր գիտնական պարսիկները, նրան դաշնեցին իր դարի մտքի ու գրչի ներկայացուցիչ հայրենակիցները Եփրատից մինչև Գանգէս։ Նրա հայեացքը այնքան զօրաւոր էր, որ կաշկանդել էր պարսկական ամենախիզախ մեծամեծ-

ներին, որոնք իսպառ մերժեցին Հաջի-Միրզա-Աղասիի—մեծ վէզիրի հրամանները և շյանգքնեցան ձեռք բարձրացնելու անձերի վրա։ Նա մի հայեացքով այնպէս դիւթեց արքունի սենեկապան Սիւլէյման խանին, որ նա իւր պաշտելի Բաբին չուրանալու համար, աներեւակայելի քաջութեամբ մահի հետ կռուեցաւ։ Բայց այս պարագաները դեռ ևս աւելի խոր ուսումնասիրութեան կարօտ լինելով, մենք չենք համարձակւում պնդելու, թողնելով ապագային նրանց ուսումնասիրութիւնը, մեր պատմութեան շարունակութեանն անցնենք։

26. Թէև Բաբը մեռաւ, բայց բաբիների գլխից օրէցօր նորանոր փորձանքներն անպակաս էր և ամբողջ Պարսկաստանում ամէն մի չարագործութեան հեղինակն ու դարանագործը բաբիներն էին համարւում, կաշառակուրծ պաշտօնակալների, որոց կցերի համար սրանից աւելի նպաստաւոր առիթ չէր կարող լինել։ Ամէն ոճիր, ամէն յանցանք Ներոնի նման վերագրում էին նորադաւաններին և օրէցօր տանջանքները, դաժանութիւնները սաստկացնում։ Հաջի-Մէիր-Քեազիմ Միւջթէհիդի ամենանշանաւոր աշակերտուհին էր Զահրէ խանումը որին շէյխիների վարդապետը «Նուրէթ-ուլ-էյն» (աչքի լոյս) տիտղոսն էր տւել, նրա անչափ տաղանդի, սուր յիշողութեան և պայծառ դատողութեան ու տեսութեան համար։ Զահրէ խանումը իւր գիտութիւնով և աստուածաբանական մեկնութիւններով ամբողջ շիա կղերի համբաւն էր վայելում, ինչպէս Իրանում, նոյնպէս Իրակ-Արաբում։ Հետեւելով իւր բարունապետին նա աստուածաբանական լէկցիաներ էր կարդում Քէրբէլայում հարիւրաւոր ունկնդիր ուսանողներին (թալաբա), որի համար վերջինների երկրպագութեանն էր արժանացած։ Զահրէ-խանումը գրաւած համբաւի, դիրքի պատճառով մտանել էր և Օսմանեան բ. Դռնից հրաման էր

արձակել, նորան պետութեան սահմաններից հեռացնելու։

Երբ Զահրէ-խանումը Քէրբէլայից Թէհրան էր գնում լէկցիաները շարունակելու, նորա հայրը՝ Մոլլա-Սալէհ-Ղազվինի միւջթէհիդը չթողեց, որ աղջիկը ուղղակի նպատակին դիմէ, ճանապարհից տուն դարձրեց։ Հայրական յարկի տակ, Զահրէ խանումը անվերջ ընդհարւում էր հօր, հօրեղբօր և եղբայրների հետ, որոնք բոլորը մոլի միւթէշէրի էին. իսկ ինքը միակ չէյխի։ Նա, որ ամուսնացած էր մանուկ հասակից հօրեղբօր որդու հետ, չէր սիրում, չէր համակրում ամուսնին և բաժան էին ապրում. Այս վիճակում հայրական յարկը դժոխքից ծանր ներգործութիւն ունէր նորա հոգու վրա, որի մտքի թռիչքները սաւառնում էին լեռների ամպերի վրայով...։ Այս տխրութեան օրերին Զահրէի մխիթարութիւնը միայն ընթերցանութեան մէջն էր, նա ընթերցանութեան նիւթ շատ էր ստանում իւր ընկերակիցներից. աշակերտներից և համակրողներից, որոնք սփռուած էին Իրանում, Թուրանում և Տիգրիսի ափերի սրբավայրերում։ Այս գրութիւններով նա ծանօթացաւ Բաբի վարդապետութեան հետ, ձեռք բերեց նորա բոլոր գրութիւնները, ուսումնասիրեց և դարձաւ Բաբի անձնուէր երկրպագողը։ Զահրէ խանումը տեսել էր Քէրբէլայում այդ երիտասարդ քարոզչին, բայց այնքան չէին մտերմացել։ Երբ Բիշրոյէցին Մազանդարանից գնում էր Շիրազ Բաբին այցելելու, Զահրէ-խանումը նրան յանձնեց իւր գրաւոր դաւանանքը, որ տանի հասցնի նոր մարգարէին և ինքը սկսեց եռանդով քարոզել Բաբի վարդապետութիւնը։ Նա շուտով նամակի պատասխանը Բաբից ստացաւ, որով նորա անունը փոխում «Թահիրէ» (Մաքրուհի-ճոխուհի) է կանչում, որից յետոյ այնպէս մտերմացան, որ չարունակ թղթակցում էին։ Թահիրէի գրութիւնները, մանա-

ւանդ չափական բանաստեղծական երկերը մինչև այսօր մեծ հաճոյքով կարդում են ոչ միայն Բաբինները, նոյն իսկ շիաները, նրանք հիպնոսում են ընթերցողին, սքանչացնում և նրան մաքով երկրային դրախտն առաջնորդում։

27. Այս քարոզութիւնները Թահիրէի արիւնակիցների հետ ունեցած յարաբերութիւնը բոլորովին լարեցին այնպէս որ նրանք բորբոքուած հերոսուհիի դէմ, այնպէս ոխակալած նրան հայհոյում էին որ թշւառ Թահիրէն չէր իմանում ինչ հնարքով գլուխը փրկել հայրական որջից։ Թահիրէի հայրը այնպէս էր բորբոքուած աղջկա դէմ, որ ամէն առթիւ կըրկնում էր.—Մինթէ քո աստիճանդ այդտեղ է, որ դու, քո այդ հասկացողութեամբ ու կատարելութեամբ այնքան ստորանաս, որ գնաս խաբուես մի տգէտի լեզուից, նրան գերագոյն յայտնութիւն դաւանես, խոստովանես, որ նա նախասահմանուած Մէհթին է.։ Այդ դու ոչքան մտքով կուրացար, որ խոր անդունդը գլորւեցար։ Եթէ դու ինքդ մարգարէանալու ձգտէիր, քո անձը Մէհթի հրատարակէիր, ես խոնարհած քեզ երկրպագութեան կգայի սիրով և քո մունետիկը կդառնայի, աշխարհին կքարոզէի քո մաքերը։ Իսկ դու, առանց աստիճանդ կշռելու, երկրպագում ես մի տգէտ ստախօսի, զրպարտչի, որը քո աշակերտների ձեռքերին ջուր տալու արժանաւորութիւն չունի։

Այդ միջոցներին մի օր քարոզի մէջ Մոլլա-Թաղին, Թահիրէի հօրեղբայր—սկեսարը հայհոյեց յայտնի Շէյխ Ահմէդ Բահրէյնին։ Քարոզին ներկա է լինում մի Շիրազցի որ առանձնութեան մէջ բացատրութիւն է պահանջում հայհոյողից։ Երբ վերջինս առանց բացատրութեան կրկին հայհոյեց, Շիրազցի երիտասարդը դարան մտնելով սպանեց Մօլլա-Թաղիին։ Չարագործութիւնը վերագրելով Թահիրէին ու նորա մտե-

րիմ երեք մոլլայքն, Ղազվինի դատաւորին սոփեստին որանց կալանաւորել, տանջելով խոստովանեցնել: Ոճրագործը նկատելով, որ իւր փոխարէն անմեղներին են տանջում, ներկայանում է դատաւորին, անձնատուր է լինում, խոստովանելով մեղքը, փաստերով էլ ապացուցանում է, թէ ինքն է չարագործը և բացատրում է պատճառները: Ղազվինի կառավարիչը միւջթէհիդի և մեռնողի որդիների թախանձանքից ստիպւած ոճրագործին, Թահիրէի և երեք մտերիմ իւլէմների հետ ուղարկում է Թէհրան, Հաջի-Միրզա-Աղասի վէզիրին: Այդտեղ չարագործը բանտից փախչում է, երեք իւլէմները զոհ են գնում զրպարտողների մեքենայութիւններին, քանի որ չեն դիջանում Բաբին ուրանալ, իսկ Թահիրէին յանձնում են Քալանթար—թաղապետին իւր տան մէջ արգիլելու:

28. Թահիրէն իւր քարոզութիւններով այնպէս համբաւ վաստակեց, որ ամբողջ Թէհրանի մաքի և գրչի ներկայացուցիչները, նշանաւոր պաշտօնականները հիանում ու յափշտակւում էին նորա տաղանդով: Թահիրէն հետեւելով Բաբին՝ քարոզում էր միակնութիւն, հաւասարութիւն երկու սեռի մէջ, քօղի ջնջում, սիրո ամուսնութիւն, կրքերի սանձում, ազգերի, ցեղերի, կրօնների անխտրութիւն և եղբայրութիւն համայն մարդկութեան: Նա առաջինն էր, որ եղծեց ծոմը, աւելորդ ծէսերը, օրական հինգ անգամի աղօթքը, աւելորդապաշտութիւնները, որոնք գոյութիւն ունեն իսլամի վարդապետութիւնով և քարոզեց համարձակ իրեն հետեւել: Նա որ մի ժամանակ Քէրբէլայում վարագոյրի ետեւից էր խօսում իւր ճառերը թալաբաններին, քօղն ու չարսաւը պատառելով համարձակ բարձրանում էր ամբիոն, հերարձակ և բաց կրծքով, քարոզում էր հաւաքուած երկսեռ Բաբիներին իւր խրոխտ և հուժկու սրտով, ազդու ոճով, քաղցր ձայնով և գրաւիչ չար-

ժողովներով, որ սթափուին դարաւոր քնածութիւնից, պատ-առեն խաւարի վարագոյրը և դիմեն յառաջադիմութեան։ Նա առանց յոգնելու ժամերով խօսում էր, համեմելով իւր քարոզները սեփական բանաստեղծական ոտանաւորներով, որոնք այնտեղ անգիր էին անում, գրի անցնում և տարածում։ Իսկ ունկնդիրները հիացմունքից արձանացած, առանց ծպտունի, ջանում էին լսել, ըմբռնել և իւրացնել այդ լոյսի քարոզչու-հու գաղափարները։ Դարեր և անչափ դարեր էր անցել Արի-ական աշխարհի վրայից, մարդիկ կնոջ դէմքը միայն կանա-նոցում էին տեսել և յանկարծ բեմի վրայից Թահիրէի նման մի շքնաղից, բայց աւելի սքանչելի ճարտասանի խօսքերից ու մտքերից թովուած, կեանքերը վտանգի մատնած շրջա-պատում էին նորան, որպէսզի իրենց հոգեկան ծարաւը յա-գեցնեն, մխիթարուին և յուսադրուին մի այնպիսի երանելի ապագայով, որը նրանց անչափ մօտ էր թւում։ Բայց տա-րաբաղդաբար երկու տարի էլ չանցած Թահիրէի քարոզութիւն-ները, յանկարծ մթնեց Թէհրանի հորիզոնը և զարհուրելի տեսարանները ահաբեկեցին ու ցրուեցին այս ժողովներին յաճախողներից շատերին։

29. Բաբի չարաչար նահատակութիւնից անչափ բորբո-քուած ու զգածուած նրա ծառան, Իսկուեցի մի թուրք՝ Սադըղ անունով, վրէժխնդիր եղաւ և Թէհրանում Նասրէդդին Շահի վրայ ատրճանակ արձակեց 1852 թ.։ Թէև շահը թեթև վնասուեց, քանի որ ցնորամիտ Սադըղը միայն գնդիկներով ու վառօդով էր լցրել իւր ատրճանակը, բայց երբ ըմբռնեցին, որ չարագործը Բաբի է և վրէժխնդրութեան հոգով էր կա-տարել այդ ոճիրը, սկսեցին սարսափելի կերպով հալածել նորադաւաններին։ Այս միջոցին մի ինչ որ խոհարարի քաշալ-աշկերտի մատնութիւններով ու ցուցումներով Թէհրանի ոս-

տիկանութիւնը սկսեց կալանաւորել պատահած մարդուն և լքցրին բանտերը։ Մայրաքաղաքի խորքերը, ներքնատները թագնուած Բաբիներին խումբ խումբ կալանաւորում և տանջում էին, որ խոստովանեն ու մատնեն իրենց առաջնորդներին։ Տանջանքից ազատւում էին միայն նրանք, որոնք հայհոյում էին Բաբին և նրա վարդապետութիւնը, կամ նրանք, որոնք լցնում էին դահիճների դատաւորների գրպանները, իսկ մնացեալներին ենթարկում էին զարհուրելի տանջանքների։ Առաջին օրերին մի ժողովում ձերբակալուած 38 հոգուց միայն եօթը մարդ չուրացան Բաբին ու հաստատ մնացին իրենց դաւանանքի վրայ, մերժելով թախանձանք, խոստում, սպառնալիք, հերոսաբար վզերը մեկնեցին դահիճներին։ Սրանցից մին Բաբի խնամակալ քեռին՝ Սէիդ Ալին էր, 70 տարեկան ալեոր, որին ազատելու համար թէև 300 թուման խոստացան շատ վաճառականները, որպէսզի Սէիդի արիւնը չըմնայ իրենց վզին, բայց որովհետև հաստատամիտ ծերուկը չուրացաւ հաւատքը, զարհուրելի տանջանքով գլխատուեցաւ։ Երկրորդը Թուրշիզի միջթէհիդն էր, երրորդը Ղումի միջթէհիդը, չորրորդը Քիրմանի միջթէհիդը, հինգերորդը մայրթագուհիի աղօթարարը, վեցերորդը Թաւրիզեցի յայտնի վաճառական, որոնք բոլորը հերոսաբար զոհուեցան իրենց գաղափարի համար։ Եօթներորդը մի դեռահաս և շատ գեղեցիկ երիտասարդ էր, Մարաղայի սէիդ, որին ինչ խոստումներ արին, փող, թոշակ, պաշտօն, պալատի մինիստրի աղջիկը, բայց չկարողացան համոզել, նա անվրդով կարդաց Բաբի անունը, նրա աղօթքը և ուրախութեամբ գլուխը յանձնեց դահիճին։

30. Զարհուրելի, արևելքին յատուկ ինկվիզիցիական տանջանքներ տուին Հաջի Սուլէյման խանին։ Երբ այս պա-

յատական սենեկապանը համարձակ խոստովանեց իր դաւանանքը, հերոսաբար արհամարհեց դահիճների սպառնալիքը, ծաղրեց բռնութեան ոյժը, հակառակորդների զօրութիւնը, առարկեց, թէ ոչ ոք իրաւունք չունի բռնանալու իր հոգեկան զգացումների, կրօնական հայեացքների դէմ, նրան մերկացրին, ձաղկեցին, մրոտեցին ամբողջ մարմինը, ծակոտեցին խշտիկներով մկանները, ծակերի մէջ մոմեր խրեցին և վառեցին, իշի վրայ նստեցրած Թէհրանի փողոցներում մանածեցին, մունետիկով և դահոլ-զուռնայով։ Այս հրէշային տանջանքներին մատնուած Հաջի Սուլէյման խանը առանց հառաչելու, առանց տրտնջալու, առանց վհատելու, սոսկալու առաջ էր գնում, երբեմն երբեմն իշից ցած գալով, մարմնից վար թափուած մոմերը կրկին խրում էր մսի մէջ արիւնժեռ վէրքերում, պարելով, ցատկոտելով անցնում հրապարակները հարսանեկան թափօրի նման հրճուանքով ու բերկրալի։ Ամբողջ Թէհրանը փողոցները դուրս թափուած դիտում էր տեսարանը, մարդիկ չէին ըմբռնում, թէ ի՛նչն էր ստիպում Հաջի-Սուլէման-խանին արհամարհել փառքը, հարստութիւնը, կարողութիւնը, աստիճանը, դիրքը, թոշակը, ընտանիքը և զաւակները, և յանձն առնել այս դարհուրելի կսկիծներն ու մորմոքները, մի ինչոր նոր վարդապետի զառանցանքների համար։ Վերջապէս Հաջի-Սուլէյման խանը ինքը համարձակ պարզեց իր թևերը, սրունքները դահիճներին, որոնք անգութ սպանդների նման մաս մաս կտրտեցին-թափեցին նրա անդամները և ապա կտրտեցին գլուխը...։

Հաջի-Սուլէյման-խանի ընթացքը օրինակելի դարձաւ Բաբիներին, որոնք աւելի անվեհեր անձնատուր էին լինում գաղափարի կռուին։

Այս տխուր օրերին շահի յատուկ հրամանով դահիճները

ներկայացան Թահիրէին խեղդելու: Հերոսուհին առանց տա-տանելու դահճից շուանը առաւ, հանգուստեց, գցեց վիզը և ծայրերը նրբանցքում սպասող դահիճներին տալով հրամա-յեց որ քաշեն...... մինչև որ խեղդուած թաւալուեց...:

31. Մի ուրիշ խմբի Բաբիներին, մօտ 370 հոգու, դա-տաւորները բաժանեցին Թէհրանի ժողովրդին՝ էսնաֆի ամեն մի դասին, մսագործներին, դարբիններին, դերձակներին հիւսներինը, սափրիչներին, բաղնեպաններին, որմնադիր-ներին, քանքաններին, բէզազներին, սեղանաւորներին, ոսկե-րիչներին, ածխավաճառներին, կազմարարներին, ներկարար-ներին, մոլլաներին, թալաբաններին, ֆարաշներին, ներքինի-ներին, մինչև անգամ պալատական աղախիններին, որպէսզի ամէն մի արհեստաւորի դասը խորհուրդ անեն իրենց մէջ, իրենց արհեստին յատուկ գործիքներով տանջանքներ խորհեն, տանջեն, չարչարեն և սպանեն այդ ուրացողներին: Ամբողջ մի շաբաթ Թէհրանի թաղերին տիրել էր վայնասունը, փո-ղոցները ողողուել էր անմեղների արիւնով, ապականութեան հոտը ամբողջ ամսով շշմեցրել էր ամբոխին, դահիճները ու-ժասպառ էին եղել, իսկ Բաբիները նորանոր ոգեւորութեամբ շարունակում էին իրենց քարոզութիւնները, դահիճներին վը-զերը պարզելով...: Այն պարսիկները, որոնց համար մարդա-սպանութիւնից մեծ ոճիր չկայ աշխարհում, որոնք մարդու մահուան պատճառ դարձողին, դահիճներին և մարդասպան-ներին «պոռնկորդի» են կանչում, բթացել էին, զգացմունք-ները քարացել էին, չէին խնայում ո՛չ ծերին, ո՛չ մանուկին, ո՛չ արուին, ո՛չ էգին, ո՛չ էլ բալուլի ծծկերին, հարազատին թէ խորթին, հեղեղում էին. արիւնը հոսեցնու՝ շատրուանի նման և հրճւում...: Իսկ թէ ինչպէս էին կեղեքում, կտրա-տում Բաբիներին, կամ որպէս Բաբի մատնուածներին, չի կարելի նկարագրել...:

# ԲԱԲԻ ԿԱՄ ԲԵՀԱՅԻ

## Բ. ԲԵՀԱ

32. Նահանգական վարչութիւններից ամէն օր նորանոր խումբեր էին հասնում Թէհրան, ամէն մի կառավարիչ, պաշտօնական, փարաշ շատ ընդարձակ արտօնութիւններով էր օգտւում կալանաւորելու, կողոպտելու, տանջելու իրաւունքից և վայն ու կոծը տարածել էին Իրանի ամէն կողմը։ Այս կալանաւորների խմբերի հետ Աֆչէ գիւղից Ճիմրան ամառանոցի բանակն հասաւ նախկին վէզիրի Մալիէ (ֆինանսի-մինիստրը) Աղա-Բուզուրգի-Աբասի երկրորդ որդին՝ Միրզա Հիւսէին-Ալին, որն ամբողջ Թէհրանի նորաղանդներին յայտնի էր, որպէս Բաբի նախանձախնդիր հետևող։ Աղա Բուզուրգը Մազանդարանի Նուր գիւղիցն էր, որը գտնւում է Դիմաւէնդի լանջերի վրայ և այս կալուածքը ժառանգել էր ծնողներից։ Տոհմով սրանք ազնուական էին, անուանի գերդաստան ամբողջ Պարսկաստանում։ Աղա Բուզուրգը Զիլլ-Սուլթանի ապստամբութեան և Ռուսաստան փախուստեան ժամանակ ընկերակցելով, վերջը անցել էր Տաճկաստան և Բաղդադ էր ապաստանել, որտեղ էլ մեռաւ։ Թէբէրսի կռուի ժամանակ, երբ Բաբիները խմբով գնում էին Բարֆրուշից Բարէշ-բարին

օգնելու, Հիւսէյն-Ալին առաջին անգամ այնտեղ դարձել կալանաւորուած էր, բայց շնորհիւ իւր ծագման ազատ էր թողնուած։ Իսկ այս անգամ արդէն գիրքն ու տոհմը նրան չէին փրկել խստապահանջ և ընչաքաղց դահիճների ճանկից, որին Շիմրանում քննելուց յետոյ, տարին և Թէհրանում գլորեցին արքունի խոնաւ զնդանը։

Երբ ամէն կողմ կալանաւորումներն սկսուել էին, Հիւսէյն-Ալիի փոքր եղբայրը՝ Միրզա Եահեան, որին Բաբը «Սուփ-էզ-էլ» էր անուանել, որը մեծացել էր մեծ եղբօր հովանու տակ և նրա հետ յաճախել էր միշտ Բաբիական ժողովներն ու միտինգները, դէրվիշի տարազ հագաւ, քէշքիւլը ձեռքը Արաղստանից թափառելով գնաց Րէշտ, գլուխը փրկեց։ Այդ տարազով նա աներկիւղ թափառում, մտնում էր ժողովրդի բոլոր խաւերը և քարոզում նոր վարդապետութիւնը բռնաւորների քթի տակ, նրանց ներկայութեան, որոնք առանց մի բան ըմբռնելու դեռ ողորմութիւն էլ էին տալիս և գովաբանում, որ նա տարածի իւր քարոզութիւնները։

Սադըգի գործի քննութիւնը երիտասարդ շահը իւր ներկայութեանն էր կատարել տալիս, շատ մանրամասնութիւնների էր հետամտում և անմեղներին ազատում էր տանջանքից։ Միրզա-Հիւսէյն-Ալին շահի ներկայութեան այնպէս համարձակ և այնպիսի ազդու ոճով պաշտպանւեց, որ շահը համոզուեց, թէ նա մասնակցութիւն չի ունեցել չարագործի անմիտ արարքում։ Մանաւանդ Ռուսական դեսպանի թախանձանքից էլ զիջած, ազատեց և թոյլատրեց Բաղդադ ուխտի գնալու։ Պարսիկ պաշտօնեաներ Ռուսական դեսպանատան սպասաւորների հետ Հիւսէյն-Ալիին տարին Բաղդադ. բայց սրանից յափշտակուած գոյքը, կալուածքները, կարողութիւնը կուլ տուին պաշտօնեաները։

33. Էզէլին երբ լսեց եղբօր Բաղդադ գնալը, շտապեց նրան գտաւ, որտեղ միասին ապրում էին շրջապատուած Բաբի երկրպագուներով, որոնք հալածուած Պարսկաստանի այլ և այլ գաւառներից խմբւում էին սրանց շուրջը, 1853 Թ.։ Հիւսէյն-Ալին դեռևս ծածկուած էր պահում իր անձնաւորութիւնը, մաքերը եղբօր միջոցով էր արտայայտում հետևորդներին, կամ նրա անունից էր խօսում մտերիմներին, որոնց Թիւը օրէցօր աճում էր։ Էզէլին յափշտակուած Բաբի նրա հասցէին տուած պատգամներով, ամփոփուած երևակայութեամբ, իր անձը համարում էր նոր մարգարէի «Մէրաթը» (հայելին) և նրա աւանդութեան «վէսին» (խնամակալը)։ Սա չունենալով ոչ ճարտար լեզու, ոչ էլ համարձակութիւն, զուրկ լինելով բարձր կրթութիւնից, մտաւոր կարողութիւնից, ծըպտել էր համեստութեան շապիկով, բաւականացել էր դէրվիշական տարազով, Թափառում էր քաղաքից քաղաք, երկրից երկիր և քարոզում Բաբի մաքերը։ Բայց և այնպէս չէր էլ կարողանում Բաբի հետևողներին առաջնորդելու յաւակնութիւնից ձեռք քաշել, Թէև այս բանը չէր էլ համարձակւում գրականապէս արտայայտել։ Այս տենչանքով, երբ Էզէլին, գինովցած իր երևակայութիւններով, ամուսնացաւ Բաբի այրիի հետ, մինչափ վրդովեց Հիւսէյն-Ալիին, որը չկարողանալով զայրոյթը զսպել չարաչար նախատեց եղբօրը ասելով.— «Մի՞թէ զաւակը կարող է ամուսնանալ հօր կնոջ հետ։ Եթէ դա քու հարազատ, քեզ ծնող մայրդ չէր, քո հօ՛ր, ամբողջ համայնքի հօր կողակիցն էր, ի՞նչպէս յանդգնեցար նրան կին առնելու»...։ Դեռ Թէհրան եղած միջոցին, երբ դեռ չէին կատարուել Թէհրանի, Պարսկաստանի անգթութիւններն ու կոտորածները, Հիւսէյն-Ալին Թղթակցութիւն և խիստ մտերմութիւն ունէր Բաբի հետ, բայց չմատնուելու և չտուժելու

նպատակով այնպէս էին կարգադրել, որ բոլոր յարաբերութիւնները կատարուի Միրզա Եահեայի՝ Էզէլի անունով, որը դեռ շատ դեռահաս էր և չէր կարող կասկածանքի առիթ դառնալ։ Բաբը իր թղթերն ու կտակն անգամ երկու աշակերտների ձեռքով հասցրեց Հիւսէյն-Ալիին, որը ոչ միայն աւանդապահ էր Բաբիզմի այդ գանձին, այլ պիտի ղեկավարէր համայնքը։

34. Հիւսէյն-Ալին Բաղդադում մի քանի տարի ապրեց իւրայինների շրջանում, քարոզեց, կառավարեց և յարաբերութիւն հաստատեց ամբողջ Իրանում սփռուած համայնքի հետ, որոնք սարսափները անցնելուց յետոյ, նորից կազմակերպութիւնները հաստատեցին և շարունակեցին իրենց քարոզութիւնները։ Այստեղ 1854 թ. Հիւսէյն-Ալին Բաբի քեռու առաջարկութեամբ գրեց իր առաջին երկը «Իգան», որով բացատրում էր Բաբի վարդապետութեան չպարզուած կէտերը։ Բայց որովհետև նա շրջապատուած էր ահաւոր հետևողներով, որոնք նրան միջոց չէին տալիս լրջութեամբ զբաղուելու, վարդապետութեան ոգին իւրացնելու և հիմնաւորելու, Հիւսէյն-Ալին ծպտեալ հեռացաւ Բաղդադից, անհետացաւ իւրայինների համար, դիմեց դէպի հիւսիս, Կուրդուաց երկրի Սուլէյմանիէ քաղաքի մօտերը մի լեռնային աւան քաշուեց, Սերգելու, ուր ամբողջ երկու տարի առանձնութեան մէջ անցկացրեց օրերը։ Վերջապէս Սուլէյմանիէի բնիկները ծանօթանալով նրա գործերի, քարոզութիւնների, վարքի, բարքի հետ, եկան Սերգելու շրջապատեցին և տարան Սուլէյմանիէ, որտեղ Սիւննի կղերը յափշտակւում էր նրա աստուածաբանական հմտութեան, ճարտար լեզուի, սքանչելի ոճով արտայայտութիւնների վրայ։ Այս լուրը Բաղդադ հասնելու պէս, բաբիները պատգամաւորներ ուղարկեցին և նրան վերադարձ-

ձրին Աբբասինների աւերակ մայրաքաղաքը։

Մինչ այս՝ Բաբի Բէյանների պատուիրանները պահպանում էին Բաբիները, եռանդով ուսումնասիրում նրա գրուածները, ջանում էին իւրացնել նրա քարոզները, բայց դեռ որոշ կարգեր չէին սահմանուած, ժողովրդի պարտականութիւնները չէր բացատրուած ու գործադրուած։ Պարզ չէր, թէ Իսլամի վարդապետութիւնից որը պիտի պահպանուէր, և որը պիտի եղծուէր։ Բաբը, Բիշրոյէցին, Հէօջաթը, Թահիրէն ջնջել էին ծոմը, հինգ անգամի աղօթքը, քօղը, բազմակնութիւնը, թըլփատութիւնը, լւացումը, բայց դեռ շատ բաներ անորոշ էր, իսկ բէյանների մէջ, կամ ուրիշ գրուածներում որոշ բաներ չէին գտնում։ Հիւսէյն-Ալին սկսեց բացատրել և բարեկարգել կարգերը։ Բայց նա դարձեալ իւր անձնաւորութիւնը չըվտանգելու համար խօսում էր եղբօր անունով, կամ նրա բերանով։ Բաբի վարդապետութիւնը ամբողջապէս սահմանաւորուած էր մարդկային մտքի ազատութեան, զարգացման, ընթափման, գաղափարի արծարծման և տարածման շուրջը, բայց այնքա՜ն անորոշ, այնպի՜սի սաղմային վիճակում, որ Հիւսէյն-Ալիի նման մի հմուտ մտքի կարիքը կար, որ դրանք որոշ գիրք անէին, պարզէին, դիւրըմբռնելի դառնային ժողովրդի ամէն մի դասի համար։ Բաբի գրուածները ամփոփում էին համամարդկային սիրոյ, համերաշխութեան, եղբայրութեան, հաւասարութեան, պատերազմների, արիւնահեղութիւնների դադարման, զինուորականութեան ջնջման, բռնութեան սանձման, հոգեկան զգացումների—խօսքի, մտքի, գրուածքի կաշկանդումների անհետացման, մարդկային ազատութեան և անհատի անկախութեան անհրաժեշտութիւնները։ Նա հերքում էր Իսլամի պարզութեան մէջ մտցրած բոլոր սնոտիապաշտութիւնները, որոնք «հադիսներով» (մեկնու-

թիւն-գերբնական ներշնչումով յաւելուած) ներմուծւել և աւելորդապաշտութիւններով շրջանակւորւել էին հետևորդների մտաւոր աշխարհը, ուղեփակներ էին սահմանել մտքի տարածումների, սլացումների առաջ։ Հետևելով Բաբին, Հիւսէյն-Ալին հերքում էր այն բոլոր միսթիքական առասպելները, որոնցով Իմամ-Ալին և սրա ժառանգները՝ տասն երկու իմամները իրենց անձնաւորութիւնները կապել էին գերագոյնի հետ և զանազան տեսիլների արձանագրութիւններով խճողել էին շիական դիցաբանական օրէնսդրութիւնը։ Բաբը քարոզել էր և բէհան պարզում էր, որ Աստուծոյ շունչը-խօսքը-ղուրանը ոչ բացատրութեան, ոչ մեկնութեան, ոչ էլ եօթանասունը երկու տեսակ նշանակութեան կարիք ունի։ Ղուրանը խնամակալի (վէսի) և բացայայտիչի (միւբէյին) պէտք չունի։ Բայց որովհետև Ղուրանը ժամանակի ոգուն չի համապատասխանում, ուստի նոր-յայտնութիւնով Ալլահը նոր օրէնքներ է սահմանում մարդկային ազգի համար։

Բաբի պատւիրանների գործադրութեան, կատարման համար Հիւսէյն-Ալին պահանջում էր հետևորդներից սիրել մինչև անգամ դահիճներին, բռնակալներին, յորդորում էր անսահման համբերութիւնով, զոհողութիւններով ընկճել թըշնամիներին, դաժան կեղեքիչներին համոզմունքով և բարեգործութիւններով, յաղթահարել, հարստահարողներին ամբողջ գոյքը յանձնելով անվերջ նպաստներով և օգնութիւններով բարութեան լոյսը ծագեցնել ապառաժացած սրտերում, անզգայացած-բթացած ջիղերում։—Ձեր միակ զէնքը, ասում էր, ձեր լեզուն և ձեր գաղափարը պիտի լինի։

35. Գոռոզ շիաները, որոնք միւթէշարիններից դուրս, ամբողջ աշխարհի վրա զզուանքով ու արհամարհանքով էին ակնարկ գցում, որոնց համար համայն մարդկութիւնը, բացի

իմամների երկրպագուներից, ապականութիւն ու գարշանք էր ներկայացնում, չէին կարող համբերութեամբ լսել, տեսնել ու չբողբոքել նորաղանդների դէմ։ Բաղդադ ու Քէազիմէյն ապրող շիաները սրտմտած Հիւսէյն-Ալիի դէմ, իրենց կոնսուլից պահանջում էին, սանձել իմամների «հադիսները» հերքող, աւանդութիւնները եղծող, ժողովուրդը գայթակղեցնող Բաբի վարդապետութեան յամառ քարոզողներին։ Իրաք—Արաբի սրբավայրերում ապրող իւլէմաները ամէն շաբաթ հաստ ծըրարներ էին ուղարկում Թէհրան վէզիրներին ու շահին, պահանջելով որ միջոցներ ձեռք առնեն և այս հայհոյողի (քեաֆիր) գոյութիւնը ջնջել իրենց միջից։ Նրանք բողոքում էին. թէ նորաղանդները պղտորում են սրբավայրերը այցելող շիա ուխտաւորների միտքը և թերահաւատութեան սերմը ցանում են ճշմարիտ հաւատացեալների սրտում, կասկածներ են զարթեցնում իմամների, Հադիսների, Հաքուլգայի և ուրիշ գերագոյն յայտնութիւնների մասին։ Դրութիւնը այնտեղ հասաւ, որ կոնսուլը հրաւէր կարդաց Նէջէֆի, Քիւֆէի և Քէրբէլայի բոլոր իւլէմներին, որոնք ժողովեցան Քեազիմէյն քննելու և դատապարտելու Բաբի աշակերտներին։ Այս ժողովով էլ շիաները չհասան ցանկութիւններին, քանի որ այն ժամանակի շիա-միւթաչարիների յայտնի Միւջթէհիդ Հաջի Միրզա-Մուրթուզան ժողովից դուրս եկաւ կրկնելով, թէ—Ինքը որևէ կրօնի հակառակ և դատապարտելի ընթացք չի նկատում Հիւսէյն-Ալիի գրքերում և վերադարձաւ Նէջէֆ։ Այս անյաջողութիւնից բորբոքուած, երբ կոնսուլը ջանում էր շահի որևէ հրովարտակով կալանաւորել և պարսկաստան վերադարձնել բաբիներին, վերջիններս խմբով դիմեցին և ընդունեցին Օսմանեան հպատակութիւն և հովանաւորութիւն։

36. Բաբիների Օսմանցիներից հովանաւորութիւնը աւելի

գրգռեց—բորբոքեց Բաղդադի պարսիկ գաղթականութեան և Հիւսէյն-Ալի սկսեց աւելի համարձակ քարոզել նորաղանդի վարդապետութիւնը։ Պարսիկ կղերը շարունակ նրան այցելում էին և անդադար վիճում։ Մի օր երբ նրանից նշան պահանջեցին, նա ասաց—Հրաշքը այն սրբազան գրութիւններն է, որոնք թողել է մեր կրօնի հիմնադիրը։ Մի՞թէ իսլամի վարդապետութեան ամենամեծ և միակ հրաշքը Ղուրանը չէր, որին հաւատացին ու դաւանեցին միլիոնաւոր ժողովուրդ»։ Երբ առարկեցին, թէ անգրագէտ Մահմէդը Աստուածային ներշնչումով գրեց և յանձնեց Ղուրանը, իսկ Բաբը իրանից է գրել, Հիւսէյն-Ալին բորբոքուած ասաց.—«Գնացէք կանչեցէք բազարից որև է Բէդւին (արաբ)»։ Երբ Բէդւինը ներկայացաւ ժողովականներին, Հիւսէյն-Ալին հրամայեց մի խօսքով—«Ղուլ, կարգա́»։ Բէդւինը ամբողջ կէս ժամ անդադար երեք-չորս հարիւր «Այաթ» կարդաց ընտիր արաբական գրական ոճով և ապշեցրեց հանդիսականներին։ Հիւսէյն-Ալին Բէդւինին դադարեցրեց, երբ բոլորը հետաքրքրուեցան և համոզուեցան, որ նա անգրագէտ և տգէտ մարդ է, խօսում է արաբական աղաւաղուած բարբառով, մնացին շուարած-տաքակուսած և շատերը հակուեցան Բաբինների կողմը։ Երբ մի ուրիշ ժողովում ամէն կողմից հարցախեղդ արին և Հիւսէյն-Ալիից նշան էին պահանջում, նա կանգնեց և ասաց, թէ—«Բոլորդ յանգեցէք մի որոշման, պահանջեցէք մի բան, մինչև անգամ եթէ կամենում էք այս Շաթ գետին (Տիգրիս) հրամայեմ, որ ետ դառնայ»—բոլորովին բորբոքուեցան և ամէն միջոցի դիմեցին, մինչև որ համոզեցին խալիֆին և յատուկ հրովարտակ, պաշտօնականներ գրկել տուին Բաղդադ, որոնք նորաղանդներին իրենց առաջնորդի Հիւսէյն-Ալիի հետ տա-

բին Կ. Պօլիս 1863 թուականին, Բաղդադում տասն ու մի տարի քարոզութիւնից յետոյ։

37. Երբ պաշտօնակալների հետ ճանապարհ էին ընկնելու դէպի Կ. Պօլիս, Միրզա-Հիւսէյն-Ալին յայտնութեան ժամը հասած համարելով, Նէջիբ փաշայի այգում հաւաքուած բաբիների խմբին նա պարզեց իր անձնաւորութիւնը, թէ ինքն է այն Բէհա-Ուլլահը (Աստուծոյ լոյսը), որի մասին կարապետել էր Բաբը իր Բէյան գրքում։ Այդտեղ տուած պատգամը («Լոհ») սկսում է.—«Նա է, որ բազմած և բնակուած է այս լուսեղէն կենդանի տաճարի մէջ...»։ Այս խօսքերով նա ցոյց տուեց իր կուրծքը և պատգամը վերջացնելով ճանապարհ ընկաւ։ Նորան ընկերակցում էին ընտանիքը, զաւակները, եղբայրները, բաբի ազգականները և նշանաւոր հետևորդները ընդամենը 86—90 հոգի, որոնք միասին ուղևորուեցին մինչև Կ. Պօլիս։ Էզէլին, որ տասներկու տարի անվերջ թափառելով վարժուել էր հետի ճանապարհորդութեան, անցել էր Իրանը, Թուրանը, Աֆղանը, Հնդկաստանը, ամբողջ Միջագետքը դէրվիշի քէշկիւլով, ուղեկցում էր հեռուից և այս կարավանին կողմնակի ճանապարհներով, հետի, որպէսզի թուրք ոստիկանութեան ճանկը չընկնի։ Պատւով մտան Կ. Պօլիս, յարգանքով ընդունեցին Օսմանեան նախարարները այս տարօրինակ աքսորականներին, Հիւսէյն-Ալիին այցելեցին Հիւնքեարի մայրաքաղաքի բոլոր նշանաւոր պաշտօնակալները և աչքի ընկնող անձնաւորութիւնները, որոնց մօտ շատ վեհ դիրք բռնեց Բէհան։ Տեսակցեցաւ մինիստրների հետ. և որովհետև որոշ գաղափար չկարողացան կազմել, երեք ամիս Կ. Պօլսում ապրելուց յետոյ, Խալիֆի յատուկ հրովարտակով աքսորուեցան Ադրիանուպօլիս (Էտիրնէ)։

38. Ադրիանուպօլսի աքսորավայրից Բէհան սկսեց գրել

*իւր «Լօհերը» (պատւիրանները) և տարածել հետևողներին Միջագետք, Պարսկաստան և Հնդկաստան։ Այդտեղից գրեց և ուղարկեց Նասր-Էդդին շահին այն ընդարձակ թուղթը, որով բացատրեց, թէ ինքը և իւր վարդապետութիւնը երբէք նպատակ չունին որևէ աշխարհային իշխանութեան ձգտելու, կամ որևէ պետութիւն—թագաւորութիւն տապալելու: Նա փաստացի կերպով բացատրեց, որ թէ իւր և թէ Բաբի Լօհերը սահմանւորուած են միայն մարդկային հոգու և բարքի կըրթութեան կատարելութեան հասցնելու նպատակով։ Թէ իւր հետևողներին խստիւ արգելուած է ոչ միայն որևէ իշխանութեան դէմ ապստամբելը, հակառակելը, կռւելը, և արիւնահեղութիւնը, այլ նրանք խօսքով, լեզւով անգամ իրաւունք չունին վշտացնելու որևէ անհատի, ինչ ազգի, ցեղի ու աստիճանի էլ որ պատկանի, նրանք պարտաւոր են սիրել, ներել ոչ միայն թշնամիներին, հակառակորդներին, այլ մինչև անգամ իրենց կեղեքող, կողոպտող և սպանող չարագործներին։ Այդ թղթում նա խոստովանում է, որ Թէրբէյսի, Նէյրիզի, Զէնջանի ընդդիմութիւնները սխալմունք, տգիտութեան արդիւնք էին, իւր հետևողները մինչև անգամ անձնապաշտպանութեան իրաւունք չունին, չարին հակառակելու արտօնուած չեն, ոչ զինւելու, ոչ դիմադրելու, ոչ պատերազմ գնալու և ոչ էլ որևէ պատճառով մարդ սպանելու. պիտի մեռնեն, բայց չպիտի սպանեն։ Մանաւանդ. նա յաւելացրել էր, Սաարգի արարքը ոչ միայն հիմնովին հակառակ էր իւր վարդապետութեան հոգուն, այլ մի խելացնորի գործ էր։ Օսմանեան հպատակութեան անճարութիւնից դիմելու պարտաւորւելը յայտնելուց յետո, առաջարկում էր շահին իւր հովանաւորութեան տակ մի ժողով գումարել և շիա միջթէհիդների հետ վիճաբանելուց յետո, երբ բաբիների ուղղամտութեան մասին հա-*

մոզլի, թոյլատրէ նորադանդներին էլ ազատ ապրելու իրենց ծննդավայրում մնացեալ այլակրօն ցեղակիցների հետ: Բայց բաբի վարդապետութեան ռամկավարական հոգին, զինաթափութիւնն և զինւորականութեան ջնջումը հիմնովին հակառակ լինելով Ղաջարների անսահման իշխանութեան, այդ պատճառով ոչ միայն Բէհայի թուղթը շահին ներկայացնողը գլխատւելու պատուհասին արժանացաւ, այլ Բէհային էլ պատասխան չգրւեց: Այստեղից գրեց Եւրոպայի պետութիւններին իւր յայտնութիւնը և հրաւէր կարդաց դէպի իւր կրօնը:

39. Բէհայի հետ եղբայրը-Էզէլին էլ աքսորւած էր Ադրիանուպօլիս: Էզէլին իւր խորհրդակից Իսֆահանցի Սէիդ-Մէհմէդի, Միրզա-Աղաջանի և Թաւրիզեցի Րզա-Ղուլիի հետ միացած՝ խորհուրդ արին և բողոքեց Բէհայի յայտնութեան և քարոզութեան դէմ, առարկելով թէ բաբի Էզէլին է անւանել իւր վարդապետութեան «Արշալոյսը» (Սուբհ-Էզէլ), նրան է յայտարարել իւր «Մէրաթը» (Հայելին) և նրան է կարգել իւր հետեւողների Խնամակալը (վէսին), թէ եղբայրը իրաւունք չունի իրեն Բէհա-Ուլլահ անւանելու, «Լոհ» տալու, կամ բաբի գրութիւնների մասին բացատրութիւն գրելու: Այսպէս Էզէլին հերքելով եղբօր յաւակնութիւնը, բողոքելով նրա ընթացքի դէմ, բաժանւեց եղբօրից և նրա հետեւողներից, առանձին հերձւած կազմելով վերադարձաւ Կ. Պօլիս: Այստեղ նա կարողացաւ ներկայանալ Օսմանեան պաշտօնականութեան, յայտարարեց թէ ինքն է Բաբիների առաջնորդը, եղբայրը յափշտակել է իւր իրաւունքը և խնդրեց, որ, որպէս աքսորական, պետական գանձից նրան թոշակ յատկացնեն: Այդ օրերը Օսմանեան զինւորականներից մէկի մօտ գտել էին Բէհայի «Լոհերից» մի քանիսը, որոնց բանակի մէջ տարածւելը, մըտ-

քիր յուղկը, նորանոր գաղափարների արծարծելը մեծ յուղում էր պատճառել բարձր պաշտօնականութեան, որոնք Էղէլի այս խոստովանութիւնից օգտուելով, Բ. Դռնից հրաման հանեցին և երկու եղբօրն էլ աքսորեցին. Էղէլին՝ Կիպրոս, իսկ Բէհային՝ Աքքա 1868 թուականի օգոստոսին։ Բէհայի հետևորդները չը-ցանկացան բաժանուել իրենց առաջնորդից, այնպէս որ կա-ռավարութիւնը նրանց էլ աքսորեց երկու եղբայրների հետ, թուով 80—90 հոգի։ Պարսից դեսպանը յաջողեցրեց, որ Էղէլիի հետևորդներից երեք հոգի կցեն Բէհայի խմբին և Բէ-հայի մարդերից երեք հոգի Էղէլիի խմբին, որպէսզի կարողա-նա դրանց միջոցով պառակտում գցել և քայքայել աղանդա-ւորներին։ Յանկարծ Աքքայում, Էղէլիները մի օր երեքն էլ ան-յայտացան, այնպէս որ կառավարութիւնը որքան խուզարկեց, ի՞նչ քննութիւնների չդիմեց՝ հնար չեղաւ դրանց գտնելու։ Ենթադրում էին, որ դրանց սպանել, աներևութացրել էին Բէհայի 75 հոգուց աւելի բանտակիցները. իսկ կառավարու-թիւնը որևէ դրական փաստ չկարողանալով գտնել, մոռացու-թեան տուեց խնդիրը։ Իսկ Կիպրոսը անգլիացիների ձեռքը անցնելուց յետո, երեք Բէհայինները 1878 թ. վերադարձան իրենց առաջնորդի մօտ։

Օսմանեան կենդրոնական վարչութեան կարգադրութեան համաձայն Աքքէի բերդի հրամանատարը Բէհային և հետևորդ-ներին բանտարկեց բերդի մեծ զօրանոցում, ուր վերևի յար-կում ապրում էր Բէհան ընտանիքով և սպասաւորներով, իսկ ներքևի յարկում բնակւում էին հետևորդները, առանց որևէ կապանքի։ Այս պատճառով Բէհան իր գրութիւնների մէջ իր անձը—մարմինը կալանաւոր, տանջուած էր անուանում։ 1868 —1870 թւականը, գրեթէ երկու տարի աքսորականները առ-

րեյան զօրանոցում, բայց երբ պահեստի զօրքը զէնքի կանչւելով կառավարութիւնը զօրանոցի պէտք ունեցաւ, նրանց թոյլատրեցին քաղաքում ապրել։ Աքէայի բանտից Բէհան նորից գրեց իր թղթերը Եւրոպայի նշանաւոր արքունիքներին, պապին, նոյնպէս և աշխարհի ամէն կողմի հետեողներին։ Բանտից ազատւելու պէս՝ նա գրեց Բէհայանների Սուրբ-Գիրքը (Քիթաբի-Աքդէս), փարսերէն, ապա միւս գրութիւնները, որոնք երեք հարիւր հատորից աւելի կարող են կազմել։ Բաղդադում գրած «Իգանից» (ապացոյց) յետոյ, նրա գրւածներից նշանաւորներն են «Միւբին» (թագաւորների թղթերը), Իշրաղաթ (դատաստանագիրք), Իգթիդարաթ (զօրութիւն), Մարիւմն-իւլ էսփէր (աւետիսների հաստատութիւնը), Քիւլի-Թաամ-Հէլլէն—Բէնի-Իսրայէլ (ամէն կերակուր հալալ է իսրայէլի զաւակներին), բացատրութիւն Ղուրանի, Ադամի, Էյուբի սուրէների, են, են, են։

40. Բէհան (Հիւսէյն-Ալին) ծնել է 1233 Թ. Հեջրի Մուհարէմի—2-ին (30 Հոկտեմբերի 1817-ին)։ Աքէա աքսորւելիս Բէհան արդէն յիսուն տարին անցկացրած էր։ Մանուկ հասակից նա ցոյց էր տւել իր հանճարեղ սրամտութիւնը և բնածին տաղանդը։ Եօթը տարեկան հասակում եղած ժամանակը հայրը ստացել էր Ատրպատականի ֆինանսի կառավարչից պետական ելևմտից տարեկան հաշւէցուցակը։ Հիւսէյն-Ալին ձեռքըն առաւ կարդալու այդ հաշիւը և խաղալով պատառեց, մանրեց, թափեց։ Երբ հայրը շւարած չէր իմանում անելիքը, երեխան նստեց, գրեց իսկութեամբ ամբողջ հաշւէցուցակը և յանձնեց հօրը։ Մեծ եղաւ տանեցիների զարմանքն ու ապշութիւնը, երբ Ատրպատականից ստացւած երկրորդ պատճէնի հետ համեմատելով գրւածի բոլորովին ճշտութիւնը ստուգեցին։ Մի անգամ աղա Բուզուրգը-Աբբասը իր բնագիտական

համառութեամբ պարծենալիս, ասաց, որ եթէ Քրիստոսը ներկա լինէր, պիտի հաստատէր, թէ ինքը աշխարհի երեսին ամէնից բարձր բնագէտն է, Եւրոպացի գիտնականներից աւելի մանրագէտ և աւելի խորաթափանց։ Այդ ժամանակ մանուկը նրան պատասխանելով ասաց.—«Միթէ դու կարո՞ղ ես աներկիւղ դիմել շահին, եթէ նրա տասը փարրաշները յանկարծակի քեզ առաջնորդեն աշխարհի հրամանակալի ներկայութեան»: Ապա յանդիմանեց հօրը, որ նա չյանդգնի պարծենալ ու խրոխտալ, որ կարող է Յիսուսի նման Աստուծու պատգամաւորին—հոգուն մօտենալ և կամ նրա մասին անվայել կարծիքներ յայտնել։ Հիւսէյն-Ալին մանկուց ծանրաբարո էր, միշտ խորասուզուած անսահման մտածութիւնների մէջ և անչափ սակաւախօս էր: Նա անչափ համեստ էր, երկար ժամանակ Թէհրանի և Բաղդադի հասարակութեան չէր պարզւում. իւր քաղցրութիւնները, իւր գրութիւնները, իւր արտադրութիւնները Եզէլի միջոցով, կամ նրա անունով էր յայտարարում։ Փոքր հասակում դաստիարակւելով հմուտ ուսուցիչների հսկողութեամբ, հրաշալի կերպով ուսումնասիրել էր պարսկական և արաբական լեզուները, սրանց գրականութիւնը, մանաւանդ իսլամի և նրա աղանդաւորների պատմութիւնը, վարդապետութիւնները և փիլիսոփայական տեսակէտները։ Բաբիները բէհայի աստուածայայտնութիւնը խոստովանել են, հիմնւելով նրա տաղանդաւոր գրական արտադրութիւնների, վսեմ մտքերի, հրաշալի գեղարւեստական ոճի ու արտայայտութիւնների վրա։ Նրա գրած երեք հարիւր հատոր երկերի մէջ, չէ կարելի մի նախադասութիւն գտնել, որ ոճի, դասաւորութեան, կամ բառերի կազմութեան և ձևերի մէջ նմանութիւն ունենա Ղուրանում, Իսլամի գրականութեան, կամ կտակարանների մէջ· Նա նոյնպէս ուսումնասիրել է յունա-

կան և Հռոմէական կլասիքները, Սոկրատը, Արիստոտէլը, Պլատոնը, Հիպոկրիտը և ուրիշները. որոնք թարգմանուած են արաբական Աբբասիների շրջանում, բայց շատ քիչ գաղափար ունէր Եւրոպական գրականութեան, պատմութեան, գիտութիւնների և արուեստի հսկայական առաջադիմութիւնից: Բէհան հեռատես մտքով, խորաթափանց հայեացքով, արուեստի, գեղարուեստի և գիտութեան կատարած արագակարգ յաղթանակները նկատել, զգացել և իր բնական ընդունակութիւններով որոշ գաղափար կազմել էր դրանց ապագայի մասին, որանց օգտակարութիւնը պատուիրել էր: Նա անչափ անգամ կրկնել է հետևորդներին, պատուիրել է, անպայման աշակերտել այդ գիտութիւններին և արուեստներին, տքնել իւրացնել և գործադրել կեանքի պայքարում, մանաւանդ բնական գիտութիւնները, որոնք մարդկային ազգին անբաւ բարիք են խոստանում:

41. Բաբի և Բէհայի քարոզած Աստուածը Եհովան է, որ Մի է, անսկիզբ, անզուգակից, անփառակից և յաւիտենական —անվախճան: Բաբը ընդունելով Աստուածաշնչի և Ղուրանի բոլոր քարոզիչներին, խոստովանելով նրանց երկնքից տրուած շնորհները, պատգամները, իր յայտնութեամբ ջնջել էր նրանց պատուիրանների ոյժը և հրամայել էր ժամանակի կարիքներին համապատասխան իւր բերած օրէնսդրութեան հըպատակել: Նա փոփոխեց վերացական-աներևոյթ աշխարհի մասին եղած ենթադրութիւնները, աշխատեց համաձայնեցնել գերբնականութիւնը բնական օրէնքներին: Հետևելով Բաբին, Բէհա-Ուլլահը քարոզեց սէր, միութիւն, հաւասարութիւն, եղբայրութիւն և անխտրութիւն: Բայց Բէհայի քարոզութեան ամենավսեմ կէտն այն է, որ նա մարդկութեան հրաւէր կարդաց մշտնջենաւոր խաղաղութեան, հանրամարդկային զինա-

թափութեան, կատարելութեան վայել պարտաճանաչութեան, ցեղերի, ազգերի, տոհմերի, դասակարգերի տարբերութեան ջնջման, համերաշխութեան և համայնացման։ Աշխարհի վրա բարեբաստիկ վիճակ ստեղծելու, բռնութիւնը, խտրութիւնը ջնջելու համար, Բէհան իր հետեւորդներից պահանջեց՝ ամբողջ հողագնդի ազգերին իրենց հարազատը, արիւնակիցը ընդունելով, երբէք նրանց դէմ, որեւէ մարդու դէմ զէնք չբարձրացնել, մարդկային արիւն երբէք չողողել։ Հռչակելով իր յայտնութիւնը, նա աւետում էր աշխարհին, որ շուտով լոյսը պիտի սփռւի և մարդիկ պիտի զգաստանան, վայրենութիւնից, գազանավայել արիւնահեղութիւններից ձեռք պիտի վերցնեն։ Բէհան բարի վարդապետութեան՝ Բեյանի պատւիրանների մէջ նկատած բոլոր խստութիւնները մեղմացրեց, ժողովրդի վրա դրւած պարտականութիւնները և տուժերը թեթեւացրեց, ջնջեց վնասակարները, դժւարները վերացրեց, հաստատելով մնացորդը։ Բէհան թոյլատրեց օգտւել և վայելել աշխարհի բերքն ու բարին, հաճոյքը, միայն թէ չվնասել, չվշտացնել, չտուժել տալ ուրիշներին։ Նա ինքն իրեն լոյս էր անւանում, լոյսի (Բէհա) ծնունդ, արշալոյս և հետեւողներից պահանջում էր միշտ դէպի լոյսը ձգտել, թափանցել խաւարի, աղջամուղջի ամէն մի խաւը, տարածել լոյսը ճըշմարտութիւնը ամէն մի անկիւն, ձգտել անվերջ դէպի առաջ գիտութիւններով և արւեստներով, բարձրացնել պայծառացնել մարդկային միտքը վսեմ գաղափարներով։

Բէհան անվերջ քարոզում էր հետեւողներին.—

—«Ո՜վ հետեւորդնե՛ր, աշխարհի ցեղե՛ր, ամէն կրօնի հետեւող ժողովրդի հետ սիրով, անկեղծ հոգւով յարաբերութիւն կապեցէ՛ք։

«Գիտութեան ծառի ամենավսեմ խորհուրդն այն՛ է, որ

դուք բոլոր ազգերդ մի ծառի պտուղ էք, միևնոյն ոստի տերևներ։

«Հայրենասիրութիւնը առաքինութիւն չէ, ամբողջ աշխարհը պարտաւոր էք ընդունել ձեր արիւնակցի, սրտակցի նման։

«Ո՜վ Բէհա-Ուլլահի հետևորդներ, դուք սիրո արևելքն էք, բարեսրտութեան արևածագը։ Մի վարժեցնէք ձեր լեզուն որևէ անարգանքի, կամ հայհոյանքի։ Աչքերդ զգուշացէք անարգ տեղեր հայեացք գցելուց։ Ոչ ոքի վշտին պատճառ մի դառնաք, ու միայն թէ կռուել կամ ապստամբել մէկի դէմ։ Աստուծու օրէնքն ու հաւատքը միմիայն համերաշխութեան համար է երկնքից երկիր իջել. այդ բանը երբէք հակառակութեան և հերձուածի առարկա մի դարձնէք։

«Այս խօսքերը նման են ջրի, որը պիտի հանգցնէ սրտերի խորքերում ծածկուած ու կուտակուած կրօնական ատելութեան բոցերը։

«Աւելի լաւ բան ցանկացէք ուրիշների համար, ինչպիսի հաճելի բաներ ցանկանում էք ձեր անձի համար. այս է Ալլահի պատգամը, եթէ դուք կարողանաք ըմբռնել։

«Ո՜վ իմ բարեկամներ, դուք ձեր անձի համար չէք ստեղծուել, այլ աշխարհի համայնքների համար։ Թողէք այն բոլորը որտեղ տեսնում էք ձեր անձնական շահը, կապուեցէք նրա հետ, որտեղ ընդհանրութեան շահն էք տեսնում։

«Ո՜վ մարդու որդի, եթէ ուզում ես առաքինի լինել, թո՛ղ քո անձնական շահերը, հետևիր և ձեռքումդ պինդ բռնիր ընդհանրական շահերը։

«Եթէ արդարութեան ես հետևում, ուրիշներին էլ տո՛ւր այն իրաւունքները, արտօնութիւնները, ինչ որ իւրացրել ես քո անձիդ համար։

«Երանի՜ այն մարդու վիճակին, որ պառկած տեղը նրա հոգին լուսաւորւում է ընդհանրական սիրով: Երանի՜ այն մարդուն, որ ծառայում է ընդհանրութեան շահերին:

«Ով որ իր, կամ ուրիշի զաւակներին դաստիարակել, Աստուծո որդիներին կրթած կլինի: Նրան հասնի իմ լոյսը, իմ ճառագայթը, իմ ողորմութիւնն ու օրհնութիւնը:

«Աշխարհի յառաջադիմութիւնը, դաստիարակութիւնը, զարգացումը մարդկային կեանքի ապահովութեան և խաղաղութեան համար է, որն Աստուծո պատուիրանի ամենագլխաւոր կէտն է:

«Կեանքի իսկական ճաշակը պարզ մշակութեան մէջն է:

«Կգայ ժամանակ, երբ գահերը թափուր կմնան, ոչ ոք չի ցանկայ նրանց տիրանալ:

«Լրագիրը կեանքի հայելին է. երանի այն խմբագրին, որ եղելութիւնները քննում է, փնտռում է և ճշմարտութիւնը նկարագրում»:

42. Այսպիսի յորդորներ, խրատներ և կտակներ անթիւ են Բէհա-Ուլլահի գրուածքների մէջ, որոնցից մինը հատորը 1890—2 թ. տպագրուած է Բոմբէում: Դրանից աւելի օրինակներ տալը կարիք չհամարելով, մի քանի խօսքով էլ որոշենք Բէհայի սկզբունքը:

Հետևելով քրիստոնէական վարդապետութեան հիմունքին, Բէհայի հետևողների համար գոյութիւն չունի՝ ոչ ազգ, ոչ ցեղ, ոչ տոհմ, ոչ լեզու, ոչ դասակարգ, ոչ սեռ և ոչ էլ ստրկութիւն. մարդիկ համահաւասար են ծնուած և համահաւասար էլ մեռնելու են: Նրա վարդապետութեան համաձայն ամբողջ հողագունդը համայն մարդկութեանն է պատկանում, մարդիկ անխտիր հաւասար եղբայր են, համահաւասար ժառանգորդ այն բոլոր բարիքին, բերքին, ինչ որ շնորհել է

ընդհանրութեան։ Նա հակառակ է սարկութեան. և այս մասին Վիկտորիա թագուհիի գրած թղթում իւր գոհունակութիւնն է յայտնում գերիվաճառութեան դէմ ձեռք առած միջոցների համար և առանձին համակրութիւնն է ցոյց տալիս որ թագուհին ժողովրդին իրեն հետ հաւասարելով, նրան է յանձնել պետութեան վարչութեան ղեկը (պարլամէնտին)։ Նապօլէոն III-ի գրած թղթի մէջ հրամայում է հեռանալ գահից, փառքից, մերկանալ յափշտակած կարողութիւնից և երկիրը յանձնել ժողովրդին, որ ինքն իրեն կառավարէ (խորհրդարանով)։ Ձանսալու դէպքում, սպառնում է Կեսարին խայտառակ անել թշնամիների ձեռքով, որոնք դղրդացնելով ու գողդողացնելով պիտի պաշարեն գեղարւեստի մայրաքաղաքը և նրան մատնեն սոսկալի անարգանքի։ Ալի փաշային գրած նամակում յորդորում է Աբդուլ-Ազիզին ժողովրդի ներկայացուցիչներից ժողով գումարել և արդարութեամբ դատել ազգայնակութիւնը։ Իսկ Ադրիանուպօլ աքսորելու համար արած անիրաւութիւնը յիշեցնելով, յորդորում է զգաստանալ, հակառակ պարագային մերձաւորների ձեռքով խողխողելը, անհետանալը իմացնելով, յայտնում է, որ Ադրիանուպօլն էլ, սրա նման ուրիշ շատ քաղաքներ էլ, պիտի անջատւի նրա իշխանութիւնից, պիտի յանձնւի նորանոր կառավարիչների ու թագաւորների։ (Այս երեք նամակն էլ գրւած է 1866-7 թ. Ադրիանուպօլի աքսորավայրից)։ «Թէհրան» վերնագրով տւած Լոհի մէջ Բէհան բացատրելով, թէ մարդկութեան թշնամիները կրկին են.—Ա. խոստապահանջ կղերը իրենց երևակայական տեսիլներով և դժոխքի տանջանքներով սարսափեցնելով ժողովրդին կողոպտում են նրա սոված մանուկների հացը, և Բ. անսահման իշխանապետները իրենց սրով ու հրով մերկացնում են թշւառին ու այրին իրենց մարմինը ծածկող ու

տաքացնող հագուստից։ Այս թղթով նա սպառնում է Թէհրան քաղաքին, որ շատ մօտ է նրա ռամկավարական իշխանութիւնը, որով ժողովուրդը ինքն իրենց պիտի կառավարէ, պիտի ցամաքեցնէ թշուառի արտասուքը և պիտի յագեցնէ ու տաքացնէ որբին ու այրիին, վերջ տալով նրանց մրմունջներին։

43. Ռամկավարական սկզբունքի աւելի դրական ապացոյցն է նոյնպէս, Բաբի և Բէհա-Ուլլահի հաստատած «Ռիջալի» և «Ադլի» ժողովները, որոնք ընտրւում են ժողովուրդից և համայնքից։ Քիթաբի Ագդէսի մէջ գրւած է.—

«Ալլահը հրամայեց ամէն քաղաքի-աւանի համար մի մի արդարութեան տուն հիմնել, (տան) ինը մարդ ընտրէ ժողովուրդը, եթէ աւելի լինի՝ անվնաս է։ Այդ մարդիկ ժողով մանելիս այնպէս շարժւին, որ իբր Աստուծո ներկայութեանն են դիմաւորում, Աներևոյթը տեսնում են։ Այդ մարդիկ Աստուծո հաւատարիմները համարւին մարդերի մէջ, երկրի վրա Ալլահի փոխանորդները լինին ընդհանուրի համար։ Աստուծո սիրո համար՝ նրա ծառաների գործերի առթիւ խորհուրդներ կատարեն, ինչպէս իրենց սեփական գործերի համար ջանք են գործ դնում։ Ժողովրդի շահերին վերաբերեալ ամենաօգտակար ձայներին ձայնակցելով վճիռներ արձակեն»։

Թէև պնդել, կրկնել է Բէհան Նասր-Էդդին շահի գրած թղթերում, թէ իւր վարդապետութիւնը ամփոփւած է սոսկ մարդու հոգեկան-կրօնական հայեացքների սահմանաւորութիւնով, նա աշխարհային-քաղաքական խնդիրների, իշխանութիւնների չի միջամտել, արգելել է հետևորդներին հետամտել քաղաքական հարցերի։ Բայց նա, որպէս հետևորդ Մովսէսի, Յիսուսի, մանաւանդ Մահմէդի, ծնած ու արտագրւած դրանց օրէնսդրութիւնից, չէր կարող կրօնա-քաղաքական օրէ-

նսդրութիւնը բոլորովին բաժանել քաղաքացիական կոդէքսից։ Նրա «Քիթաբի-Ագդէսը», «Նշանաւոր միապետներին», «Թէհրանին» և «Ալլմին» ուղղած թղթերը որոշ կերպով ծրագրում են համայնական և ռամկավարական վարչութիւն, որ կառավարէ, դատէ հետևորդներին։ Ցայտնի բան է հետևորդները անպայման ձգտելու են իրագործել իրանց տրւած այս պատգամը։ Ի՞նչ կարող է անել այս դէպքում Բէհայի հետևորդը, երբ նրան արգելւած է ոչ միայն Ահաթը (կրօնական պատերազմ) գինելը, պատերազմի գնալը, մարդկային արիւն թափելը, յարձակւելը. այլ շատ խիստ ու որոշ օրէնքով արգելւած է «Իիֆան» (ինքնապաշտպանութիւնն) անգամ, անձը որևէ բռնութեան դէմ պաշտպանելն անգամ։ Բէհականը և ոչ մի դէպքում բռնութեան դէմ դիմելու իրաւունք չունի, չպիտի դիմադրէ. այսպիսի պարագային նրա զէնքը միայն լեզուն է, որով պիտի համոզէ՝ առանց նախատինքի և հայհոյանքի։

Բէհան շատ լաւ ուսումնասիրած լինելով իսլամի աղանդները, նրա տենչանքն եղել է, որ հետևորդների մէջ հաշիշ-ների նման տեռորիստներ, Դարասի-Դրուզիների նման նենգամիտ աւինաւուշներ, Օմէրի նման բռնակալ իսլամացնողներ և յաջորդական իշխանութեան համար Ալիի նման արիւնահեղ մարտնչողներ չյառաջանան։ Նրա ամենագլխաւոր և միակ նպատակն է եղել հետևորդներին իսպառ ազատել այդպիսի զարհուրելի և բարբարոսական կատարածներից։

43. Նոյնպէս նորադաւանների Բէյթ-Իւլ-Ադլ (արդարութեան համայնքի), որ իսլամի Բէյթ-իւլ-Մալի (Հասարակական գանձի) նմանողութիւնն է, որտեղ կուտակւելու և որտեղից բաժանւելու է ժողովրդից ստացւած 19-րդական տուրքը, հարկը, տուգանքը, ժառանգութիւնը են, մի այնպիսի հիմ-

նարկութիւն է, որ միայն քաղաքական իշխանութիւնը կարող է գործադրել։ Բէհայի վարդապետութեան քաղաքական աս-տառի մի նշանաւոր կէտն էլ այն է, որ նա առաջարկում է աշխարհի բոլոր տիրողներին միանալ, մի գերագոյն ժողով կազմել, դաշնաւորուել միանջնաւոր «Մեծ խաղաղութեամբ», ջնջել զինուորականութիւնը, զէնքը, զինաթափուել և զօրանոց-ները յատկացնել գիտութեան տաճարներին։ Նա մի այնպի-սի դաշնակցութիւն էր երազում, որ բոլոր դաշնակիցները իհարկէ միահամուռ ուժով ճնշեն նրան, որը որևէ ընթացքով մտածէ վրդովել ընդհանուր խաղաղութիւնը։ Այս առթիւ «Ալէմին» (ընդհանրական) ուղղած թղթում յորդորում է, որ գիտնականները մի վեհաժողով այնպիսի միջոց ձեռք առնէ, որ համայն մարդկութիւնը պարտաւորացնէ միևնոյն լեզուով կարդալու, գրելու, խօսելու, միևնոյն տառերով և միևնոյն ուղղութիւնով դաստիարակելու ապագա սերունդը։ Այս թղթի մէջ հրամայուած է հետևողներին աւելի սերտ կերպով կապ-ուել այն իշխանութեան հետ, որն իրենց ազատութիւն կտա ճշտութեամբ, կատարել օրէնքներն ու պատուէրանները, հա-ւատարիմ հոգւով և անկեղծ եռանդով աջակցել ու ջանալ, որ այդպիսի իշխանութիւնը զարգանա, պայծառանա առա-ջանա և իր իշխանութիւնը տարածէ իրենց կեղեքիչների, հարստահարողների, հալածողների և բարբարոս տանջողների վրա։

44. Այս քարոզութիւնների տարածուելուց և ամէն կողմ քարոզուելուց յետո, Բաբինները իրենց ձեռքի բոլոր զէնքերը ցրուեցին, խաղաղութեան զէնքով—համբերութեամբ զինուեցան և յաւելեայն տարածեցին իրենց վարդապետութիւնը։ Մի տաս-նեակ տարի այլ ևս չկրկնուեցին արիւնահեղութիւնները, թէև մասնակի հալածանքը, տանջանքը, կողոպուտը անպակաս էր,

բաբիները ենթարկւում էին անարգանքի, զրկանքի, բայց որևէ ընդդիմութիւն չնկատելով, ամէն բան շուտով վերջանում էր։ Բայց այս հլու հպատակութիւնն և ծայրահեղ համբերատարութիւնը դարձեալ չօգնեց, նրանց չփրկեց։ Իսֆահանցի երկու եղբայր՝ Սէյիդ Հասան և Սէյիդ Հիւսէյն 18,000 թուման (մօտ 50,000 րուբլի) պահանջ ունէին քաղաքի առաջին կղերականից՝ Իմամ-Ջումա Միրզա-Հիւսէյնից, որը պատրւակներ էր փնտռում այդ գումարը կլանելու։ Նա մատնեց երկրի կառավարչապետին, թէ այդ Սէյիդ եղբայրները բաբիական են, նրանց տներում ժողովներ է կատարւում, քարոզութիւններ է լինում հակառակ շիական վարդապետութեան։ Իսկոյն սկսեցին քննութիւնը, կալանաւորեցին եղբայրներին, կեղեքեցին, կողոպտեցին, տուն ու վաճառատուն աւարի մատնեցին, ցրւեցին և նրանց էլ զարհուրելի տանջանքներով սպանեցին (1295 թ. հիջ. 1879 թ.), որոնք մինչև մահ սիրով, համբերութեամբ դիմացան ամէն մի տանջանքի։ Այս վէրքը թէև շատ խոր խոցեց Բէհայի սիրտը, բայց նա դարձեալ անվրդով կրկնեց—սիրով ու համբերութեամբ տանել այդ տանջանքները և զինել համոզիչ լեզւով։ Ցաւում էր, որ խեղճ եղբայրների հարիւր հազար թումանի կարողութիւնը անիրաւաբար փչացրել էին աւազակաբարո պաշտօնեաները և նրանց անմեղ արիւնով ոռոգել, ներկել իրենց դանակը, բայց կրկին ու կրկին պատւէր էր գրել և շրջաբերական տարածել, որ և ոչ մի դէպքում, ոչ մի պարագայում չզինուել, չըդիմադրել դահիճ-հալածողներին։ Միայն համբերութեամբ թշնամիներին դիմաւորելը անչափ դժւար լինելով, հետևողները անվերջ դիմել, բացատրութիւններ և արտօնութիւններ էին խնդրել, բայց անողոք դատաւորը վճիռը չէր փոխել։

45. «Ալէմ» ընդհանրական թղթի յառաջաբանի աւանդ-

ներից առանձ երկքերորդը լրացնում է այս պակասորդը և միշտ կարող է բաւարարել Բէհայիների այս պահանջը։ Բէհան օրէնսդիրը նրանց տուել է մի ելք, մի ուրիշ ճանապարհ, որով նրանք՝ առանց դուրս գալու իրենց օրէնքի սահմանից, կարող են ձգտել հաստատելու աշխարհային իշխանութիւն, իրենց ձեռքն առնել եւ երկրի վարչութիւնը։ Այս յօդուածով, համաձայն «Քիթաբի-Ագդէսի» որոշուած զուտ կրօնական խըն-դիրների, աղօթքը, ծոմապահութիւնը, յաւիտենականութեան վարդապետութիւնը և ուրիշ հոգևոր հարցերը անփոփոխ հը-րատարակելով քաղաքական-վարչական գործերը ամբողջապէս յանձնում է ժողովրդից ընտրուած «Ռիջալի-ժողովին»։ Պետա-կան, վարչական, տնտեսական, արդարադատական, վերա-տեսչական բոլոր գործերը յանձնելով այս ժողովին, սա ինքն-ըստինքեան դառնում է մի զուտ քաղաքական մարմին, ան-ջատ կրօնական-կանոնական օրէնսդրութիւնից, որը սահման-ուած է գրաւոր և պահպանելու է անփոփոխ։ Այդ աւետիքի մէջ բառացի կերպով որոշուած է, թէ—«Աշխարհային քաղա-քացիական գործերի համար անհրաժեշտ է ամէնօրեա համար նորանոր հրամաններ, ամէն րոպէի համար նորանոր վճիռներ, համայն ժամանակի—դարի պահանջին»։ Հետևաբար «Ռիջա-լի-ժողովը» ինչպէս գործադիր, նոյնպէս օրէնսդիր մարմին է կազմում քաղաքացիական բոլոր խնդիրների համար։ Հրամայ-ուած է այդ ժողովի անդամներին ամէն մի որոշման ժամա-նակ որոշ «օգտակարութիւն» աչքի առաջ ունենալ։ Եւ, որ ամենագլխաւորն է,—«Այդ անձնաւորութիւնները, որոնք Աս-տուծո սիրո համար պիտի կանգնեն, նրա լիազօրներն են, Աստուծո աներևոյթ ներգործութիւնով ներշնչուած պիտի կա-յացնեն իրենց որոշումները։ Սրանց կատարեալպէս հնազան-դութիւնը ամէն մի հետևողի համար պարտաւորեցուցիչ է»—

Աստվածային պատգամով։ Շատ պարզ է, որ ժողովրդից ընտրված այս ժողովը, որպես օրենսդիր մարմին, կարող է ինչպես ադմինիստրական, նույնպես քրեական, քաղաքական, վաճառականական, ուսումնական, հանրային, համայնական օրենսդրություններ խմբագրել, հաստատել, հրատարակել, որի վճիռներին—որոշումներին անպայման պարտավոր են հնազանդվել և գործադրել Բեհականները։ Ուստի «Ուիջալի-Ադլը» իր անսահման իրավունքով, որ բղխում է աստվածային ներգործությունից, ներշնչումից, պետական, հասարակական օրենքներ խմբագրելիս կարող է իհարկեն և ինքնապաշտպանության վճիռ արձակել, և պետության հին կարգերը փոփոխելու և կարևորները սահմանելու, պետական յեղափոխություն յառաջացնելու։

46. Ինչպես պատմում են ականատեսները, որոնք երկար ժամանակ Բեհայի ներկայությանը եղել են աքսորավայրում. Աքքայում, նրա ոգին երբեք չէ ընկճվել, նա անվերջ պահպանել է իր թարմությունը և վեհությունը։ Նա որքան որ սիրալիր է եղել իր հետևորդներին, այնքան էլ անմատչելի՝ օտարներին։ Աքքայում նրան օտարականներից շատ քչերն են կարողացել տեսնել և միայն Անգլիացի դոքտոր Եդուարդ Բրովնէն է ընդունել իր ներկայութեան. որը հրատարակեց նրա քարոզությունների բովանդակությունը և գործերը։ Ավանդությունը հաստատում է, որ Մէհմէդը հետևորդներից եղած որևէ հարցի պատասխանը յաճախ մի քանի օր ետաձգում էր մինչև ներշնչվելը, այն ինչ Բէհան ստացած նամակի, կամ առաջադրված հարցի պատասխանը անմիջապես տվել է, որոնք իսկույն արձանագրել և պատճէնները ուղարկել են կարևոր տեղեր։ Չնայելով որ այսպիսի գրությունների թիվը սահմանակ հազարից ավելի է, բայց դեռ ևս և ոչ մի նամակ

որեւէ բառով չի հակասել, թէ գրած ահագին հատոր պատգամներին եւ թէ իրար: Ամբողջ քսանհինգ-երեսուն տարւան ընթացքում գրած օրէնսգրքերի, թուղթերի եւ հրամանագրերի մէջ որեւէ հակասութիւն մինչ օրս չէ տեսնուած, այն ինչ Ղուրանի 114 սուրաններն իրար հակասում են եւ վերջինները նախորդների փոփոխութիւնները եւ լրացնող մասերն են համարւում: Պատմում են ականատեսները, որ Բէհան ամբողջ ժամերով անվերջ ման էր գալիս իր դահլիճում, անընդհատ թելադրելով, իսկ Միրզա-Աղաջանը մի անկիւնում նստած սղագրութեամբ, զարմանալի արագութեամբ նրա շրթունքներից թռած ամէն մի բառը իսկոյն արձանագրում էր եւ ապա ազատ ժամերին սրբագրում: Երբեմն երեսուն, քառասուն ժամ անընդհատ թելադրել է Բէհան, իսկ Միրզա-Աղաջանը առանց տեղից բարձրանալու արձանագրել է, մեքենայական արագութեամբ: Այս պարագաները ստիպում են ենթադրելու, որ Բէհան մեծ ոյժ է ունեցել ներշնչւելու եւ ներշնչելու: Այս պարագան աւելի հաւանական պիտի թւի, եթէ վերեւ յիշւած միապետների թղթերի մէջ արձանագրւած կանխասացութիւնները աչքի առաջ բերենք, որոնք կատարւեցան ժամանակին: Նա անչափ աներկիւղ եւ ինքնավստահ է եղել: Երբ զօրանոցում եղած ժամանակ թուրքերը թնդանօթները ուղղել են Բէհային եւ հետեւորդներին ռմբակոծելու, սարսափը սփռւել է ամէնքի սրտում, Բէհան ուղղւել է դէպի գնդակը եւ հրամայել է Միրզա-Աղաջանին.—«մի վհատւիր, նըստիր եւ գրիր»: Ու թելադրել է նրան մի ահաւոր գրւածք: Բէհայի գրւածների ոճը, ձեւը, բովանդակութիւնը եւ կանխասացութիւնները մեզ ստիպում են մտածելու, որ նա դրականապէս համոզւած էր, թէ իր շրթներից խօսում էր Աստուծո բանը, որ ինքը ուղարկւած էր, իբրեւ կոչումն էր քանդել

հին կարգերը և սահմանել նորերը: Նա սաանից զգալու բնածին պայծառատես, մագնիսաիկ-հիպնոտիստ էր: Մի անգամ Թաւրիզեցի, Մարաղեցի ուխտաւորներ որոշում են իրենց մտքում, թէ Բէհային ներկայանալիս, եթէ նա խօսի իրենց հետ թուրքերէն, այն ժամանակ անպայման հաւատան, որ նա անյայտից է ներշնչւում ամէն պարագայում: Երեք հոգի երբ միասին մտնում են Բէհայի դահլիճը, նա սկսում է.—«Խօշ գէլդիգ, Սաֆա գէլդիգ, ամա Թուրքի դիլի՝ չէհէննէմ դիլիդիր, Լիսանի Արաբի խաս...»

Ուխտաւորները կարկամումեն իրենց մտածած փորձի և կասկածների առթիւ.

47. Համաձայն Բաբի և Բէհայի վարդապետութեանն, Բէհայինները դաւանում են, որ տիեզերքի տէրը՝ Արարիչը և բոլոր զօրութիւնների անսահման հրամանակալը Աստուած է, որ ամենակալ է, ամենագթած և ամենագէտ. Նա ոչ սկիզբ ունի, ոչ էլ վերջ, ինչպէս նրա ստեղծած տիեզերքը: Գոյութիւն ունեն հրեշտակները և դևեր, միայն մարդկային կերպարանքով և ապրող մարդերի շրջանում, որպէս կատարեալ մարդ, սաանից զգալու թէ իրանք դև են, կամ հրեշտակ: Երկիրը և նրա բուսական ու կենդանական թագաւորութիւնը առաջացել է հիւլէներից, զարգացել է աստիճանաբար անհուն դարերից ի վեր, աննկատելի գոյութիւններից հասել է մինչև մարդկային կատարելութիւնը: Աստուած ստեղծել է ամէնից առաջ—Բանը, որն ինքն է,—իւր խօսքն է, իւր էութիւնն է, այդ բանը ուղարկել է—իւր խօսքը հասցրել է մարդկութեան մարգարէների բերանով, որոնք կարգեր են սահմանել, օրէնքներ են դրել համաձայն գերագոյն ներշնչման, Աստուածային ոգու ներգործութեան, որոնք խոստացել են մարդկային ազգին, թէ ինքը՝ Աստուածային հոգին էլ

յայտնուելու է աշխարհին։ Ինքն Աստուածային հոգին անդրադարձաւ Բէհայի սրտում և նրա շրթունքներից քարոզեց բանը, հիմնեց օրէնքը, հաստատեց կարգերը, սահմանեց պարտականութիւնները։ Աստուած մի է, ոչ որդի, ոչ զուգակից, ոչ հաւասարակից, ոչ էլ ստորադաս չունի։ Բէհան սոսկ մարդ էր. մարմինը մարդկային—հողային, ինչպէս բոլոր արարածներինը, միայն Աստուածային հոգին այնտեղ բնակելով, Բանը քարոզեց մինչև կտակն աւանդեց Թողեց համարձակ (28/16 մայիսի 1892 թ.), խոստանալով հազար տարի յետո մի մարգարէ ուղարկելու կրօնը վերանորոգելու և հինգ հարիւր հազար տարի յետո կրկին մարդկութեան յայտնուելու։ Աստուածութիւնն անմարմին է, մարմնաւորութիւնն էլ չի կարող Աստուածանալ։

48. Աքէի զօրանոցից դուրս գալուց յետո, Բէհան բերդից կէս փարսախ հեռաւորութեան վրայ մի կալուած գնեց, Կասրի-Բահչէ անունով, որտեղ առանձնացաւ ընտանիքի և մտերիմների հետ։ Նա հազիւ էր կալուածքից դուրս գալիս, իսկ եթէ բերդ գնալու կարիք էր լինում, նա ձիաւորւում տանից դուրս էր գալիս արևը մայր մտնելուց երեք-չորս ժամ յետո, որդիների ուղեկցութեամբ և գիշերն էլ անպատճառ վերադառնում էր։ Տանը կեանքի մեծ մասը անցկացրել է իւր դահլիճում, ուր թելադրում, կամ գրում էր պատգամները և ընդունում էր հետևորդներին։ Շատ էր սիրում նոյնպէս իւր պարտէզը, խիտ ծառաստանը, որի շուքի տակ յաճախ, և շրջակայում քարոզում էր ունկնդիրներին։ Աքէ մտնելիս առաջին անգամ նա իջաւ նաւից Քարմէլ լեռան ստորոտը, որտեղից անմիջապէս լեռան վրայ բարձրանալով մեծ հաճոյք ստացաւ գեղանկար տեսարանից, ընդարձակ հորիզոնից, որից շատ շուտ իջնելու և զօրանոցում բանտարկուելու էր

պարտաւորւած։ Առանց յատուկ թոյլտւութեան ոչ ոք իրաւունք չունէր նրան ներկայանալու, հեռաւոր աշխարհից եկողները նախ պիտի գրաւոր թոյլտւութիւն ստանային, որ կարողանային գալ նրան տեսնել։ Առանց կանխօրէն թոյլտւութեան գնացողները, առանց տեսնելու էլ վերադարձել են։ Նրա ուտելիքը, հագնելիքը թէև շատ պարզ էր, բայց աշխարհի ամէն կողմից հետեւողները նրան ուղարկում էին ամենաընտիր բերքերը և նուրբ գործւածքները։ Աշխարհի ամէն կողմ բէհական օրիորդների ձեռագործ ամենաընտիր կերպասները, կտորները և գորգերը ուղարկում էին Կարի-Բահչէ։ Չինաստանից ընտիր թէյ, Մոքից՝ սուրճ, Պարսկաստանից՝ քաղցրաւենիք, Հնդկաստանից՝ համեմունք, Միջագետքից կարագ, կղզիներից ձիթապտուղ-ձէթ նա այնքան շատ էր ստանում, որ բաժանում էր ոչ միայն հետեւորդներին, այլ Աքքէի թուրք պաշտօնականներին և բանտարկւածներին էլ մաս էր հասցնում։ Ամէն օր նրա սեղանատնից մի քանի «խոնչա» կերակուր պիտի գնար Աքքէի կալանաւորներին, աքսորեալներին, որոնց յատկապէս իրայիններին խնամքին էր յանձնել։ Նա ստացածները չէր պահում և ամէն նւէր բաշխում էր պատահածին։ Մի անգամ նա Պարսկաստանից ստացաւ մի ամենաընտիր սեղանի սփռոց, որը խիստ ասեղնագործւած էր ընտիր նկարներով մետաքսի թելերով։ Այդ գործի վրա ամբողջ երկու տարի աշխատել էին մի խումբ օրիորդներ։ Ճաշակի և փողի տէր մի ամերիկացի դրան կարող էր հազար ոսկի տալ առանց խորհելու, այն ինչ Բէհան նւէր ուղարկեց բերդի «Կոմանդանտին»։ Բէհայի լուսանկարը գոյութիւն չէ ունեցել, նրա մի օրինակ պատկերը նկարւած է, այն էլ դէմքի, աչքի գլխաւոր գծերը քօղի տակ և գտնւում է Աքքէում։ Ինչպէս նկարագրում են՝ միջահասակ, վայելչակազմ, գեղադէմ, սև

աչքեր և մազեր, սպիտակ մօրթ երկնային, ճոխ մօրուք ու մազեր ունէր։ Նա ամէն առաւօտ վաղ մաքրելուց յետոյ, կարճ խոյրը (պարսկական գտակ) ծածկում և նստում է իւր գործի սեղանի առաջ դրած յատուկ թիկնաթոռին, որին ոչ ոք չէր կարող խանգարել, մինչև ինքը չպահանջէր։

Ինչպէս պատմում է Միրզա-Ջէլիլը, որի անւանը Բէհան տւած է «Իշրագաթ» լոհը, որը մնացել է մօտ երկու ամիս Կասրի-Բահչէում, Բէհայի դէմքը այնպիսի քաղցրութիւն, այնպիսի քնքշութիւն էր արտայայտում և այնքան գրաւիչ էր, այնպէս խոր ակնածութիւն էր ներշնչում, որ ներկայացողը չէր կարողանում մի քանի տեսութեամբ, մի քանի ժամով բաւականանալ։ Շա՛տ շատերը մի քանի անգամ գնմել և նորից թոյլտւութիւն են խնդրել Պարսկաստանից, Հնդկաստանից, Թուրանից նրան կրկին ու երեքկին անգամ տեսութեան գնալու։ Նա անչափ համեստ էր վարւում ներկայացողների հետ և սիրալիր կերպով հարցնում նրանց վիճակը։ Մի անգամ իւր ներկայութեան մի յայտնի հնդիկ հետևորդի ընդունելիս, երբ վերջինս չոքեց ու երկրպագեց, Բէհան նրան արգելեց ու ասաց.—«Երկրպագեցէք միմիայն Արարչին, Ամենակալին, որ երկնքումն է, միայն նա է երկրպագելի, իսկ այս բոպէին ձեր դէմ նստած է մի բարեկամ, ձեզ նման համահաւասար հողից ստեղծւած»։

50. Բաբը և ապա Բէհան ահաւոր աշխատութիւնների մէջ հազարից աւելի անգամ կրկնել են և պախարակել են իսլամի «Հադիսները» գրողներին, իբրև Անէրեւոյթի հետ յարաբերութիւն ունեցող պատգամներ տւողներին. մանաւանդ մեկնիչներին (միւրէին), որոնք Ղուրանի ամէն մի նախադասութիւնը և իւրաքանչիւր բառը 72 կերպ բացատրելու էին տքնել։ Այսպիսիներին ընդհանրապէս «Ջիահի-չանիէ» (հերձ-

ւածական այլանդակութիւններ) անուանն են տուել և ամենախիստ հրամաններով պատուիրել են հետեւողներին չընդօրինակել հին սխալը։ Քիթաբի-Աղդէսում յատկապէս և ուրիշ գրուածներում անհամար անգամ կրկնուած է, որ բաբիները գրութիւնները բառացի կերպով, սոսկ նշանակութեամբ պէտք ընդունեն, լոկ նրանց պարզ իմաստով պիտի առաջնորդուեն, երբէք մեկնիչի, գերբնականից ազդուած բացատրողի չըպիտի լսեն։ Աբդիւլ-Վահաբի լօհում գրուած է, որ վերջ է տրուած պատուիրաններին (լօհ) և հրամաններին, եթէ սրանից յետո մէկը գայ, դժոխքի (նար) պատգամները բերէ, հազարաւոր նշաններով և հրաշքներով, մի լսէք, մի հաւատաք, դրանցից երեսները շուռ տուէք: Ազատութիւն տրուած է ամեն գիրք կարդալու, որքան էլ հակառակ բովանդակութիւն ունենա, ամէն լեզու սովորելու, ամեն գիտութիւն ուսումնասիրելու, միշտ յառաջադիմելու համար ամէն մի գիտութեան տաճար յաճախելու, բայց նոր յայտնութիւն, բայց նոր մարգարէ, նոր առաքեալ, նոր յարաբերակից մեկնիչ ընդունելու իրաւունք չունեն, թէև դրանց հալածելու էլ իրաւունք չունեն։ Այս կրկնութիւնների իսկական և գլխաւոր պատճառն այն էր, որ հետեւողների մէջ այնպիսի հերձուածներ ու աղանդներ չը բարձրանան, ժողովուրդը չբաժանեն. կռիւների, վէճերի, առիթ չդառնան, և որ ամենագլխաւորն է վարդապետութիւնը չայլանդակեն։

51. Բէհան մահուանից առաջ գրեց իւր կտակը, որտեղ նա կրկնումէ.—«Այս ճնշուածի միակ նպատակը ատելութեան և ոխակալութեան հուրը հանգցնելն է... Գուցէ աշխարհի մարդերի սրտերը համաձայնութեան ճրագով լուսաւորուին և իսկական խաղաղութեան հասնեն...» Յետոյ աւելացնում է.— Ոչ խարհի մարդիկ, Աստուծո կրօնը սիրո և միաբանութեան

համար է սահմանուած, այդ բանը երկպառակութեան առարկա մի դարձնէք... Վերջը շարունակում է.—Աստուծոյ կտակըն այս է. ճղները (ազգան), ազգակիցները (աֆնան), բոլոր շաղկապուածները պէտք է իրենց հայեացքը ուղղեն դէպի «մեծ ճիւղը» (գուսնի ազամ)։ Աչքերդ դարձրէք դէպի մեր ուղարկած սուրբ-գիրքը (Քիթաբի-ագդէս)․ Երբ կանդրադառնա միացման ծովը և կլրանա սկզբի և վերջի գիրքը, Ալլահի կամեցած կողմը ուղղեցէք (ձեր աչքերը), որը հին արմատի շառաւիղն է։» Այս այաթի (Համաւածի) նպատակը «Մեծ ճղին» (Ղուսնի Ազէմ) է ուղղուած։ Նոյնպէս մենք հրատարակեցինք մեր ողորմած պատգամով և Ես—ամենաողորմածաբար և առատաբաշխաբար։ Ճշմարիտ Աստուածը նախասահմանեց «Բարձր-ճղի» (Ղուսնի Աքբէրի) կարգը՝ նրա կարգից յետոյ, որովհետև նա—Հրամանակալ և Ամէնագէտ է։ Մենք Աքբէրի կարգը Ազէմից յետոյ գասաւորեցինք, հրամայեցինք Ամենագէտի, Վերահսկողի հրամանով։ Ամէնքից անհրաժեշտ է սէր դէպի շառաւիղները (Ագսան), բայց Աստուած չի սահմանել նրանց բաժին հասարակութեան գոյքից։»

Կտակի այս մասը դարձաւ հակառակութիւնների և վէճերի պատճառ, հակառակ օրէնսդրի անհուն ջանքերին. որով՝ բաժանեցին բէհականները երկու մասի, ճիշտ այնպէս՝ ինչպէս Մահմէդից յետոյ Շիաները բաժանեցին Սիւննիներից։ Բէհան հրամայեց, որ իւր արմատից ճղնաւորուածները և շաղկապուածները, Բաբի արիւնակիցների հետ իրենց հայեացքը նախ ուղղեն դէպի «Մեծ-ճիւղը» (Ղուսնի-Ազէմ), որին գլխելը Ալլահից նախասահմանուած է, իսկ հետևորդները այդ հրամանը կատարելով, հպատակելով, ինչ ինչ նախասահմանեալ արտօնութիւններ են վերագրում «Ազէմին»։ Ազէմի ուսէ հոգևոր իշխանութեան դէմ բողոքում է

Աքբէրը, որին երկրորդ կարգին էր դասաւորել օրէնսդիրը։ Աղէմի հետևորդները պնդում են, որ իրենց վրա կարգած վերատեսչին նախասահմանութիւնից իրաւունք է տուած դիմողներին բացատրելու, որոշելու Գրքի իմաստը, հրամաններ արձակելու կրօնական խնդիրներում։ Իսկ Աքբէրը ժխտեց այդ արտօնութիւնները և Աղէմի ընթացքը օրինազանցութիւն յայտարարեց։

Աքբէրի այս քայլը Բէհայի կտակի ընդդիմութիւն համարելով, Աղէմի հետևողները Աքբէրին անուանեցին կտակազանց։

52 Վէճի իսկական պատճառը պարզելու համար, կարևոր է հերձուածի պատմութեան և անձինքների հետ ծանօթանալ:

Պէտք է իմանալ, որ Բէհան երեք կին է առել։ Առաջին կնոջից նա ունի մեծ որդին՝ Աբաս էֆէնդին, որը յայտնի է Ղուսնի-Աղէմ,* կամ Աղէմ մակդիրով և մի աղջիկ՝ Վարգայի-Քիբրէ անունով։ Երկրորդ կնոջից նա թողեց երեք որդի՝ Մէհմէդ-Ալի էֆէնդին, Ղուսնի Աքբէր, կամ Աքբէր մականունով է յայտնի. Զիաուլլահ, որը հօրից մի քանի տարի յետո մեռաւ. և Բէդիուլլահը։ Այս կինը ունեցաւ երկու էլ աղջիկ՝ Ֆրուղիէ և Սամադիէ անունով: Իսկ երրորդ կինը, որ առաջի կնոջ մահուանից յետո է առել, միայն մի աղջիկ ունեցաւ։ Եղբայրները Աղէմ ու Աքբէր տարբեր մօրից ծնած լինելով, նրանց բնականաբար յարաբերութիւնների մասին կարելի է երևակայութեամբ անգամ գաղափար կազմել, եթէ մարդ արևելքի բազմաթիւ ժողովուրդի առանձին կեանքի մասին որոշ ծանօթութիւն ունենա։

Աքիէա աքսորավայրում ապրած միջոցին, Բէհան կառավարութեան դռների վերաբերեալ բոլոր գործերի վարչութիւնը, պաշտօնակալների հետ յարաբերութիւնը յանձնել էր Աղէմին։ Աքբէրը միշտ հօր մօտ Կասրի-Բահչէ ապրելով, ու-

ուսումնասիրել էր նրա գրութիւնը։ Ոչ միայն բոլոր թղթակցութիւնների հսկողութիւնը նրան էր յանձնուած, նա կարդում էր բոլորը, ընդօրինակել տալիս, այլ կարևորագոյնները մեծ մասամբ ինքն էր գրում հօր թելադրութեամբ։ Այնպէս որ՝ վարդապետութեան, կրօնի էական խնդիրներից ոչ մի բան Աքբէրի աչքից խոյս չէ տուել, նա շատ հմտացել է. այն ինչ Աղէմը Աքքէայի բերդում ապրելով՝ անտեղեակ է մնացել գրութիւններից շատերին։ Մինչև անգամ Բոմբէյից էլ Աքբէրն էր գնացել հօր գրուածների տպագրութեան հսկելու, սրբագրելու։

53. Բէհայի մահուան իններորդ օրը, նրա որդիները, կինը, աղջիկները, ազգակիցները և նշանաւոր հետևորդները ժողովեցան հանգուցեալի գերեզմանի սրահում։ Աղէմի նշանի համաձայն կարդացին հանգուցեալի կտակը (Քիթաբի Ահդի) հրապարակով։ Աքբէրն ու հետևորդները պնդում են, որ կտակի վերջարանի վրայ Աղէմի կարգադրութեամբ կպցրա թուղթ էր փակցուած, որ այդ մասը չը կարդացվի և ներկա գտնըւողները չըմբռնեն բովանդակութիւնը։ Տասներկու տարի է, պահանջում են դուրս հանել կտակը, կամ լուսանկարով պատճէնը ցրուել հետևորդների մէջ, բայց չեն կարողանում յաջողութեան հասնել։ Աղէմը, պատճէնը կամ լուսանկարը ցրուելը վնասակար և անժամանակ է համարում և ասում է, որ ձեռագիր և տպագրուած պատճէնները բաւական է։ Եւ այս խնդիրը հակառակութեան սկզբնապատճառը դարձաւ, հերձուածի ամենագլխաւոր առիթը։

Աղէմի հետևորդները իրենց նամակներով ամեն կողմ տարածեցին, թէ—,,Աբբաս Էֆէնդին Բէհայի աստուածային ոտն է վերայայտնութիւն է“։ Եթէ Բէհան սեփական լոյսով էր բոցավառւում և լոյսը սփռում աշխարհ, Աղէմն էլ հօր լոյսով

պայծառացած Բէհայի հետեւողներին լուսաւորելու է։ Բէհային Արևի էլին նմանեցնում, Աղէմին՝ Լուսնի։ Մինչև անգամ Աղէմը Ամերիկա ուղարկած նամակներում «Իբն-Ուլլահ» (Որդի-Աստուծո) և «Մէսիա» է ստորագրում, որը աւելի բորբոքեց հակառակորդներին։ Այս առթիւ եղած հարցերին Աղէմը պատասխանեց, թէ—«ինքը ծառաների ծառան է և այդ ծառայութիւնը աստուածութեան Ովկիանի հետ չի փոխի»։ Բայց այս դարձւածով իր „Գերընտրանութեան" յաւակնութեան ձգտման փաստը տեսեց հակառակորդներին։ Աղէմը առաջ գնալով իր երեւակայական բարձունքներով հետեւորդներին գրեց, թէ—«Մովսէսը, Մարգարէները, Յիսուսը, Մահմէդը, Բաբն ու Բէհան իրենց գրուածներում ազգերին իմ «ԴԱՇՆ ԵՆ ԿՏԱԿԵԼ» (Ահդը—Միսաք)։ Նա պահանջեց հետեւորդներից, որ իրեն դիմեն չը հասկացածները բացատրելու և մեկնելու։

54. Բէհան Բացարձակապէս հրամայած է.—„Ով որ ինքն իրեն Աստուածային յայտնութիւն, մարգարէ, գուշակ, Գերագոյնի հետ յարաբերակից և նրանից ներշնչուած յայտարարէ. նա զրպարտիչ է, ստախօս» (միւֆթերի քէզզար)։ Եթէ որև է մէկը հազար տարուց առաջ իրեն երկինքից գերագոյն իշխանութիւն շնորհուիլը հրատարակէ, նա զրպարտող է։ Այս փաստերի հիման վրա Աքքէլիների կողմից մի բրօշիւր հրատարակեցին „Իթթիանի Դէլիլ" վերնագրով, որով հերքեցին Աղէմի յաւակնութիւնները։ Սրա վրա բորբոքուած Աղէմը մի հրաման ցրւեց շրջաբերականներով, որ ոչ ոք հօրը գրուածներն անգամ իրաւունք չունենա կարդալու, եթէ Աղէմը՝ ինքը իր ստորագրութիւնով, կամ կնքով դրանց իսկութիւնը չէ վաւերացրած։ Բէհայի գրութիւնների դէմ տրուած այս հրամանը՝ գրգռումները ծայրայեղութեան հասցրեց. կողմերը յայտնապէս թշնամացան և այս արկածները տարածւեցան

Իրանի ու Թուրանի հետեւողների մէջ 1898 թ։ Մի քանի դըժուարութիւններից և իրար դէմ կատարուած մղթակցութիւններից յետո, երբ ինքը Աքբէրը «Հադիգաթը—Թովհիդ (ճշմարտութեան միութիւնը) գրուածքով դիմեց հետեւողներին, Աղէմը հրամայեց իր երկրպագուներին իսպառ յարաբերութիւնները դադարեցնել Աքբէրից և նրա հետեւողներից, ինքն էլ կտրեց յարաբերութիւնը եղբօր, մօր և քոյրերի հետ։ Սրա վրա Աքբէրը տուեց իւր որոշումը՝ յանձնելով հետեւողներին Բէհայի „Խամուլլահի Ջէմալի“ լոհը (պատգամը)։

„Ով՛ աշխարհի ազգեր, այս յայտնութեան առաւելութիւնը նախորդ մարգարէութիւններից և առաքելութիւններից այն է, որ ամէն բան, ինչոր թշնամութեան հակառակութեան, խռովութեան և ատելութեան առիթ էին ներկայացնում, ես գրքերից օրէնքներից ջնջեցի։ Այն ամէնը ինչոր համերաշխութեան, համաձայնութեան և սիրո է վերաբերում, արձանագրեցի և հաստատեցի։ Երանի՛ կամքս գործադրողներին։ Եթէ տեսնեմ ճղներիցս (ազգան) մէկին իմ դրած օրէնքների և պատուիրանների հակառակ ընթացքը, կըհեռացնեմ, կը վանդեմ իմ դռնից։ Նա, ով որ պատուիրանի չափից հեռանա, նա արտաքսուած է» (մէրդուդ։)։

Այս վճռով Աքբէրը Աղէմին աստիճանից ընկած հրատարակեց։ Աղէմն էլ, որի ձեռքումն էր հայրական, հասարակական և պետական Գոյքը, եկամուտները, դադարեց հարազատների օրըստօրական ապրուստը հայթայթելուց, ցանկալով սովով նրանց ընկճել։

55 Այս բռնութեան դէմ Աքբէրի հետեւողները մեղադրեցին, թէ Աղէմը որբերի. այրիների, տնանկների յատուկ ողորմութիւնները շռայլում է ըստ քմաց, շնորհներ է անում, կաշառներ է տալիս Թուրք կառավարութեան պաշտօնակալներին,

բաղուլի մէջ կալուածներ է գնում փոխի անունով, այն ինչ Բէհայի բացարձակ պատուէրի համաձայն նա իրաւունք չունի հասարակական գանձից իւրացնելու, փչացնելու: Մանաւանդ նա զրկել է հարազատներին, մայրերին և եղբայրներին, որոնց յարգանքը ամէնի համար պարտաւորեցուցիչ է: Աքքէյի հետեւորդները մեղադրում են Աղէլին հետեւեալ կէտերում:

Ա. Աղէլը իրեն վերագրելով աստուածային կտակի դաշը (Ահդը Միսաք) նա յաւակնում է (рчetenqчe) մի նոր յայտնութիւն ներկայանալ: Այն ինչ Բէհայի բացարձակ հրամանի համաձայն յայտնութիւն չի կարող լինել:

Բ. Աղէլը իրեն հռչակելով Ամերիկայում Իբն-Ուլլահ (Աստուածորդի) և Մէսիա, նա ձգտում է Աստուածային աստիճանի բարձրութեան, որով մեղանչելով, դառնում է բազմաստուածեան (մուշրիք):

Գ. Աղէլը իրեն վերագրելով Մեկնիչի (միւբէյին) գերը, նա ակզբնապատճառ է դառնում մեկնիչների ոտնձգութիւնների, հակառակ Բաբի և Բէհայի պատուիրանների և կրօնի էական մասին:

Դ. Աղէլին մեղադրում են Բէհայի ընտանիքի անդամների դէմ բարձրացրած հալածանքի և ճնշումների համար, որով նա հակառակել է հօր կամքին, սերմանելով ատելութիւն, զրկանք, տանջանք, և անարգանք:

Ե. Աղէլին օրինազանց են համարում, որ նա արգելել է հետեւորդներին ազատ կարդալու հօրը բոլոր գրութիւնները:

Զ. Աղէլին հրապարակել են փչացնող, քանի որ նա զրկել է ժառանգորդներին և ցրում է համայնքի գոյքը քմահաճոյքին համեմատ:

Է. Աղէլը Բէհայի գրութիւնների հակառակ, անարգել է Էօմէրին, նրա «Գիրքը մեզ բաւարար է» (Հասբինա քիթաբ

Ուլլահ) խօսքի համար։ Նախատել է Մահմէդի կնոջը՝ Այիշէին, այն պատճառով, որ նա հալածել է Ալիին՝ առիթ ունենալով վերջինիս խօսքը, «—Ես Աստուծո կենդանի խօսքն եմ (էննա քէլամուլլահի էննաթիք)»։ Այս երկու պարագայումն էլ Աղէմը հօր վարդապետութեան հիմունքն է խախտել, քանի որ Բէհան էլ միշտ կրկնել է, թէ —«Օմէրը ճշմարտութեան պաշտպանն է եղել, իսկ Ալին երևակայական առասպելների աղբերակը։» (Տես «Լոհի Թալին»—(Աներևոյթի պատգամ)։

Ը. Աղէմին օրինազանց են համարում, որ նա «բանադրել է եղբօրը՝ Աքբէրին և հրամայել է հետևորդներին, կտրել նրա հետ իրենց յարաբերութիւնները. այն ինչ Բէհան յատուկ պատւիրանով խստա արգելած է «Բանադրանքը», կամ մէկի հետ յարաբերութիւն խզելը։ (Տես «Լոհ Աղէմ»)։

Թ. Աղէմին յանցաւոր են համարում այն պատճառով, որ իր անձնաւորութիւնը հռչակել է «Դաշինքների կենտրոն, կըտակների կենտրոն» (մէրքէզի Միսաք, Ահդը Միսաք)։ Այդ ձըգտումը համարում են հիմնովին հակառակ Բէհայի վարդապետութեան։

Ժ. Աղէմին մեղադրում են, որ նա գրել է, թէ «—Աշխարհի ազգերի ելևմուտի կէտը իր գրիչն է, փառքը իր լեզւից թռած խօսքերը»։ Նա Թէհրանցի ադա Ջամալին գրել է, թէ —«ով որ ազգերին իմ անուան կանչէ, նա ինձնից է։ Մինչև այժմ արեգակը Գառան աստղատանը Բրգի վրա էր. իսկ այժմ Առիւծ աստղատունը մտաւ»։ Որով ուզեցել է իր անձնաւորութիւնը Բէհայից գերազանցել։ Թաւրիզ Միրզա Խալիլին գրել է՝ —«Ես ծառայութեանս հիւլէն Աստուածութեան ծովերի հետ չեմ փոխի, եալլի, եալլի։

Այս պատճառների համար Աղէմի հակառակորդները նրա յայտարարեցին Բէհայի վարդապետութեան հետևողների դասից

«արտաքսւած» և նրա գրութիւնները, որ հետևորդները լոյս են համարում, դժոխքի պատւիրան (Էյվարի Նար)։

56. Աղէմը և հետևորդները մեղադրում են Աքքէրին և նրա հետևողներին հետևեալ կէտէրում.

A. Աքքէրը անպայման չհպատակեց մեծ եղբօրը Աղէմին, որի վրա պէտք ուղղէին իրենց աչքերը բոլորը համաձայն կտակի և սուրբ գրքի։

B. Մեղադրում են Աքքէրին, որ դեռ վեց տարեկան հասակում, հօրը ներկայութեանը մի այնպիսի ընդարձակ լոյս է տեսել, որ ապշեցրել է բոլորին։ Այս լոյսով Աքքէրը առանց սպասելու հօրը համբարձման, ինքն իրեն Գերագոյնի յարաբերակից է յայտարարել։

C, Գրել է Աղէմի դէմ, ապստամբել է Աստւածային յայտնութեան դէմ, հետևորդներից մի մասը բաժանել և աստւածային իշխանութեան դէմ ընդդիմադիր կուսակցութիւն է կազմակերպել:

Այս պատճառներով Աքքէրին Բէհայի վարդապետութիւնից արտաքսւած և ըստ կտակի, Աղէմից յետո, օրօշւած աստիճանից ընկած են յայտարարել։

57 Աղէմի հետևորդները սրան հօրը՝ Բէհայի Աստւածայայտնութեան յարատեւութիւնը համարում են և իրենց ենթադրութիւնը հաստատելու համար դիմում են հետևեալ փաստերին, որը վերցնում են անխտիր, թէ Բէհայի գրւածներից և թէ Աստւածաշնչից: Գլխաւոր փաստը Բէհայի կտակն է, որով պարտաւորւած են աչքերը յառել—ուղղել դէպի «Մեծ—Ճիւղը»—Աղէմը։ «Տիրոջ շառաւիղը (զաւակ) կը լինի երկրի զարդը և փառքը....» Եսայ. Գլ. Դ. յօդ. 2: «Ահա իմ որդին, որին ես հաստատել եմ.... Ահա ես պիտի բերեմ իմ ծառա շառաւիղին...»։ Ybit Գլ. Է. 7—10։ «Ցէսսէի բնից մի շա-

սանից է դուրս գալու մի լեռից...» Ybit Գլ. Ժ. յօդ. 12: «Ահա մի մարդ, անունը շառաւիղ, նա իր արմատից պիտի բուսնի և կը շինէ Տիրոջ տաճարը..»: Զաքարիա Գլ. Զ. յօդ. 12—13: «Եւ այլևս նզովք բնաւ չի լինել, Աստուծո Գառի աթոռը այնտեղ կլինի և նրա ծառաները նրան կը պաշտեն...: Յայտ. ԻԲ. Գլ. 3 յօդ: Եւ ուրիշ շատ շատ օրինակներ:

58. Ալէմի հակառակորդները պնդում են, որ բոլոր այդ մարգարէութիւնները և յայտնութիւնները միմիայն Բէհայի համար են, նա ինքը միակ յայտնութիւն է և նրանից յետո ոչ ոք չի կարող լինել: Իրենց խօսքին ապացոյց բերում են Բէհայի հետևեալ այաթները, որոնք նա տւել է և անթիւ անգամ կրկնել իւր բոլոր գրւածներում:

«Իւր գրւած Գիրքը քեզ չէ՞ բաւականացնում».

«Հին-չինները (հերձեալ) միւշրիք (Բազմաստւածեան—Աստծուն ընկերներ յաւակցնող) են, իրենց մէտատւածեան են երևակայում...: Երևակայութիւնների անկիւններում պզզած իրենց պաշտամունս և բաղառոց էին յայտարարում .:: Վա՜յ նրանց, և վա՜յ այն մարդուն, որ այդպիսի հերձւածի առաջնորդն պատճառ դառնա...: Հազար երկու հարիւր տարի հին հերձւածները իրենք իրենց համարում էին աշխարհի գերազանցութիւնը և արարածների վեհութիւնը, բայց դատաստանի օրը (Բաբի յայտնութեան ժամանակ) պարզւեց, որ նրանք Աստծուց հեռացածներ և նրան անարգողներ են... Երդւում եմ հոգւովս, որ հրամանները լրացան, պատւիրանները կատարւեցան, յայտնութիւնները վերջացան, բայց նենգաւորները (հիլէքեար) պատրաստ են, ինչպէս հնումն էլ շատ կային և տարաձայնութիւններ սփռումեն... Ճշմարտութիւնը արեգակի նման երկինքի բարձունքումն է որոշ: Աշխարհի դրամներից մի դենար չունիմ, որ կարիք լինի կասկածատարի: Եթէ

տանն, թէ հրամանները գործադրելու համար կտակատա-րի կարիք կայ. ատողներն իրենց կողմից մեծ թշնամութիւն են անում դէպի իրենց Արարիչը, որը մշտնջենապէս ձեզ պաշտպանած ու կանգնած է։ Հրամանատուութիւնը նրա անձով շըրջապատուած է և երբէք չի հեռանայ։ Հակառակորդ, ընդդի-մակոյ. կտակատար, մէկնիչ և օրինակ մի ընդունէք ...։»

59. Բէհայի մահուանից անմիջապէս յետոյ, նրա հետևորդները համաձայն կտակին նրան շրջապատեցին և հինգ տարի կռւող կողմերը ջանացին, որ իրենց ներքին վէճը չը տարածուի հետևորդների մէջ աշխարհի շուրջը. ուստի ամէն կողմից ազատ, ամէնքը դիմաւորում էին Աբբաս էֆէնդիին՝ Աղէմին։ Վերջինս հօր կենդանութեան ժամանակից իւր ձեռքումն ունենալով իրենց ամբողջ գոյքը, կարողութիւնը, նրան շրջապատեցին Աքքէի հետևողները և նրա հետ կապւեցան բոլոր շրջէկ պրօպագանդիստները և գաւառական քարոզիչները, որոնց միջոցով Աղէմը ստանում և ծախսում էր հասարակական նպաստները: Աքքէյին շրջապատեցին նրանք, որոնք կատարելապէս ըմբռնել էին բէհական վարդապետութիւնը, որի խտագործելուն նախանձախնդիր և անձնուրաց սպասաւոր դարձան։ Սրանք թէև քանակով փոքր են, բայց զարգացումով և ուղղութեամբ շատ բարձր են կանգնած և տանում են ամէն գրկանք, որ վերականգնեն պարզութեամբ օրէնքի իսկական քարոզութիւնը։ Այս պարագայի մասին բէհան որոշ յոյս ունի, որանք ասում է, իւր մահից յետո հետևորդները իրեն պիտի ուրանան—հեռանան, նրանց թիւը պիտի իջնի երեք հոգու և ապա հետզհետէ լուսաւորելով և ըմբռնելով իւր քարոզութեան ոգին՝ կրկին պիտի վերադառնան, ահաւոր հոսանքով։ Այն բոլոր օրինակներն ու փաստերը, որով իրար դէմ վիճում են բէհայիների երկու հերձուածները՝ եթէ առաջ

բերենք, հարկ կլինի Բէհայի, Բաբի բոլոր գրուածները հաւաքել և հատորներ կազմել։ Դեռ նրանք դիտում են Հին և Նոր կտակարանին, Ղուրանին, որով աւելի բարդւում է խնդիրը։ Մանաւանդ որ այդ վէճերը վերջ չունին, ինչպէս չի վերջացել Սիւննիների և Շիաների տասն և երեք դարի հակաճառութիւնները, և օրէցօր ջողմերը հատ հատ հատորներով ճոխացնում են այդ հակառակութեան գրականութիւնը, արծարծելով հակակրութիւն ու ատելութիւն, հակառակ հիմնադիրների անհուն ջանքերին և քարոզութիւններին։

60. Բէհայի մահւան հինգերորդ տարելիցի օրը, նրա քառանամեայ ծառայողներից ամենագլխաւորը, Միրզա-Աղաջան Քեաշանցին, որին Խադէմ Ուլլահ էին կանչում, որը գրել է Բէհայի թելադրութեամբ նրա գրութիւններից կէսից աւելին, շրջակայ Հէյֆայից, Աքքէից, Խզմէից և ուրիշ տեղերից հաւաքուած երեք հարիւրից աւելի ուխտաւորներին հիւրասիրելուց յետոյ, իրիկնադէմ ոտքի կանգնեց և իւր ներքին վիշտը հետեւեալ կերպով բացատրեց կրօնակիցներին և հետևորդներին:

—«Բարեկամնե՛ր, եղբայրնե՛ր: Մինչ այս կէտին ձեր բոլորի մեղքը վզիս էր, պատճառը, որ պարտաւորուած էի հինգ տարի շարունակաբար լռելու: Լռում էի այս խռովութիւնների և ատելութիւնների առաջը առնելու տենչով։ Այժմ զգում եմ, որ լռութեամբ աւելի սաստկացրել եմ հակառակութիւնները: Ահա այս ժամին պարզում եմ ամէն բան, ձեր մեղքը ձեր վզին թողնելով։ Բէհա Ուլլայից յետո առաջացած բոլոր դործերը, վէճերը, նիստ ու կացը, յարաբերութիւնները ըմնովին հակառակ են նրա նւիրական կամքին և սուրբ գրքում գրուածներին, նրա օրէնքին, դաւանանքին ու հրամանին։ «Կըտակի դաշը» որ նշանակուած է կտակագրում, սուրբ գրքերում և յայտնուած է, վերաբերում է իսկական մարգարէներին եւ առա-

Բեալներին։ Այս բանը Աբբաս էֆէնդիին՝ Ազէմին վերագրելը մեծ սխալ է, յանցանք...։

Այս խօսքի վերա ներս է մտնում Ազէմը, բռնում է ծերունի սպասաւորի օձիքից, մօտեցնում է Բէհայի շիրիմին և անխնա թակել է տալիս սպասաւորների ձեռքով։ Թակի ընթացքում Միրզա Աղաջանը բարձր ձայնով գոռալով շարունակում է.

—«Աղա, Բէհա-Ուլլահը մեզ իր հետ ծանօթացրել է իւր վարդապետութիւններով, քարոզներով սովորեցրել է և հաստատել պատուիրանները։ Սրանից յետո էլ համաձայն իւր վարդապետութեան պիտի քննէ մեր ընթացքը։ Ներկայիս դուք պատրաստ էք, ժողովուրդն էլ ունկնդիր, ես ցանկանում եմ Բէհա-Ուլլահի խօսքերով ձեզ հետ դատի մտնել, մինչև որ ճշմարտութիւնը կեղծուածից և բազմաստուածութիւնը միաստուածութիւնից պարզուի և յայտնուի աշխարհին»։

Բայց Ազէմի սպասաւորները չէին թողնում, որ Միրզա-Աղաջանի խօսքը լսէ ժողովուրդը, անխնա հարուածում էին նրա գլխին, կողին, կրծքին։ Իսկ նա աներկիւղ, անընդհատ գոռում էր, —«Ես Բէհային եմ միայն հաւատում, նրա գրութեանը և գերեզմանին եմ ապաւինել»։

Այս անգութ տանջանքներից փշրուած, հիւանդանում է և եօթը ութը ամիս տանջուելուց յետո մեռնում է Միրզա-Աղաջանը։ Ծերունին տքում էր ոսկորների ցաւից մինչև հոգին աւանդելը։ Քառասուն տարուան Բէհայի հաւատարիմ սպասաւորը և անձնական քարտուղարը այսպիսի զարհուրելի տանջանքով է մեռնում իւր տիրոջ անդրանիկի ձեռքով։ Ազէմը արտաքսում է պաշտօնից և թոշակից զրկում այն բոլոր հին ծառայողներին, որոնք անպայման չէին ընդունում իրեն, որպէս «յարատևութիւն հայրական յայտնութեան»։

61 Ազէմը այն աստիճանի ճնշումներ գործ դրեց և այն-

պիսի մեքենայութիւններ լարեց, որ Աքբէրի հարազատ մօրից փոքր եղբայրը՝ Բէդիհը, որ տասը տարի շարունակ քարոզով ու գրչով խայտառակել էր իր անձը հօրը յայտնութեան յարատեւութիւնը հռչակող Աբբաս էֆէնդիին, պարտատէրներից նեղուած, գնաց ընկաւ իր նախկին նախատած—անարգածի գիրկը, որը՝ Ազէմը վճարեց 500 ոսկի պարտքը և այժմ նրան հաճոյանալու համար, բրօշիւր է հրատարակել հարազատ և տասը տարի ջատագոված եղբօրը՝ Աքբէրի դէմ։ Ինչպէս երեւումէ դեռ ես փողը աշխարհի ամենահզօրն է, քանի որ նա ստրկացնում է վեհ հոգւով դաստիարակուածներին անգամ։

Ազէմը գրաւոր խոստովանութիւն ձեռք բերելու համար, հօր հետեւորդներին ճնշելիս բռնած միջոցների մէջ երբէք խտրութիւն չի դնում։ Բէհայի նշանաւոր հետեւողներից մէկն էլ Զէրէնդի—Միւջթէհիդ Միրզա Մէհմէդն էր, որին անւանում են «Նէբիլ»։ Այս մարդը Բաբիզմի պատմութիւնը գրել է չափական—բանաստեղծութեամբ, յանգերով, որը կազմուած է մի քանի սաւար հազարներից։ Այնպէս յաւ գրչի տէր էր, այնպէս ոգեւորող, որ մինչեւ Բէհայի յայտնուիլը Նէբիլը երեւակայում էր, թէ ինքն էր Բաբի քարոզած յայտնութիւնը, բայց Բէհայի պատգամները կարդալուց յետոյ, գնաց, զղջաց և նրա կոյր երկրպագուն դարձաւ։ Սրա խօսքը մեծ կշիռ ունէր ընդհանրապէս Բէհական աշխարհի համար, ուստի Ազէմը ցանկանում էր սրանից գրաւոր խոստում առնել և հրատարակել։ Ազէմը Նէբիլին այնպիսի առաջարկ արաւ, այնպիսի վիճակում թողեց, որ խեղճ ծերուկը փրկութիւնը Աքքէի ծովախորշում գտաւ։ Երբ Թուրքական ոստիկանները խուզարկում էին Նէբիլի գոյքը, գտնուեցաւ նրա կտակը. որտեղ բանաստեղծը մի քանի յանգով բացատրել էր իր հոգեկան տագնապը։ «Ես որքա՜ն տխմար ու տալուշ պիտի լինէի, որ բարսւնապետ-

ներս պատուիրանների հակառակ քեզ յայտնութիւն դաւանէի, կործանէի նրանց կառուցած սուրբ տաճարը և գլուխս ծաղրի մատնէի»։ Նէրիզը ծովի ալիքների վրա ծփալը մարդկային ծայրից նախատիւ համարեց, մահը՝ խղճի հակառակ, ապրելուց գերադասեց։

62. Աղէմը չբաւականացաւ Բէհայի ժառանգներին և հաւատարիմներին հալածելով, նրանց զրկանքի և նեղութիւններին ենթարկելով։ Որպէս զի իսպառ թուլացնի հօրը յիշատակը և Բէհականներին ազատի հօրը գրուածների ներգործութիւնից, նա չբաւականացաւ միայն արգելք դնելով հօրը այն գրուածների ընթերցման վրա, որոնք ջախջախում էին իւր ծրագիրները, այլ ամէն միջոցի դիմելով՝ խափանեց Բոմբէյի այն տպարանը, որտեղ տպել էին հօր գործերի ինը հատորը։ Խափանեց հօր գործերի տպագրութեան շարունակութիւնը, որպէսզի չտարածուի այդ գրութիւնները և հետեւողները միմիայն իւր գրութիւններով բաւականանան։ Նա հօրը գործերի տպագրութեան տաճարը շինելու փոխարէն, ահագին փող ծախսեց, որպէսզի Քարմէլ լեռան գագաթին Բաբի աճիւնի վրա տաճար կառուցանէ և ամէն տեղ տարածէ, թէ—«Ահա մի մարդ, անունը շառաւիղ (Ղուսն), նա իր արմատից պիտի աճի և պիտի շինէ Տիրոջ տաճարը»։ Զաքարիա Գլ. Զ. յօդ. 12—13։

63. Որպէսզի կարողանա անպայման Բէհայի հետեւողներին ստիպել և համոզել, թէ ինքն էլ գերագոյն յայտնութիւն է, նա երբեք չշուռ տուեց մինչև անգամ կեղծիքներ անելուց, հօրը գրուածները նենգելուց։ I. Մի լոհ շրջեցրին ժողովուրդի մէջ, որով իբր Բէհան Աղէմին յայտարարում է իւր յայտնութեան յարատեւութիւնը, որպէսզի առաջնորդէ ժողովրդին, բայց իսկականը՝ Միրզա-Աղաջանի, Ղուսնի Աքբէրի և կամ

Բէհայի ձեռագրով չկարողացան դուրս բերել, Կասրի-Բահչէի արխիւում էլ չգտնուեց: II. Սուլբիէի-Էմր» լոհը կրճատած ու փոփոխած շրջիցըրին, որով ուզում էին Ազէմի յայտնութիւնը ապացուցանել, բայց խնկականը Աքբէրը Բէհայի ձեռագրով դուրս հանեց և լուսանկարը տարածելով խայտառակեց։ III. Երկու լոհ իրար կցելով՝ ձգտեցան մի բան ապացուցանել, բայց հակառակ դասը բացատրեց թիւրիմացութիւնը։ IV՝ Ղունի-Աքբէրին ուղղւած մի լոհ Ազէմը իրեն վերագրեց, բայց խնկականը՝ Բէհայի ձեռքով գրւածը, դուրս հանելուց յետո, պատասխանեց թէ՝ —«Երկու եղբայրներին էլ է վերաբերւում, եայլն եայլն։

64. Ճատերը ենթադրում էին. որ այս վարդապետութեան կոչումն էր վերանորոգել Պարսկաստանը և իսլամ աշխարհը, բայց այդ յոյսերը խափուսիկ դարձան.... չիրականացան, Բաբիզմը հետզհետէ քայքայւում է, կորցնելով ահաւոր հետեւորդներ։ Սկզբնական շրջաններում Բաբիզմի քարոզութիւնները սպառողներ շատ ունենալով Պարսկաստանում, նա հրոսակային քայլերով առաջացաւ, ահաւոր հետեւորդներ ունեցաւ և աւելի ճոխացաւ 1848—52 թւականների արիւնահեղ կռիւների շրջաններում։ Այդ ժամանակները այս աղանդին հետեւում էին, բացի նշանաւոր իւլէմները, յայտնի պաշտօնակալներ, Իրանի շահի աւագանին, հարուստ վաճառականներ, մեծ կալւածատէրներ, մտքի, գաղափարի ներկայացուցիչներ, որոնք ձգտում էին հայրենիքը փրկել անկեալ վիճակից և սպառնացող վտանգից, մանաւանդ բռնակալութիւնից։ Ճշմարիտ է, կառավարչական սարսափները արիւնի մէջ ողողեցին աղանդաւորներին, յուսահատութեան մատնեցին, բայց այդ զարհուրելի զոհողութիւններով աւելի եւ ամրապնդւեց Բաբիականութիւնը և որոշ հող ձեռք բերեց երկրում։ Այս զարհուրածները, եթէ ոչ համարձակ, գոնէ սրտի խորքերում

*պաշտում էին այն Ալլահին, որն ուղարկել էր Սէիդ.Ալի-Մէհմէդին, իրենց մարդապաշտութիւնից—իմամապաշտութիւնից ազատելու, իրենց մտքին ու դատողութիւններին ազատ թըռիչք տալով՝ գիտութիւնով, արհեստներով առաջանալու, և որ ամենագլխաւորն է, ազատուելու կղերի և բռնակալների կեղեքումներից, որոշ դրական օրէնքներով և ժողովուրդից ընտըրուած «Ռիջալի—Ադլի» ժողովներով։*

*Բէհայի քարոզութիւններով այնպէս աճեցաւ Բաբիների թիւը, այնպէս բարձրացաւ նրանց վարդապետութեան բարոյական, փիլիսոփայական հայեացքը, որ ամենայն իրաւամբ Բաբիները իրենց անուանեցին ԲԷՀԱՑԻՆԵՐ, որոնց զարգացման ամենաբարձր շրջանը կարելի է համարել ութսունական թւականները (1880—90 թ.)։ Իսկ Բէհայի մահուանից յետոյ, մանաւանդ Աղէմի ձգտումները պարզելուց յետոյ (1897թ.) Բէհականները հետզհետէ ետ քաշուեցան, նշանաւոր անձնաւորութիւնները հեռացան, սկսեց սրանց թիւը աստիճանաբար նուազել և օրից օր պակասել: Աղէմի իր անձնաւորութիւնը յայտնութիւն (զուհուր) յայտարարելը ամէնքն այնպէս ընդունեցին, իբր շիական իմամների վերակենդանանալը, նրա լոհերը՝ հագիների կրկնութիւնը, որոնք լքեցին հետևորդներին, հեռացրին և առանձնացրին Ո՛չ բարձր պաշտօնէութեան, ո՛չ էլ մեծ ու փոքր ներկայացուցիչներից մի խելահաս մարդ չըմնաց, որ գիջանի Աղէմին, որպէս «յայտնութեան հետևելու, ասպարէզը մնաց համբակներին։ Այս Բէհականներից շատերը թէև այսօր առերես հետեւումին երկրի պետական կրօնին՝ շիականութեան, բայց բոլորովին ազատամիտ են դարձած, տոգորուած հիմնական վերանորոգչական մտքերով, սպասումին ո՛չ թէ կրօնական որևէ բարեկարգութեան, այլ քաղաքական ռէֆորմատորի։*

65. Բաբիզմը ամենից շատ տարածուեց իր ծննդավայրում՝ Շիրազում, Փարսերի աշխարհում, ուր նրա թիւը մի ժամանակ հասաւ մինչև 30-40 հազարի, բայց այսօր հազիւ թէ դրա քառորդն էլ հնարաւոր լինի գտնել: Շիրազից յետո նա ամենից շատ տարածուեց Գիլանում և Մազանդարանում, Կասպից լճի հարաւային ափերում, ուր գիւղ, աւան, քաղաք չմնաց, որ հետևորդներ չունենար: Սրանց թիւն էլ անցնում էր 30 հազարը, բայց այսօր երեք հազար հոգի էլ դժուար թէ գտնուի: Բաբ-էլ-բաբի և ընկերակիցների ջանքերով Խորասանում Բաբը մինչև քանի հազար հետևորդ ունեցաւ, բայց այսօր կասկածելի է, թէ 2000 հոգի էլ գտնուի: Թեհրան և շրջակայքում նոյնպէս 20 հազար հետևողներ գտաւ, իսկ այսօր երեք հազար էլ չի մնացել: Իսֆահանի շրջանը մինչև տասը հազարը հասել էր Բաբինների թիւը, ներկայիս դրա կէսն էլ չի մնացել: Խամսա—Զենջան մի ժամանակ 10, 000 եռանդուն Բաբիներ կային, ներկայիս 500 հոգի էլ չկան: Ատրպատականում դրանց թիւը 20 հազարի բարձրացաւ, մինչև անգամ Մարաղայի, Միանդուաբի և Սուլդուզի հայերից յարողներ եղան, ներկայիս ամբողջ Ատրպատականում մի հազար մարդ էլ չի մնացել հետևող: Համադան, Եզդ, Քիրման անփոփոխ են մնացել, դեռ այդտեղերը չի թափանցել Ազէմի—Աքբէրի վէճերը, բայց այդ երեք նահանգում հազիւ թէ 8-9 հազար հետևողներ լինեն: Կան Բաբիներ-Բեհականներ Բաղդատում և Փիւնիկում, բայց դրանց թիւը հազար էլ չի կազմում: Եգիպտոսի, Հնդկաստանի, Կիպրոսի հետևողների մասին թիւ չկայ, բայց հազիւ թէ մի քանի հարիւրներ կազմեն:

Ամենից շատ Բէհայինները ճոխացան Ռուսաստանում, որ Ռուս կառավարութիւնը նրանց ազատութիւն է տուել համարձակ դաւանելու իրենց վարդապետութիւնը և միշտ պաշտպա-

նել է շիական յարձակումներից—հալածանքից։ Ասխաբադ փախել են գլխաւորապէս Ատրպատականի Իւսկիւի և Միլան գիւղերից հալածուած բէհականները և Պարսկաստանի զանազան քաղաքներից խոյս տուողները։ Ասխաբադում դրանց թիւն հասնում էր մինչև երեք հազարի։ Մի այսքան էլ ամբողջ Անդրկասպեան և Կովկասեան քաղաքներում և Ռուսաստանում գուցէ հնարաւոր լինի հաշուել բէհայի հետեւորդներ։

Բէհայի մահուանից յետոյ, նրա աշակերտները ոտաբոբիկ, կիսամերկ, աղքատ մտան ոչ միայն Արեւելքի ամէն մի անկիւնը և հազարաւոր հետեւորդներ դուրս քաշեցին մոլեռանդ իսլամի գաւակներից, այլ մինչև անգամ անցան Միջերկրականը և Ատլանդեան Ովկիանոսը, քաղաքակրթուած քրիստոնեաներից էլ հազարաւոր հետեւորդների գրաւեցին, նրանցից կարգած ողորմութիւններով՝ ոչ միայն պաշտպանում են իրանց գոյութիւնը, Ամերիկայում տաճարներ էին կանգնում, այլ յաեւլածներով աշխատում էին Արեւմտեան լուսաւորութիւնը տանել իրենց ծննդավայրը՝ Արեւելք, քաղաքակրթել մառախուղի մէջ խարխափողներին։ Կաթոլիկ և բողոքական միսիոնէրները իրենց ահաւոր գանձերով և անթիւ գիտնական քարոզիչներով վերջին XIX դարի շրջանում իսլամի հետեւորդներից և ոչ իսկ մի հազար մարդ կարողացել են քրիստոնէութեան գրաւել, այն ինչ Բէհականները վերջին 10-12 տարուան ընթացքում միայն Միացեալ-Նահանգներում տասնեակ հազար, գուցէ աւելի հետեւողներ են գրաւել, որոնք օրից օր աճումեն։ Եթէ Աղէմի և Աքքէրի վէճերը չլինէր և ճշտութեամբ հետեւէին Բէհայի սիրո և խաղաղութեան քարոզներին, գուցէ այսօր 30-40 հետեւորդներ էլ ունենային։

Հետեւաբար, ըստ մեր հաւաքած տեղեկութիւններին, այսօր աշխարհի շուրջը Բէհայի քարոզութիւններին հետեւողների թիւը

50-55 հազարից չի անցնում, այնինչ քսան տարի առաջ նրանք միայն Պարսկաստանում երկու հարիւր հազարից աւելի հետեւորդներ ունէին։

66 Ներկայիս Բաբիները բաժանւած են երեք հերձւածի.

Ա. Նրանք, որոնք իրենց իսկական Բաբի են համարում, չեն դաւանում Բէհայի վարդապետութիւնը, որոնց հակառակորդները էզելի են կանչում, Բէհայի փոքր եղբօր՝ Ծահեա-Սուփ-Էզէլի անունով, քանի որ սրանք հետեւեցին Էզէլին եւ սպասումեն Բաբի խոստացած յայտնութեանը։ Սրանց թիւը փոքր է, չեն տարածւած եւ Կիպրոսում. երկու տարի առաջ Էզէլի մահից յետո, նրան յաջորդեց եւ համայնքին առաջնորդում է Ջէյխ—Հադին, որ ապրում է Դովլաթաբադում, Իսֆահանի նահանգում։ Էզէլիների թիւը 2-3 հազար հոգուց չի անցնում։

Բ. Բէհայի վարդապետութեան բուռակողմնակից, Աղէմին Բէհայի յայտնութեան յարատեւութիւնը չընդունող դասը, որոնց հակառակորդները Աքբէրի է կանչում, նոյնպէս շատ չնչին մասն է կազմում Բաբիների համայնքի։ Թէեւ սրանք իրենց մտաւոր զարգացումով աշխարհահայեացքով շատ ուժեղ են մնացել երկու դասից, որոնց ամէն մի քայլափոխի առաջ սրանք Բէհայի գրւածներով ուղեփակ են դնում, կաշկանդում, բայց երկու-երեք հազար հետեւողների թիւը չի կարող որոշ ույժ կազմել եւ վարդապետութեան հետեւորդները բազմացնել։ Սրանք ցրւած են ամէն տեղ, միայն հազարից աւելի հետեւորդներ ունին Միացեալ-Նահանգներում։

Գ. Ամէնից բազմաթիւ եւ ուժեղ տարրը կազմում են Բէհաականների մնացորդ դասը, որոնց թիւը հասնում է յիսուն հազարի։ Ճառերը այս թիւը մեծացնում են, հասցնում են միլիոնների, բայց այդ բոլորը յաւակնութեան եւ միամտութեան հետեւանք է։ Իրանք՝ Աղէմի հետեւորդները ամէն տեղ խո-

սկլիս տասնեակ և հարիւրաւոր հազարներով են ցոյց տալիս իրենց հետևողներին Իրանի զանազան կողմերը, բայց մեր եօթը տարուան քննութիւնը, թղթակցութիւնները չարդարացրին լաւատեսների և ազնուողների յոյսը։ Այս միամիտ ամբոխը, որին հակառակորդները Աղէմի են անուանում, ապացուցեց թէ՝ ճշմարիտ որ իրենք Իրանի հարազատ ծնունդ են կազմում, արի-ա՝յան սերունդ և առանց մարդացեալ Աստուածների չեն կարող ապրել, չեն կարող կառավարուել։ Նրանց միշտ պիտի կառավարէ Գերազանցագոյներից սիրուած, ծնուած, ներշնչուած և յարաբերակից մի գիւցազն, մի Աստուածորդի... Քանի որ Պարսկաստանին տիրում է թանձր խաւարը, քանի որ նրա և ոչ մի անկիւնում չէ բացուած որևէ լոյսի տաճար, քանի որ մանուկների կրթութիւնը «Ախունդների» ձեռքին է, որոնք առասպելներով են սրանց դաստիարակում, քանի որ պետութիւնը և ոչ մի կանոնաւոր ուսումնարան չէ հիմնած երկրում, «Բաբիների» և «Բէհաների» քարոզները չի կարող ըմբռնել ժողովուրդը և Աղէմի նման շատ Աստուածամարդեր նըստած տարկայած ժողովրդի վզին, նրան կվարեն դէպի առասպելական աշխարհ, դէպի մարդապաշտութիւն....



# ԿԱԼՒԱԾԱՏԻՐՈՒԹԻՒՆԸ ԵՒ ԿԱԼՒԱԾԱԿԱՆ ՀԱՐԿԵՐԸ ԱՏՐՊԱՏԱԿԱՆՈՒՄ

1. Պարսկաստանում դրական և ընդհանրական օրէնքների բացակայութեան պատճառով շատ դժւար է կալւածատիրական ձևերը, կալւածական հարկերը որոշ օրէնքի-կարգի վերածել և ամփոփ գաղափար տալ։ Մանաւանդ Ատրպատականում այնքա՜ն բազմազան ազգեր, ցեղեր և իրարից տարբեր ժողովուրդներ են բնակւում, որ աւելի դժւարանում է խնդրի լուսաբանութիւնը. Ամեն ցեղ ամէն «էլ» ոչ միայն իւր տոհմական որոշ սովորութիւնները դարերով պահպանել է, այլ մինչև անգամ զանազան ժամանակներում երևցած բռնաւորների կամայականութիւններն էլ կեղեքումներն էլ մի մի սովորութիւն դարձած փաթաթւել են երկրամշակի վզով, որը եղի հետ արօրին լծւած անտրտունջ քաշում է այդ բեռը, որպէս երկնքից սահմանւած մի պատուհաս։ Առանց տատանելու կարելի է ասել, որ ոչ միայն ամեն գաւառ, դաշտավայր, հովիտ, ձոր և լեռնալանջ տարբեր կարգեր և տարբեր հարկեր ունի. այլ ամեն մի կալւածատէր, նոյն իսկ ամեն մի գիւղ յատուկ իւր հարկային սովորութիւններն ունի (ադաթ) և զանազանւում են իրարից։ Կալւածատիրութեան և հարկերի ծագման և զարգացման պատմութիւնը սոյն ուսումնասիրութեան ծրագրից թէ և բոլորովին դուրս է, բայց պարտաւորւած ենք, առաջադրւած խնդիրը պարզելու նպատակով կար-

ճառօտ ծանօթութիւններ տալ։

2. Թէ և պետական դրական օրէնք, օրինագիրք, կամ հրովարտակների ժողովածու չկա, բայց Պարսկաստանում կալուածական բոլոր խնդիրները ենթարկւում են տիրապետող ճեղի օրէնքներին—Ղուրանին։ Իրանի ամբողջ ցամաքը, գետերն ու ծովերը պատկանում են Շահնշահին, որի թագին Ալլահը այնքան զօրութիւն է տուել, որ տիրել է երկրին և իշխում է հաւատացեալներին։ Պարսկաստանի ընդարձակ երկրի բոլոր մշակւած, անմշակ, չէն ու աւերակ, բերրի թէ անապատ հողերը ամբողջութեամբ Շահնշահի իրաւասութեան է յանձնւած։ Բայց Շահնշահը միայն երկրի վերին տէրն ու տեսուչն է, կամ ինչպէս «աւանդապահի սպարապետն է», այնպէս որ, երկրի արտադրութիւնը նրան յանձնւած համայնքին է պատկանում և հասոյթը պիտի գործադրւի ամբողջ ազգաբնակութեան բարօրութեան։ Երկիրը—Իրանը ամբողջութեամբ թէ և յանձնւած է—աւանդւած է այդ միապետին, բայց իսկապէս պատկանում է Իսլամ-Շիա կրօնական համայնքին։ Ղուրանի տրամադրութեան համաձայն Իրանի—Ատրպատականի մէջ չկա և ոչ մի թիզ մասնաւոր սեփականութիւն (propriété) Գեցին, այլ ամբողջ տարածութիւնը պետական—համայնական է։ Թէև ներկա շիա կղերը Կաջարներին ուզուրպատօր է համարում, նրանց իշխանութիւնը—բռնակալութիւն, քանի որ Քեարբալա Նստող շիաների ամենանշանաւոր միւշտէիդները Կաջարների իշխանութիւնը ապօրինի են համարում, բայց Կաջարները, որպէս յաջորդ Սուլթան-Աբաղա խանի և Սէֆէվի շահերի, իրենց տէր են համարում նախորդ դինաստիների ունեցած բոլոր իրաւունքներին։ Կաջարները իրենց հրատարակում են ինչպէս պարսկական Շահնշահ, նոյնպէս Իսլամական Շիա—կրօնի

պետ ու պաշտպան, շիաների իմամների ղուլ (ծառա), աններկայթ իմամի սպարապետ, և տէր շիա—իսլամական պետութեան գոյքին։

3. Կղերը—շիա միւշտէիդները երկիրը անիշխանութեան մատնուած են համարում և ժողովրդին վարդապետում են, քարոզում, սպասել այն Մէհդի—կորուած իմամին, որը յայտնուելու է և աշխարհին տիրելով՝ ազատելու է շիաներին այս բռնակալութիւնից: Իսկ մինչև Մէհդիի երևիլը՝ միւշտէիդները իրենց անձնաւորութիւնները համարում և հրատարակում են «ընակարան Մէհդիի հոգու» և ձգտում են տիրել երկրին (իրենց վիճակներին), իշխել և դատել ազգաբնակութեան բոլոր գործերը: Տիրող՝ Կաջարների իշխանութեան և շիա կղերի մէջ մի խուլ կռիւ կա, այնպէս որ, երկուսը մրցում են իրար դէմ, բայց ոչ մի կողմը չի յանդգնում յայտնապէս հրապարակ դուրս գալ։ Ատրպատականի ամէն մի անկիւնում կղերը հրապարակով, թէ ծածկապէս քարոզում է Կաջարների դէմ, կառավարութիւնը խուլ է ձևանում և չի ուզում լսել նրանց բարբանջանքը, կամ գզգել։ Կառավարչական բոլոր ծառայողները թէև ատում են կղերին, բայց պարտաւորուած են ամէն տեղ բարձր բազմոցը նրանց առաջարկել։

4. Իսլամական վարդապետութեամբ, երկրում հողային մասնաւոր սեփականութիւն չի կարող գոյութիւն ունենալ, բայց պետութեան ծայրագոյն իշխանապետը—աւանդապահը իրաւունք ունի երկրի զանազան մասերը մասնաւոր անձերի յանձնել մշակելու, ոռոգելու, շէնացնելու, բարեկարգելու և այդ շնորհից օգտուելու պայմանով։ Այս շնորհը ստացողի համար սեփականութիւն չի կազմում, այլ մի տեսակ կալուած է, որով շնորհառուն պարտաւորւում է կառավարել իրեն յանձնուած կալուածքը, բարեկարգել և արդիւնքից մի տասնե-

բերքը իսկական հողի տիրոջ՝ պետութեան յանձնել ամէն տարի և մի տասներորդ էլ իւր աշխատութեան վարձ, դրած ծախսերին շահ—տոկոսիք ստանալ, թողնելով մնացորդ 8/10 երկրամշակին։ Նախորդ դարերում, երբ ներկա սիստէմով ադմինիստրացիա գոյութիւն չունէր, կալւածատէր խաները կառավարութեան ամենաստորին պաշտօնականներն էին, որոնք կառավարում էին գիւղական համայնքը, սրանց գործերը կարգադրում, դատերը վարում և պետական հարկերը հաւաքելով յանձնում էին նահանգապետներին (հաքիմներին)։ Հին կարգերի համաձայն, եթէ մի կալւածք ամայանա, անմարդաբնակ դառնա, կալւածքը վերադարձում է Շահնշահին՝ իսկական տիրոջը և ամայի հողերը մասնաւոր տէր չունին։ Շատ վաղ ժամանակներից շահերի շնորհներով զանազան վարչական խան—խաւանիր իւրացրել են երկրի՝ Ատրպատական աշխարհի բոլոր գիւղերը և կառավարել են որպէս մըշտնջենաւոր և ժառանգական կապալառու պաշտօնականներ այդ կալւածների, որոնց իրաւունքները սահմանափակւած են եղել վերոգրեալ և յետագա պայմաններով։

5. Նախորդ դարերում գաւառների տիրող խաների ժառանգները կալւածները բաժանելով իրար մէջ, առաջացրել են ներկա գիւղատէր կալւածատիրութիւնը։ Շէրիական կարգերի համաձայն կալւածները ժառանգների մէջ այնքան է բաժան. բաժան դառել, որ այսօր մի գերդաստանի անդամները ժառանգել են որևէ գիւղի մի քառորդը, վեցերորդը, տասներորդը կամ քառասներորդը, որոնցից առաջացել է «խրդամալիքութիւնը» (մանր—կալւածատիրութիւն)։ Նոյնպէս Իրանի երկրում նախընթաց դարերում տիրած շփոթութիւնների և անիշխանութիւնների շրջանում զանազան բանակայներ, աւազակներ, սրի և գնդակի ճարպիկ շարժողներ յափշ-

տակել են այլեայլ գիւղեր, գաւառներ, տիրել և իրենց ժառանգներին—յաջորդներին մշտնջենաւոր ապահովութիւն թողել անհաւոր գիւղեր։ Ժամանցի (давность) սովորութիւնով տիրելու (Թէսսարուֆ—владѣніе) օրէնքով մինչև օրս պահպանել են այդպիսի բռնակալների ժառանգները այդ յափշտակած կալուածները և մինչև անգամ կառավարիչների թուլութիւնից, իշխանականների վէճերից օգտուելով՝ ձեռք են բերել օրինական հաստատութիւններ, իվնաս նախնի տէրերի, որոնք կամ իսպառ ջնջւել են, կամ ընկճւել և հողագործի մաճն են բռնել։ Այսպիսով ամէն մի կալուած—Իրանում, Ատրպատականում, բացի իսկական տիրոջից՝ Ճահնշահից—որպէս պետութեան ներկայացուցչից, ունի երկրորդական տէր, գիւղի կառավարիչը, գիւղի կապալի·տէրը, որ իսկապէս de facto տիրում է և օգտւում է կալուածից: Այսօր Ատրպատականում—Իրանում ամէն մի գիւղատէր կառավարում է, դատում է գիւղական ժողովրդին, պաշտպանում է նրան կարևոր դէպքում։ Այս կապալի տէրերը կառավարութեան թուլութեամբ, կղերի օժանդակութեամբ այսօր կատարեալ և բացարձակ տէր (մալիք) են դարձել. ժամանակին իրենց կառավարութեան յանձնուած կալուածներին և գիւղական համայնքը իրենց ռայաթը (հօտ)։

6. Բացի այս կրկնակի տէրերից, Ատրպատականի ամէն մի գիւղն ունի և մի երրորդ տէր, որն իսկապէս երկրի, սահմանի, հանդի, արօտի, դաշտի, հովտի, ձորերի ու լեռների սեփականատէրն է, որն իր քրտնքով զարդարում է սև հողի երեսը, իր անխոնջ աշխատանքով անհուն բարիներով լցնում է սև հողի երեսը, իր անխոնջ աշխատանքով անհուն բարիներով լցնում է կապալատիրոջ և խաւանի շտեմարանները և որն իրեն կեղեքողներին կարկանդակ է մատա-

կարարում, թաւիշ հագցնում, իսկ իւր մերկ ու բոբիկ մառաղաշներին զարի հացով էլ չի կարողանում սնուցանել—դա գիւղական համայնքն է։ Մէհմէդ-Ջահի Ռուսաց հետ կապած դաշնագրի V յօդւածի ծանօթութեան մէջ ասւած է —թէ Իրանի կալւածներին տիրելու (владѣнія) երեք կողմեր իրաւունք ունին.—ա. Պետութիւնը, բ. Կապալատէրը և գ. համայնքը։ Կապալատէրը առանց պետութեան ու գիւղական համայնքի հաճութեան չի կարող կալւածքը փոխանցել մի ուրիշի»։—Դրական օրէնքի բացակայութեան, պետութեան վարչութեան թուլութեան, կալւածատէրների անկօնտրօլ իշխանութեան շնորհիւ, թէև գիւղական համայնքի իրաւունքները կալւածների վրա ներկայումս գրեթէ բոլորովին ոչնչացած է, բայց ուժեղ շինականները չէրիաթի և խաւաններին հայցրած կաշառների շնորհիւ, երբեմն կարողանում են իրենց իրաւունքները պաշտպանել թոյլ կալւածատէրների դէմ։ Այսպիսով ամէն մի կալւածք—գիւղ, բացի վերօգրեալ երկու տէրերը, ունի մի երրորդ տէր, թէև աննշան և կաշկանդւած իրաւունքներով—Գիւղական համայնքը։

7. Կալւածների վրա պետութեան իշխանութիւնը, շնորհիւ օրէնքների բացակայութեան, տիրող անորոշականութեան, պետական պաշտօնակալների անասելի տգիտութեան ու շահամոլութեան, մանաւանդ կապալատէր—կալւածատէրների խորամանկութեան, գրեթէ չէզոքացած է։ Ոչ միայն գիւղական գործերի, ժողովրդական վէճերի դատավարութիւնը, պետական հարկի ու տուրքի գանձումը իրենց ձեռքն են առել կալւածատէրները, այլ մինչև անգամ գիւղերի սահմաններում կատարւած քրէական գործերը սրանք են վերջացնում ու խաղաղացնում։ Կալւածատէրները պետութեան հասանելի հարկը մալիէի (Ֆինանսական) պաշտօնակալին

ժամանակին, կամ աւելի փող վճարելով, չեն թողնում որ դրանք յարաբերութեան մէջ մտնեն իրենց ռայաթի հետ: Քրէական գործերի դէպքերում՝ կալւածատէրը պաշտպան է հանդիսանում իր գիւղացիներին, պետական պաշտօնականների հետ գործերը հարթում, տուգանքներն ու փէշքաշները վճարում և այս ծախսերը բարդում է գիւղական հարկի վրա. յայտնի բան է փողի տոկոսիքը և իր աշխատութեան վարձը առատօրէն վրա գալով: Կալւածատէրները պարբերաբար կրճատելով—կաշկանդելով գիւղական համայնքի իրաւունքները, չէզոքացնելով պետական ծառայողների գերիշխանութիւնը, ընդարձակել ու ամրապնդել են իրենց իշխանութիւնը կալւածների վրա, այնպէս որ, կարելի է առանց չափազանցելու ասել, թէ ներկայիս դրանք բացարձակապէս, անսահման իրաւունքներով իշխում են Ատրպատականի կալւածներին և շինական ազգաբնակութեան:

8. Թէև Ատրպատականի կալւածները բառի ընդարձակ մտքով, մինչև օրս բացարձակ սեփականութիւն (propriété) չեն կազմում, թէև այդ կալւածների կապալագրերն ունեցողները գրեթէ պարսկական նախկին ադմինիստրացիայի լրացուցիչ մասն են կազմել ժառանգաբար, կամ փոխանցաբար, բայց դրանցից իւրաքանչիւրը ունեցել է և ունի իրաւունք, այդ կալւածներից արտօնութիւնը—կառավարելու պաշտօնը. ծախելու, փոխանցելու, գրաւ դնելու և շնորհելու այնպէս, որպէս իր սեփական շարժական ինչքը: Կալւածները որքան որ պետական ու համայնական է համարւում շէրիաթի համաձայն, նոյնքան էլ կալւածատէրի իշխելու և օգտւելու իրաւունքը անբռնաբարելի է նոյն օրէնքով: Մանաւանդ կապալատէրը ոչ միայն ժառանգաբար, կամ փոխանցաբար երկար դարերով տիրել են իրենց վերատես-

չութեան յանձնուած գիւղերին, ոչ միայն իրենց ջանքը չեն խնայել կալուածը բարւոքելու, այլ շատ անգամ դրամագլուխ էլ են դրել երկիրը ոռոգելու, մշակելու, շինացնելու և անտառներ ցցելու համար։ Այս պարագաները այնպէս ամրապնդել են կալուածատէրների կալուածների վրա ունեցած իրաւունքները, որ հողի վրա պետութեան և համայնքի ունեցած իրաւունքները տեղի են տուել և նախադասել կալուածատիրական իշխանութիւնը։

9. Վաղ ժամանակներից մինչև անցեալ XIX դարի առաջին կէսը Ատրպատականի կալուածները գրեթէ ամբողջապէս գտնւում էր խան-խանանի—ազնուականութեան ձեռքում, որը կազմում է պետութեան վարչական մարմինը։ Բայց երբէք արգելուած չէ եղել ժողովրդին, գեղերին էլ կալուածներ ձեռք բերելը, քանի որ Ղուրանը դասակարգ չի ընդունում և ամբոխից խաւանի դասն անցնելը շատ սովորական երևոյթ է եղել։ Եթէ վաճառականը, կամ գեղը աչք չէ անկել կալուածատիրութեան, պատճառը երկրին տիրող անվերջ խռովութիւններն են եղել։ Թէև Իրանը մի Շահնշահ է ունեցել, բայց երկրի ամէն մի նահանգում, գաւառում, աւանում, նոյն իսկ գիւղում անպակաս են եղել ինքնակոչ բռնակալ ծաներ։ Այս բռնաւորների անընդհատ իրար դէմ մղած կռիւներից, յափշտակութիւններից աւարառութիւններից ոչ ոք չէ յանդգնել դրամագլուխը կալուածքի վերածել և բէնաւոր ապրելու բնակ անելու։ Բայց երբ վերջին դարում շահնշահերը մանաւանդ Նասրէդդին շահը վերջ տւին այդ անզուսպ շահերին, կոտորեցին և ընկճեցին «դէրէբէյի»—ներին և երկրի վարչութիւնը (abministration) ցցեցին իրենց գերիշխանութեան տակ, խաղաղութիւն և ընչից ապահովութիւն տիրեց, այդ ժամանակից սկսեալ գեղը, վաճառականները կամաց

կամաց գնեցին և սեփականացրին խաւաններից շատերի կալուածները։ Այս խաղաղութեան հետևեց տնտեսական զարգացումը, թամբակի, բրդի, մրգեղէնի և գործուածների արտահանութիւնը բարձրացրին կալուածների նշանակութիւնը։ Ամբարներում փթող հացահատիկների տեղը՝ այգեստանների և պարտէզների փոխարկւեցան, որոնց բերքի փոխարէն երկրում ներմուծուած դրամը բարձրացնելով մթերքի գինը, բանւորի օրականը, բարձրացրեց նոյնպէս կալուածների արժէքը։ Վաճառականները և կղերը ուշքերը կենդրոնացրին կալուածների վրա և այսօր Ատրպատականի գիւղերի կէսից շատը խաւանի ձեռքից կղերի ու վաճառականների ձեռքն է անցել։

10. Ներկայումս Ատրպատականի կալուածների նշանաւոր մասն արդէն անցել է յայտնի կղերի ձեռքը և սէիդներին: Հարիւրաւոր գիւղ ունեցող միւշտէիդները սակաւաթիւ չեն· Մեծամեծ կալուածատէր շահզադաները, խաւանները ու սարրաֆները օրից օր ձգտում են ընդարձակել իրենց միւլքերը։ Մի, կէս, քառորդ և վեցերորդ բաժին գիւղատէրները հետզհետէ կորցնում են իրենց կալուածները։ Փոքրամասն (խրդամալիք) սեփականութիւններն էլ ուղղակի և անուղղակի միջոցներով անցնում են մեծ կալուածատէրների ձեռքը։ Փոքր կալուածները կլանում են ագահ կղերը և նենգամիտ վաճառականները: Տկար, թոյլ կալուածատէրները, փոքր կապիտալիստները, զուրկ կղերի մեծամեծ խաւանների հետ կապ չունեցող հովանաւորից զրկուածները՝ չեն կարողանում կալուած պահպանել և ակամա—պարտաւորուած են ծախել:

11. Ներկայումս էլ Պարսկաստանին, բառի բուն նշանակութեամբ, իշխում է զօրեղը։ Ուժի առաջ խոնարհւում են բոլորը։ Ուժ են կազմում օտար պետութեան հպատակները.

որոնց հովանաւորում են դեսպանատները, պետական բարձր աստիճանաւորները, դրամատէրերը, և մանաւանդ կղերը։ Գերազանցութիւնը կղերի կողմն է, որոնք շէյխաթի սպասաւորներն և բացատրողներն են համարւում։ Թէ պետական պաշտօնակալները և թէ կապիտալիստները ընկնում, կործանւում են, բայց կղերը անդրդուելի են և երբէք մտադիր չեն կամովին զիջանելու։ Եւ կղերն էլ ժառանգական են—մեծ միւշտէիդների որդիքը յաջորդում են ծնողներին։ Պալատական խնդիրներում ոչ միայն բարձրաստիճան ծառայողները, այլ մինչև անգամ շահերը միւշտէիդների վճռին կարօտ են։ Նշանաւոր վեզիրները, իրենց սեփական կալուածների ապահովութեան և պաշտպանութեան համար, ստրկանում են կղերի առաջ և ամէն մէկը, սրանցից հովանաւորութիւն ակնկալելով, պարտաւորուած է կղերի քմահաճոյքներին միշտ բաւարարութիւն տալ։ Արդարութիւնը և իրաւունքը միշտ զօրեղին է պատկանում։ Ամենախիստ թոյլի կայքերը, ամենախայտառակ պատճառաբանութիւններով յափշտակում են զօրեղները։ Մինչև անգամ գիւղական ժողովուրդը չի ցանկանում ամենաբարեխիղճ, բայց թոյլ կալուածատիրոջ հողի վրա բնակւել։ Զօրեղ կալուածատիրոջ ամենաբարդ հարկերը տանելի է երկրագործի համար, քանի որ վերջինիս մօտ մնացած ընչքի ապահովութիւնը ոչ ոք չի յանդգնիլ խանգարել։ Արտաքին պետական ծառայողների ոտնձգութիւններից, արտասովոր և անորոշ հարկերից գիւղացուն պաշտպանելու անկարող կալուածատիրոջ գիւղերը շատ շուտ ամայանում են։ Յաճախ գիւղացին ինքը դառնագին խնդիրներ է սարքում, ընդդիմանում է թոյլ կալուածատիրոջ և ստիպում կալուածքը զօրեղին յանձնելու—ծախելու։ Հարուստները, մանաւանդ կղերը, անընդհատ բորբոքելով գիւղացիների նախանձոտու-

թիւնը և կալուածատէր ժառանգների վէճերը, տանջում են կալուածքը աճուրդ հանելու։ Այն տկար ժառանգորդները, կամ մանուատէրները, երբ չեն կարողանում իրենց իրաւունքները ձեռք բերել, տանում չնչին գնով ծախում են իրենց մասերը զօրաւոր կցերին, դէմ իրենց հակառակորդներից վրէժ լուծելու համար։

12. Զօրեղ կալուածատիրոջ գիւղերը ոչ միայն ապահովւած է դրացիների ոտնձգութիւններից, այլ մինչև անգամ ոչ մի կառավարչական պաշտօնեայ չի յանդգնիլ նրանց գիւղերը գործակալ ուղարկել որևէ հարկային, քաղաքացիական, քրէական, կամ դատաստանական գործով։ Ստորին ծառայողները գանակոծուելու երկիւղից՝ երբէք չեն զիջանիլ լսել իրենց մեծամեծների հրամանները և որևէ մուշտէիդի կամ մօլլայի գիւղ մտնել։ Ստորին պաշտօնեաները և նրանց ծառաները զօրեղ կալուածատիրոջ գիւղերում պատահած քրէական գործերը աշխատում են միշտ բարդել դրացի ամենաթոյլ կալուածատիրոջ ժողովուրդի վրա, որպէսզի հնարաւորութիւն ունենան կողոպուտներ ձեռք բերել։ Պարսիկ պաշտօնեաները անդադար գործ են որոնում, դանգատներ յօրինում, որպէսզի գործակալ պաշտօնեա ուղարկեն այս ու այն կողմը մի բան շահելու նպատակով։ Պարսիկ գործակալի գիւղերում կատարած սխրագործութիւնները, ժողովուրդին հասցրած վնասները անհաւատալի են։ Տասը թումանի մի դանգատի առթիւ, դատաստանական հրաւէր տանող գործակալը երեք չորս ձիաւորով մի շաբաթ, մի ամիս նստում է պատասխանատուի տունը, ուտում, խմում, ջարդում, փչում և վերջը հարիւր յիսուն թուման իրենց աշխատութեան վարձ է պահանջում։

13. Կառավարչական միջին և ստորին պաշտօնական·

ները, որ միշտ տրտնջում են մեծ և զօրեղ կալուածատէրների ընթացքի մասին, մանաւանդ կղերից, որ կաշկանդել են իրենց եկամուտի աղբիւրները, այդ պաշտօնականները իրենց անիրաւ և կեղեքիչ վարմունքով թոյլերին և նրանց կալուածները ոտնատակ են տալիս, որով նպաստում են մանր կալուածատիրութեան իսպառ ընկճելու և կործանելու. Այս անհեռատես պաշտօնականները, երևի չեն մտածում, չեն զգում, որ իրենց կործանիչ ընթացքով թէ իրենց և թէ իրենց յաջորդների հնոցն են մարում, եկամուտի, շահի աղբիւրները ցամաքեցնում։ Ներկայի հոսանքը եթէ անարգել իր ընթացքը շարունակէ, կասկած չկա, որ 20—30 տարուց յետոյ, Ատրպատականում ոչ մի մանր կալուածատէր չի մնայ։ Այս չարիքի առաջն առնելը ոչ միայն չի մտածում մանր պաշտօնականութիւնը, այլ նշանաւոր պետական կառավարչապետների և մինիստրների մտքով անգամ չի անցնում պետութեան այս կործանիչ պարագան։ Ինչպէս կապիտալիստական երկրներում անխուսափելի կերպով թոյլերին կուլ են տալիս զօրեղները և կապիտալները կենդրոնանում են մի քանի ձեռքերի մէջ, այդպէս ճակատագրուած է երևում Ատրպատականի վախճանը, շուտով 5—10 զօրաւոր ճանկեր կը գրաւեն Ատրպատականի ամբողջ տարածութիւնը։ Մանաւանդ որ բոլոր բարձրաստիճան ծառայողների ձգտումը, նշանաբանը, ընդհանրապէս Իրանում, մասնաւորապէս Ատրպատականում, առանց բացառութեան, մեծ կալուածատիրութիւնն է։ Բարձրաստիճան ծառայողները իրենց ձգտումով արդարացնում են կղերի և վաճառականների ընթացքը և խուճապում մանր կալուածատիրութեանը իսպառ անհետացնելու։ Այս պարագան այնքան բացայայտ ընթացք ունի, որ փոքր կալուածատէրները անհամբեր հառաչելով սպասում են իրենց

կալուածների յափշտակողների յայտնելուն։

14. Դրական օրէնքի բացակայութեան պատճառով, Իրանում անհատի իրաւունքը ոչնչով չէ ապահովուած, թէ պետութեան և թէ գիւղի կողմից։ Մանաւանդ այս երկու մարմնի իրար դէմ բռնած ներհակ ընթացքի պատճառով՝ աւելի մեծ անորոշականութիւն է տիրում, եւ իւրաքանչիւրը իր իրաւունքը—աւելի լաւ է ասել իր ոյժը՝ գերիշխանացնելու համար, անխնա ամէն սրբութիւն ոտնատակ է տալիս։ Առանց որևէ քննութեան, առանց որևէ որոշման, մի պաշտօնակալի քմահաճոյքին, մի ակնթարթի նշանով, կարող է զոհ գնալ ինչպէս մի վաճառական կապիտալիստ, կալուածատէր, գրագէտ, նոյնպէս և ամէն մի բարձրաստիճան պաշտօնեա։ Չորս հինգ տարի առաջ հռչակաւոր Սադրազամի անմեղ աքսորւիլը դրօշակիրների նենգութեան մի փոքրիկ նմոյշ է։ Այսպիսի դէպքեր սկզբներում աւելի յաճախ և աւելի խիստ կերպով էր կատարւում։ Թէև այժմ նուազել է, բայց և այնպէս Ամիր—Թումանների (Генераль Лейтинанть) ֆալախկի կապելը և կապիտալիստների զնդաններում փտեցնելը, առանց որևէ օրինական վճռի, հազւադէպ չէ։ Կառավարչական պաշտօնակալները վախենում են միայն ուլէմաներից—միւշտէիդներից, որոնց հետ խիստ զգոյշ և ակնածութեամբ են վարւում։ Կղերը—միւշտէիդները չեն հպատակւում կառավարչապետներին։ Յաճախ կղերը բացարձակապէս քարոզում են, գրգռում են ժողովուրդին և խռովութիւններ բարձրացնելով գլորում են գաւառապետներին, նահանգապետներին և երբեմն նոյն իսկ կառավարչապետներին. և կառավարութիւնը այնքան քաշւում է կղերից, որ ստիպուած է զիջանելու։ Ոչ մի բարձրաստիճան պաշտօնակալ չի յանդգնիլ կղերի վճռի դէմ գործ պաշտպանել և կղերից հովանաւորուածներին հալածել։

Կղերը՝ ազատ պետութիւն ունի պետութեան մէջ։ Մի բո-ղոքողի կամ ամբաստանողի աղերսի համաձայն մուջթէհիդը անարգել ուղարկում է իր սպասաւոր «սէիդներին» ամբաստանուածին քաշելու, բերելու, ծեծելու և մինչև անգամ արգելելու կամ սպանելու: Կղերը իրենց վճռով քանդում են, կործանում են, խլում այս ու այն անհատի ձեռքից տունը, խանութը, կալքը, կալուածքը և գանգատաւորին յանձնում։ Կղերի, յանուն շէրիաթի տուած վճռին, անպայման խոնարհւում են վարչական բոլոր պաշտօնակալները։ Այս պատճառով Պարսկաստանում ամենամեծ կապիտալիստ—կալուածատէրը, և ամենազլխաւոր պաշտօնականն անգամ, իր գլխի և գոյքի ապահովութեան համար, հովանաւորութիւն է փնտռում կղերի սպիտակ արաի տակ։ Աւելի նպաստաւոր է կղերի, քան թէ կառավարչական հովանաւորութիւնը, թէև խոհեմ մարդիկ երկուսն էլ փայփայում են։

15. Կղերը և զօրեղ կալուածատէրները ոչ միայն պաշտօնականների անկոչ այցերից, անորոշ հարկերից, փէշքէշներից, քրէական պատահական տուգանքներից, դատական պահանջներից ազատում են իրենց ռայաթին, ոչ միայն մասնակի յարձակումներից, աւազակութիւններից, բարձր պաշտօնականների ջոկերից, կարաւաններից և հոտերից ուղղակի պաշտպանում են և ապահովում իրենց գիւղերի սահմանները, այլ մինչև անգամ կառավարչական ագէտ, ապիկար և դրամի ետևից ընկած պաշտօնականներից հետզհետէ խլում են պետութեան իրենց կալուածների վրա ունեցած իրաւունքները։ Կենդրոնական վարչութիւնը ամէն մի գիւղի ստանալիք պետական արդիւնաբերական և դրամական հարկի գանձումը յանձնում է նահանգապետներին: Յաճախ զանազան պաշտօնեաներին, կամ ծառայողներին իրենց ռոճիկ կամ թոշակի

փոխարէն, չափի յաճախ հրովարտակով տրւում է այս ու
այն գիւղի պետական հարկը, որպէսզի Թոշակառուն մշտըն-
ջենաւորապէս—ժառանգաբար օգտուի այդ եկամուտի աղբիւ-
րից։ Թոշակառուն էլ գործ չունի գիւղի կառավարութեան,
նա էլ դառնում է մի տեսակ տէր գիւղի վրա, որն համար-
ւում է իր Թույուլը։ Զօրեղ կալուածատէրը ամէն միջոցի
դիմում է և նահանգապետի, կամ Թույուլի տիրոջ հետ իր
գիւղից վճարելիք հարկի հաշիւը մաքրում։ Եթէ ցորենի
խալւարը 25 Թուման էլ արժենա, զօրեղ կալուածատէրը նախ-
ընթաց տարիների արժէքը պատճառաբանելով, զանազան
խնարքների դիմելով խալւարը 4—5 Թուման փողով վճա-
րում է և ստացականները ստանում համաձայն պետական հար-
կային դրքերի քանակին։ Տկար կալուածատէրը ոչ միայն
բերքով է վճարում հարկը, երբ հացահատիկը Թանկ է, փո-
ղով է վճարում՝ երբ բերքն աժան է, այլ պարտաւորւած է
պետական, կամ Թույուլի տիրոջ պաշտօնեան իւր կալուած-
քում հիւրասիրել, նրա սպասաւորին կերակրել, ձիերը դար-
մանել, նշանակւած հարկը տարին մէկ վրադրով (յաւելւածը
լիազօրի—պաշտօնականի վարձն է) նրան յանձնել և ճանա-
պարհել։ Յաջող տարին պետութեան, կամ Թույուլի լիազօրը
ստանում է տասներորդ բուսական բերքը չափելով, իսկ ան-
բերրիութեան ժամանակ պետական արձանագրութիւնների
մատեանի քանակով։

16. Ընդհանրապէս առանց կալուածատիրոջ համաձայնու-
Թեան, կառավարութիւնը մշտնջենաւոր Թույուլի չի յա-
կացնում նրա գիւղի պետական հարկը, բայց այս պարագա-
յից օգտւում են դարձեալ զօրեղ կալուածատէրները։ Կառա-
վարութիւնը չի կարողանում ստիպել կղերին և զօրեղներին,
որ իրենց վճարելիքը—կալուածների հարկը տան այս ու այն

պաշտօնականին, նրա թօշակի հաշւին։ Այն ինչ զօրեղ կալւածատէրները իրենց ցանկացած թոյլ անձնաւորութիւններին յատկացնել են տալիս իրենց վճարելիք հարկը և ճնշում են հարստահարում այդ օրական ապրուստի կարօտ թօշակառուներին։ Այն ինչ թոյլ կալւածատէրները հպատակւում են բարձր կառավարութեան հրովարտակներին և յանձնառու են լինում զօրեղ Թույուլի տէր պաշտօնականներին յանձնել իրենց կալւածներից վճարելիք հարկը, Թույուլի տէրը, կամ կառավարչական հարկահաւաքը մի չորրորդ իրաւատէր է դառնում կալւածքի վրա։ Եթէ կալւածատէրը տկար է, հովանաւոր չունի, նրա հետ զուգընթաց իրաւունքներ է բանեցնում, առանց գիւղական անտեսական ծախսերին և բնական պատահարների տոյժերին մասնակցելու։ Այս պատճառով զօրեղ կալւածատէրները՝ թէ կղերը և թէ պաշտօնականները ամէն միջոցի դիմում են, որ պետութեան գանձարանից նրանց հասանելի թօշակի փոխարէն իրենց կալւածների պետական հարկերը շահի հրովարտակով իրենց Թույուլի վերածեն։ Կառավարչապետներն ու բարձր պաշտօնականները կղերի հետ աջակցած իրար են շնորհում պետական գանձարանին հասանելի կալւածական հարկերը։ Տարեկան պետական գանձարանից հազարաւոր խալւարներով ցորեն և թուման թօշակ ստացող կղերն ու պաշտօնականները ամէն մի քաղաքում բազմաթիւ են։ Եւ չպէտք է մտածել, որ այդ թօշակաւորները պետական ծառայութեան մէջն են, կամ պետութեան ծառայել են և արժանացել այդ վարձատրութեան։ Երբէք, դրանք, կամ դրանց պապերը, կամ պապերի պապերը ինչ որ ծառայութիւնների համար կորզել են այդ շնորհները։ Շատերը մինչև անգամ փողով—կաշառքով են գնել և առատութեան մէջ լողալով, նորանոր կալւածներ են գնում, այն ինչ

ներկայիս պետական իսկական արժանաւոր ծառայողներին վարձատրելու հնարաւորութիւն չունի կառավարութեան գանձարանը: Կալուածատէրների միակ երազը ու ձգտումը իրենց կալուածների պետական հարկը իրենց թոշակին Թու-յուլ վերածելն է։ Այսպէսով Ատրպատականի կալուածներից մեծագոյն մասը չէզոքացել են պետական պաշտօնակալու-թեան յարաբերութիւններից։

17. Պետական արդիւնաբերական և դրամական հարկերի մատեանները Ատրպատականում կազմուել է Նաիբ-Սալթանէ Աբաս-Միրզա Գահաժառանգի օրով, որանից գրեթէ 70 տա-րի առաջ։ Այս եօթանասուն տարուա ընթացքում այդ մատ-եանները թէ և երկու — երեք տեղ, չորս — հինգ ան-գամ յատուկ կոմիսիաների միջոցով վերաքննուել է. փոփո-խութիւնները յաւելուածների և կրճատումների ենթարկուել է, բայց ընդհանրապէս երեք անգամ տասնական տոկոսով է բարդուել նախկին մատեանների հարկի քանակի վրա: Այդ քննութիւնների ժամանակ զօրեղ կալուածատէրների աւերակ կալուածների եկամուտները կրճատուել, ջնջուել են, այն ինչ թոյլ կալուածատէրների աւերակների հարկերը անփոփոխ են մնացել, կամ հարկի բարդութեան ենթարկուել, շնորհիւ ան-բարեխիղճ, երկչոտ և կաշառակեր պաշտօնականների։ Իսկ զօրեղ կալուածատէրները, կաշառի, վայելած ակնածութիւն-ների և սպառնալիքների շնորհիւ, չեն թողել, որ իրենց չորս, վեց, տասն ու քսան անգամ ճոխացած գիւղերի հար-կերը նոյն քանակներով բարդուեն։ Այն գիւղերը, որոնք 70 տարի առաջ 20-30-50 ընտանիք, բնակիչ են ունեցել, դը-րանք այժմ հարիւրից մինչև չորս հարիւր ընտանիք են ամ-փոփում իրենց սահմանի մէջ. բաժան—բաժան լինելով չորս հինգ գիւղերի են վերածուել, այն ինչ պետական հարկը մը-

նացել է գրեթէ անփոփոխ։ Այն կալուածները, որտեղ 40 50 արօր էին ունեցել 70 տարի առաջ, ներկայիս 3-400 չութ ունին բայց պետական դրամական հարկը դարձեալ հին չափով են վճարում։ Կառավարութիւնը ամէն տարի նահանգապետներից հարկի գանձումը պահանջում է ոչ պակաս պետական վերջգրեալ մատեանների քանակից, իրաւունք տալով պաշտօնակալներին արդիւնաբերութիւնը չափել և տասանորդը գանձել իրենց օգտին։ Նահանգապետները իրաւունք ունին ազգաբնակութիւնը, սրանց արօրները և հօտերը համրել և որա համեմատ դրամական տուրքն ստանալ։ Նահանգապետները և սրանց ստորադրեալները պիտի օգտին—իրենց բարձր պաշտօնականների հասցրած նւէրների, ռոճկի և վարձատրութեան փոխարէն—այս հարկերի յաւելուածով, չափով և համրելով արտադրածից։ Կզերը, զօրեղ կալուածատէրները ընդդիմադրում են նահանգապետներին, կառավարչապետներին և ստիպում են իրենց ուժի առաջ խոնարհուելու։ Վճարում են միայն պետական մատեանների արձանագրութիւնների քանակով, կամ առ առաւելն գաղանապէս այդ քանակի վրա 3-6 տոկոս կանխիկ յաւելումով։ Այն ինչ զօրեղ կալուածատէրների գիւղերը այնպէս են ճոխացել, որ ինքը՝ կալուածատէրները պետական տասնորդական մթերքը և դրամական հարկը հնգից մինչև քսան անգամ աւել են վերցնում գիւղականներից։ Թոյլ կալուածատէրների գիւղերն են մանում կառավարչական, կամ Թուլյուլի տէրերի գործակալները, բերքը կշռում, դաշտի խոտերը չափում, արօրներն ու անասունները համրում եապա վերցնում իրենց բաժը։

18. Զօրեղ կալուածատէրները, չէզոքացրել են իրենց կալուածները կառավարութեան միջամտութիւնից, ձգտում են խլել ազատելու գիւղերը կառավարչական յարաբերու-

թյուններից, նույնպես տքնում են խուզել ռայաթի (կալվածքում բնակվող երկրագործների) չնչին ազատությունները և բոլորովին ստրկացնել գյուղական համայնքը։ Շէրիաթի արամադրության համաձայն ռայաթն ազատ է, նրա կամքը կաշկանդել, բռնաբարել չէ կարելի։ Ամէն մի երկրագործ անհատ կամ ընտանիք կարող է բնակած հողը թողնել, գաղթել և կամ պանդխտել։ Կալվածատէրը երկրագործին, բացի բուսական և յետագա հարկերը, ոչնչով ծանրաբեռնելու իրավունք չունի, նրա կյանքի, գույքի, ընտանիքի անդամների վրա և ոչ մի գերիշխանություն։ Եթէ կալվածատէրն ստիպէ իր որևէ ռայաթին թողնել իր կալվածքը, հեռանալ, նա պարտավոր է տալ երկրագործին նրա «ռիշան» (հողի մէջ անկածը, կամ ցանածը)։ «Ռիշան» ճանաչում է ձեռնհաս շինականների և գրացի կալվածներում բնակվող գյուղական ծերերի միջոցով։ Զօրեղ կալվածատէրները այնպիսի ճնշումներ են գործ դնում իրենց ռայաթի վրա, որ զանազան յանցանքների մեղադրությամբ և տուգանքների զիջումի համար, ստիպում են թուղթ տալու «ռիշանից» ձեռք քաշելու և բավարարություն ստացած լինելու համար։ Զօրեղ կալվածատիրոջ դէմ ոչ միայն չի յանդգնի ռայաթը պահանջներ բարձրացնելու, այլ կալվածատէրների հաճոյակատար պաշտոնակալները, գործակալները, իրենց հերյուրած ամբաստանություններով, միշտ ըմբոստ շինականներից կանխապէս կարևոր ստորագրությունները կորզելով, ապահովում են իրենց տէրերի» անձեռնմխելի իրավունքները»։ Եթէ կալվածատէրը ռայաթին դուրս հանէ գյուղից, վերջինը իրավունք ունի իր բնակարանի ծածկոյթը տանել, պատերը կալվածատիրոջ թողնելով։ Յաճախ զանազան երևակայական յանցանքների պատճառով ռայաթը այս իրավունքից էլ ձեռք քաշելու թուղթ

է տալիս ճարպիկ գործակալներին։ Այս պատճառներով ազատ ռայաթը կաշկանդւում է կալւածքին—տանը և «ռիշախին», պարտաւորւած խոնարհւում է կալւածատիրոջ գործակալների ապօրինի և անտեղի պահանջների առաջ, առանց մըրմունջ անգամ բարձրացնելու։ Յաճախ ռայաթը հինգ—տասը—քսան տարով աշխատում է, այգի է տնկում, կամ նուշի, մըրգեղենի ծառեր առաջացնում և կամ անտառներ է գցում, շինութեան ատաղձ հասցնում ուռի, բարտի, այն էլ ահագին տարածութիւններով։ Յանկարծ թոյլ կալւածատէրը սնանկանում է, կալքը անցնում է մի զօրաւորի ձեռքը, որն ագահութիւնից աչք է տնկում հողագործի դաժան աշխատանքով հասցրած ծառաստանի վրա և ուզում է դրանից գնով ետ ստանալ կալւածքի համար վճարած հողարները։ Երկրամշակը չի դուր գալիս կալւածատիրոջ, հէնց իր ջանքով հասցրած ծառաստանների պատճառով, ստիպւում է գիւղը թողնել։ «Ռիշախի» գինը խաղաղութեամբ չի վերջանում և անգութ վաշխառուն—կալւածատէրը, հակառակ շէրիաթի և կարգերի, առաջարկում է կացինը դնել ծառերի արմատին։ Թէև շէրիաթը «Ռիշախի» տիրոջ իրաւունքները պաշտպանում է զօրեղ կալւածատիրոջ դէմ, բայց ոյժը Պարսկաստանում ամենակարող է և օրէնքով սրան կաշկանդել, սրա մեքենայութիւնները փշրել շատ դժւար է, եթէ բոլորովին անհնար չէ։ Եթէ կալւածատէրը չկարողանա էլ կտրել տալ այգեստանները, ծառաստանները և անտառները, կսկսի իր գիւղում շինելիք ապարանքի, ամբարների, ախոռների համար անվճար ատաղձ վերցնել շինականի անտառից, վառելիք վերցնել և կամ մըրգերից անխնա օգտւել...։

19. Ինչպէս ասի. Ատրպատականի կալւածատէրի գիւղական հասարակութիւնից ստացած հարկի քանակը, տեսակը,

չափերը և պայմանները այնքան բազմազան են, որ դրանց մանրամասն նկարագրութիւնը մեզ շատ կհեռացնի սոյն յօդուածի ծրագրից: Ուստի որքան որ հնարաւոր է այդ զանազան ձևերը ամփոփելով, որոշենք և եզրափակենք: Ընդհանրապէս գրական օրէնքի՝ Ղուրանի տրամադրութեան համաձայն, Ատրպատական աշխարհում, պետութիւնը իրաւունք ունի բուսականութիւնից մի տասանորդ ստանալ, պետական և հասարակական ծախսերի համար: Բայց իսկապէս այսօր պետութիւնը ոչ թէ տասանորդ, այլ մի քառասներորդ, մի վաթսուներորդ հազիւ է ստանում: Ինչպէս վերև նկարագրեցի, կառավարութեան բուսականութիւնից ստանալիք հարկը ընդհանրապէս հաւաքում են իրենք՝ զօրեղ կալուածատէրները, կամ զօրեղ Թույուլի տէրերը և շատ հազիւ է պատահում, որ կառավարչական գործակալները կարողանան մտնել այս ու այն խեղճ կալուածատէրների գիւղերը: Թէ Նաիբ-Սալթանէ Աբբաս Միրզայի օրով կազմուած ցուցակները, թէ վերաքննիչ կոմիսիաների ցուցակները ենթադրութեամբ են որոշուած, զօրաւորների եկամուտները անհամեմատ նուազեցրած, իսկ Թույլերի կալուածների սովորական բերքի—տասանորդի մի երրորդն ու մի չորրորդն է հազիւ նշանակուած: Կան գիւղեր, որտեղ կալուածատէրը պետական տասանորդական հարկ վերցնում են երկրագործներից 300—400 խարուար, այն ինչ կառավարութիւնը իւր անունով ժողովուած—ժողովրդից գանձած այդ եկամուտից ստանում է մի վաթսուներորդ, մի քառասներորդ բաժինը: Այսպէսով պետական հարկի մեծ բաժինը կլանում են զօրեղ կալուածատէրները, Թույուլի տէրերը, կամ կառավարչական գործակալները:

20. Գիւղացին իւր դառն քրտինքով դատած հացահատիկն կալի մէջ չի կարող ձեռ մեկնել, մինչև որ կալուածա-

տիրոջ ներկայացուցիչը չգա, չչափէ այդ բերքը: Դեռ օր առաջ կալի տէրը մի նւէր, մի ատամի վարձ պիտի առաջարկէ ամենակարող մուբաշիրին (կալուածատիրոջ գործակալին), նրա թոյլտուութիւնը ստանա կալը էրնելու։ Այս նւէրը չի հաշւում ընդհանուր հարկերի մէջ, չնայելով որ մի նշանաւոր բաժին է կտրում ռանչպարի ապրուստից։ Մուբաշիրը․որ ռայաթին որ խէթ աչքով է նայում, կալոյին է հախից գալիս։ Կալը ծեծւած պատրաստ է, քամին ամպեր է դիզում, անձրեւը, կարկուտը, նոյն իսկ ձիւնը սպառնում են գիւղացու ամբողջ տարւա դառն դատումով առաջացրած բարուն, այն ինչ մուբաշիրը անգթաբար տարածւած ծխում է իր ղալյոնը. չի ուզում տեղից շարժւել, գնալ կալի գլուխը կանգնել էրնել տալու, չափելու։ Խեղճ գիւղացու ամէն մի պերպին ու մրմունջին նա վէս կերպով պատասխանում է— գործ ունիմ, քէյֆ չունիմ, դեռ այսօր Ալիի, Վալիի կալն եմ չափելու։ Երկնքի պատուհասից կալն ազատելու, ամբողջ բերքը ապականելուց ու փճելուց փրկելու համար, գիւղացին ստիպւած աւելացնում է կաշառի քանակը, մինչեւ որ հասնում է նպատակին։ Մուբաշիրը վերցնում է կալից տասից երկուս, մինը կառավարութեան՝ միւսը կալուածատիրոջ անունով։ Ցորեն, գարի, հաճար, կորեկ, նոյնպէս «սէյֆի» կոչւած հատիկներից՝ ոսպ, սիսեռ, կտաւատ, կանեփ և այլն, բոլորից երկրամշակը տալիս է տասնից երկուս: Նոյնպէս կալի ղարմանից այդ չափով:

21. Ջրարբի հանդերի պայմանը բոլորովին փոխւում է: Այստեղ կալուածատէրը ընդհանրապէս բերքի տասներորդը վերցնում է կառավարութեան անունով, մնացորդը երեքի բաժանելով՝ մէկը ինքն է վերցնում, երկուսը երկրամշակին թողնելով։ Տեղ տեղ կալուածատէրը 4/10րդ է վերցնում, բայց

պետական տասներորդից, թողնելով երկրամշակին բերքի միւս կէսը 5/10-րդ բաժինը։ Ռայաթը իր սերմով, իր գործիքներով, իր անասուններով և բանուորներով աշխատում է, տանելով բնութեան ամեն տեսակ ծանրութիւնների ու պատուհասների տակ և արդիւնաբերածի կէսը տալիս է, տանում յանձնում է ջրարրի կալուածատիրոջ ամբարին։

22. Բացի պետական տասնորդական հարկը—աշարը, բացի կալուածատիրական տասներորդական տուրքը, ռանչպարը վճարում է կալուածատիրոջ մուբաշիրին, կամ թիւլիւլի տիրոջ և կամ նահանգական վարչութեան գործակալին որոշեալ տասնորդական հաւաքարարի հարկը, մի տասներորդ, այդ քանակի վրադիրով։ Օրինակի համար, եթէ մի հողագործ իր հարիւր խալւար բերքից տալիս է տասը խալւարը թիւլիւլի տիրոջ գործակալին, տասը խալւարն էլ կալուածատիրոջ մուբաշիրին սովորական հարկը, նա յաւելացնում է մի խալւար թիւլիւլի տիրոջ գործակալի համար և մի խալւար էլ կալուածատիրոջ մուբաշիրի համար վարձ, այսպէսով ռայաթը քսան տոկոսի փոխարէն վճարում է 22%։

23. Եթէ կալուածատէրը ուլէմա—կղեր, կամ սէյիդ է (մարգարէի սերունդ). նա բացի վերոգրեալ հարկերը, ուրիշ կամաւոր բաժ էլ է պահանջում—կորզում նախապաշարուած ռայաթից։ Կալուածական հարկերի վճարումից, սերմ ու երկրագործական մշակների, բանուորների վարձերը բերքից դուրս գալուց յետոյ, երկրամշակին ինչ զուտ բաժին—շահ որ մնում է, դրանից ուլէմա կամ սէյիդ կալուածատէրը 5—10% է պահանջում շէրիաթի համաձայն կարգաւորէնների, չքաւորների բաժանելու։ Դիցուք թէ հարիւր խալւար բերք ունեցող երկրամշակը 22 խալւար հարկը վճարելուց, 16 խալւար սերմը դուրս գալուց և 22 խալւար էլ մշակի—բանուորի՝ դըր-

սից թէ տան անդամներից, վարձերը յանձնելուց և անպէտքացած անասունների և գործիքների գինը տասը խալւար էլ դուրս գալուց յետոյ, տիրանում է իւր զուտ շահին—երեսուն խալւար բերքին։ Այս 30 խալւարից 3, կամ 6 խալւարը պարտաւոր է տալու իւլէմա, կամ սէիդ կալւածատիրոջ, իբր իւր զուտ արդիւնքի տասներորդ, կամ խումսը՝ հինգերորդը. ողորմութիւնը (զէքեաթ) աղքատ, կարօտ և արժանաւոր հաւատացեալ թշւառներին բաժանելու։ Եթէ կալւածատէրը ոչ մօլլա է, ոչ էլ սէիդ, այդ դէպքում իւլէմաների, կամ սէիդների ներկայացուցիչները գալիս, բազմում են գիւղի թըմբերում, իրենց անվերջ թախանձանքներով, սպառնալիքներով, ջէհնէթի և ջէհնէմի ոյժերի քարոզներով ստիպում են շինականին, հոգու փրկութեան համար այդ ողորմութիւնը վճարելու։ Ամենատկար և ամենաժլատ հողագործներն անգամ իրենց զուտ արդիւնքից 3—5% վճարում են հոգեբաժին այդ տզրուկներին, որոնք աղքատի, կարօտեալի անունով հաւաքում և իւրացնում են։

24 Մուրաշիրը գարնան սկզբին ռայաթին տիրոջ ամբարից մատակարարում է սերմնացու, որքան որ պահանջ ունենան։ Կալւածատէրները շատ խիստ պահանջում են իրենց ռայաթից, որ կալւածքում բաց տեղ չթողնեն, բոլորը մշակեն, մինչև անգամ կարևոր դէպքում փոխառութեամբ լծկան անասուններն էլ են տալիս։ Իսկ ռայաթը փոխառութիւնը՝ սերմնացուն շուտ ստանալու համար՝ պարտաւորւած է մուրաշիրի շրթունքներին մեղր քսելու։ Այս կաշառքն էլ փոխառութեան գումարի 1—2%-ից պակաս անկարելի է յուսալ։ Սերմնացուն էլ աղայի ամբարից առանց տոկոսի չի տրւում։ Ընդհանրապէս սերմնացուն փողի վերածում և (21%) մի աքասի թումանին վրա գալով վեց ամսով մուրհակ են

առնում հողագործից։ Շատ տեղ էլ խալւարը քառորդ խալ-ւարով են տոկոսով (25%) տալիս ցանքից մինչև քաղ, տասն-եկից խալւար սերմնացուի համար չորս խալւար տոկոս է վճարում գիւղացին։

25. Երկրամշակը պարտաւորուած է առւոյտի, խոտի և դարմանի հօրկը դաւառի քաղաքը տանել յանձնել կալուա-ծատիրոջ ցոյց տուած տեղը. նոյնպէս հացահատիկի հարկի մի որոշ մասը։ Այս ծառայութիւնը կոչւում է «բարգեարդա» և ամենից անտանելին է գիւղացու համար, որովհետև կալերը դեռ չվերջացրած, աշնան ցանը չսկսած, աշխան անձրևերին, սարերի բքին, ցրտին ու սառնամանիքին ռայաթը պարտա-ւոր է իր ձին, էշը փոխանդի մատնել և այս բէգեարը հաս-ցնել իր տիրոջ։

26. Այս բոլորից յետոյ ռայաթը «սւարիզ» կոչւած մի հարկ էլ ունի, որը նոյնպէս ընդհանուր հարկի 10—20% է կազմում, համաձայն տեղական պարագաների և աղայական պայմանների։ Ռայաթը պարտաւոր է աղայի տանը նւէրներ ուղարկել, տօնական զառներ, մսացու ոչխարներ, տուն դը-լուխ 5 վառեկ, 25 ձու, 3 ֆունտ իւղ, 2 ֆունտ պանիր, մածուն, սեր, և այլն և այլն։ Կալուածատիրոջ մուբաշիրի գիւղում ապրած ժամանակ, որ վեց ամսից պակաս չի տե-ւում, նրա ուտելիքը, հացը, իւղը, պանիրը, հաւը, գառը, թէյը և շաքարը, մուբաշիրի հիւրերի, աղայի, պետական գոր-ծակալների հիւրասիրութիւնները, սրանց ձիերի կերը, գիւ-ղից քաղաք՝ կալուածատիրոջ կամ ուրիշ տեղ ուղարկած ծառայողների և սրանց ձիերի օրավարձը, պատահական ծախ-սերը, աղայի տան, ամբարի, ախոռի և վրանների նորոգու-թիւնները բարդելով՝ բաժանում է գիւղական համայնքի վրա «սւարըզ» հարկ անւան տակ։

27. Կալուածներում գտնուած աղբիւրներին, առուակներին շրջապատող մարգատանները կալուածատիրոջ անձնական սեփականութիւնն է համարւում, սրանք ամէն տարի առանձնապէս են վարձով տրւում։ Կան այնպիսի ագահ կալուածատէրներ, որ իրենց գիւղերի ամենաբերրի, ամենարգաւանդ հողերը իրենց համար են ցանել տալիս, իրենք են օգտւում։ Այսպիսի գիւղերում համայնքը իւր անդամներով՝ հերթով այդ արտերը ցանում, քաղում, կալսում և յանձնում է կալուածատիրոջ ամբարին։ Այս ծառայութիւնը արժան չի նստում ռայաթին։

28. Ամէն մի հողագործ իւր մաքրած, վարած, պարարտացրած հողի տէրն է, նրա այդ իրաւունքը անձեռնմխելի է։ Ո՛չ միայն դրացիները, այլ մինչև անգամ կալուածատէրը իրաւունք չունի մէկին իւրացրած—մշակած արտից ու հողից հեռացնել։ Բայց եթէ մի երկրագործ մի քանի տարի շարունակ անմշակ թողնէ իւր հողը, տէրն իրաւունք ունի հողը յանձնել մի ուրիշին, որպէսզի անմշակ չմնա։ Այս պատրւակով մուբաշիրները յաճախ մեծամեծ կաշառներ են վերցնում գիւղացիներից, ուժեղները խլում են թոյլերի հողերը և վարում։ Այս պարագաներում տրւած կաշառն էլ մի նշանաւոր տեղ է բռնում ռայաթի կեանքում և մուբաշիրները ծծում են թշւառների սնունդը։

29. Բացի բնական մթերահարկը, ռայաթը վճարում է ծխական, կամ տնական հարկ հնչիւն դրամով։ Նաիբ-Սալթանէ՝ Աբաս-Միրզայի օրով կազմւած կառավարչական հարկային ծխականների ցուցակի համաձայն, ամէն մի գիւղական ընտանիք (ամուսնացած մարդը իր կնոջ և զաւակների հետ միասին) պարտաւոր է մի թուման (մօտաւորապէս երկու րուբլի) պետութեան ծխահարկ վճարելու. Իսկ ամէն մի

չափահաս, գործելու ընդունակ ամուրի (տասնվեց տարեկանից բարձր) կէս թուման։ Ներկայիս կալուածների ագենտների գործակալները գիւղական արձանագրութիւնների մատեանները ձեռքերին կէտ առ կէտ գործադրում են այս կանոնը։ Բայց ինչպէս նախորդ հատուածներում յիշեցինք, այս ծխականների մատեաններն էլ պարսիկ կաշառակեր պաշտօնականները մասների արտոնքից ջնջելով են գրել, իսկ եօթանասուն տարուա խաղաղ կառավարութեան աճեցողութիւնը քօղի տակով են դրել մեծամեծ կալուածատէր գլխաւոր կառավարչապետները, վէզիրները և չեն ցանկացել կալուածատէրների քսակին կպչել։

30. Բացի ծխահարկից, երկրագործը հնչուն դրամով է վճարում նոյնպէս իր անասունների հարկը (Մէլաի-Մաւաշ, կամ գեօր-ալ)։ Երկրագործի արօրին, կամ գութանին լծուող եզներն ազատ են ամէն տեսակ հարկից։ Երկրագործը իր ունեցած ամէն մի ոչխարի, այծի, կովի, իշու, ձիու, ուղտի, մատակի (գոմէշ) համար հարկ է վճարում։ Այս հարկն էլ, նախընթաց հատուածի հարկի համաձայն, պետական է, բայց հաւաքուած գումարի տասներորդը, քսաներորդը հազիւ թէ արձանագրուած է պետական մատեաններում։ Այսօր կալուածատէրը կառավարութեան անունով գանձում, մթերում, լցլցում է իւղի, մեղրի մէջ, շղշղում է ոսկու, մարգարիտ ու գոհարի մէջ, իսկ շինականը քրտնաթօր գիշեր—ցերեկ տանջւում է. թէ մրտեղից մի քանի սև փող կորզէ որ, որե-լցէ մուբաշիրի երեսին շպրտէ, եախէն ազատէ։ Գիւղացին ամէն մի ոչխարի, այծի համար 12 շահի (մօտ 12 կոպ.) է վճարում տարեկան, իշու համար 1 ղր. 5 շահի (25 կոպ.) կովի համար 1 ղր. 10 շահի (30 կ.). ուղտի համար 5 ղրան (1 ռուբ.) մատեանի համար 2 ղրան (40 կոպ,), մատակի հա-

մար 1 դրան 10 շահի (50 կոպ.)։ Անտանական այս հարկը ամէն տեղ համահաւասար չէ, ամենելով թէ որքան զարգացած է անտանապահութիւնը և որքան ընկած է հողագործութիւնը, այնքան էլ բարձրանում է անտանական հարկերը։

31. Տեղ տեղ կալուածատէրները ծխահարկն ու անասունների հարկը միացնելով, փոխանակել են չուլթի (արօրի) հարկի։ Ընդհանրապէս գիւղերում բնակւում են «Ղարա» կոչւած բազմաթիւ ընտանիքներ, որ ոչ ցանք ունեն, ոչ հօտ, ապրում են օրավարձով, արհեստներով, մուրացկանութեամբ և Ալլահն է խաբար թէ էլ ինչով։ Այս ընտանիքների անասելի աղքատութիւնից ոչ ծխահարկ, ոչ անասնահարկ և ոչ էլ մի կաշառք կարող են գանձել ամենադօրեղ միւշտէիդների ամենաճարպիկ մուբաշիրները։ Բայց քանի որ սրանց գոյութիւնը անհրաժեշտ է ունեւոր չինականների անտեսութեան զարգացման համար, սրանից կալւածից հեռացնելը նպաստաւոր չէ կալուածատէրների համար։ Ուստի «Ղարաների» հարկը «համբաներից» գանձելու նպատակով առաջացել է չուլթի (արօրի) հարկը։ «Ղարաները» սովորաբար մշակութիւն են անում «համբաների» մօտ, օրավարձով կամ տարով—հօտայ և հովիւ դառնալով, սրանք անհամեմատ շնչին վարձերով ահաւոր ծառայութիւններ են մատուցանում երկրագործներին և մանաւանդ կալուածատիրոջ, ուստի բնական էր, որ սրանց հարկերը մի կերպ բարդւէին արդիւնաբերութեան վրա։ Չութի հարկը իւր քանակով տարբերւում է ամէն մի գիւղում ամէն մի գաւառում։ Սովորաբար ամէն մի չուլթի համար վըճարում է ռանչպարը տարին 2-ից մինչև 10 թուման (4 ր. մինչև 20 րուբլի)․ Ոչ մի գիւղի այս հարկի քանակը չի կարելի համեմատել հարևան գիւղերի հարկերի հետ։ Նոյն ձորի մէջ մի գիւղ 2 թուման է վճարում չուլթին, միւսումը 8

թուման։ Պատճառը հողի ծաւալն ու որակն է, որովհետև 2 թուման վճարող գիւղի արօտը փոքր է, մարգաստան չունի. այն ինչ 8 թուման վճարողը մեծ քանակութեամբ անասուններ պահելուց զատ, խոտ ու առւոյտ է ծախում իր դրացի գիւղացիներին և քաղաք է տանում մեծ քանակութեամբ առւոյտ։ Բացի այս կան գիւղեր, ուր չորս եզը մի չութ է հաշւում, տեղ տեղ երեքը և յաճախ երկուսը մի չութ է համարւում և հարկը հաւաքւում։ Այս բոլորը կապ ունի գիւղի ծաւալից, հողի որակից ու քանակից։

32 Թէև ամեն գիւղի սահմանում ջրարբի տեղերում գտնուած բանջարանոցները, բոստանները, պարտէզները և բրնձի արտերը կալուածատէրները տիրանում են և իրենք են մշակել տալիս, կամ վարձու տալիս, բայց եթէ գտնւում են երկրագործներ, որոնք կարողացել են գիւղի սահմաններում բանջարանոցներ, բոստաններ և պարտէզներ առաջացնել, կալուածատէրները դրանց համար յատկացրած ամէն մի խալւար հողից ($2\frac{1}{4}$ դեսեատի մօտաւորապէս) վեց թուման (12 րուբլի)։ Հարկ են ստանում Գրեթէ Ատրպատականի ամեն մի կողմում, բոլոր խաղողի այգեստաններից, նշի, խնձորի, սալորի և ամեն տեսակ մրգեղէնների պարտէզներից կալուածատէրները հողի չափով են հարկ ստանում։ Այս հարկը կարելի է համարել ընդհանրական, որովհետև գրեթէ ամեն կողմ խալւարից*

*) Ատրպատականում հողերը չափւում են լարով։ Ամեն 20 արշին երկայնութիւն և 10 արշին լայնութիւն, կամ 200 քառակուսի արշին տարածութեամբ հողը կազմում է մի լիտր։ Այս լիտր հողը (թաղման) կոչւում է 200 դինարանոց լիտր, կամ աբբասի թաղման։ Հարիւր լիտր հողը կազմում է մի խալւար։ Տեղ տեղ 125 քառակուսի արշինն է համարւում մի լիտր (թաղման), որ կոչւում է 125 դինարանոց, կամ երկուսուկէս շահանոց լիտր։ Սրա խալւարը դարձեալ 100 լիտր և կոչւում է 125 դինարանոց-խալւար. պարսկական արշինը Ատրպատականում ռուսական մի արշին և 9 վերշոկ է։ Տեղ տեղ մեծանում է այս արշինը, կամ փոքրանում։

վից թուման են առանում կալուածատէրները ամէն տարի, ջրդի թէ անջրդի դէպքում։

33. Անտառների (առապձի—չինութեան) համար յատկացուած հողերից կալուածատէրը իրաւունք չունի տարեկան հարկ պահանջելու. բայց անտառից կտրուած ծառերից տասնից երկուսը, տեղ տեղ տասնից երեքը կալուածատիրոջն է։ Բացի այդ՝ կալուածատէրը կարիք ունեցած դէպքում չի խնայում կացինը իւր ռայաթի անտառների մէջ անխնա բանեցնելու։ Զօրաւոր կալուածատէրները տասից երեքի փոխարէն, երբեմն տասնից չորս են վերցնում անտառից կտրուած փայտից, հիմնուելով այն փաստի վրա, թէ իրենց սեփական ջրերից է օգտուել ու աճել անտառը։

34. Թէ ծխահարկն ու անասնահարկը, կամ թէ չուլթի ու չափով հողերի հարկը ժողովող մուբաշիրը (գործակալը,) սովորական հարկի իւրաքանչիւր քառասուն թումանի վրա մի թուման յաւելուած է անում, կամ 2½ % ով աւելացնում է, որպէս իւրեն վարձ։ Դրամական բոլոր հարկերը գիւղացին պարտաւոր է 2½ % յաւելուածով վճարելու։ Գիւղացին մեծահոգութեամբ—մեծամեծ զրկանքներ կրելով տալիս է այդ յաւելուածը, բայց մուբաշիրը որքան որ շատ է մաշկում հողագործին, այնքան խրախուսուած անխնա ամեն մի առիթից օգտուելով, ղանազան տուգանքների և կաշառատւութեան է դատապարտում ռայաթին։ Ռանչպարը անակնկալ տուժերից խոյս տալու, դրպարտութիւններից ազատուելու և գլխացաւի չը մատնուելու համար միշտ մուբաշիրին, նրան հասանելի 2½ % փոխարէն 5 % է վճարում այն էլ գաղտնաբար, մինչև իսկ դրացիներից, գիւղական տանուտէրներից թաքուն։

35. Անգործ ձեռքերը այնքան շատացել են, ամէն մի կալուածատիրոջ այնքան բազմաթիւ մուբաշիրներ են շրջապա-

տել, որ ընդհանրապէս կալուածատէր աղաները մուրաշիրներին յատուկ 2% հացահատիկը և 2½% դրամական յաւելուածները երբէք չեն թողնում, որ դրանք իւրացնեն։ Սովորաբար մուրաշիրները ստանում են 2—3 խալւար ցորեն և 20—30 թուման փող, իսկ կալուածքում հաւաքուած մուրաշիրական ցորենն ու դարմանը առւոյտն ու խոտը, համաձայն ցուցակների և հաշուագրերի մնում է աղայի ամբարում։ Մուրաշիրներին յատուկ եկամուտով աղան կարող է իւր դրանը հինգ տաս ծառա պահել, էլ երբ թոյլ կտա, որ մի մուրաշիր այդ բարին իւրացնէ։ Այս պատճառով մուրաշիրների վարձատրութիւնը այնքան չնչին է, որ նրանք ստիպուած ամէն մի առիթից պիտի աշխատին օգտուել և կաշառակերութեան դիմել։ Իսկ կաշառքն այնքան անմեղ սովորութիւն է այս երկրում, որ և ոչ մի աղա իւր ստրուկին չի մտածիլ մեղադրել, եթէ առիթից օգտուել է վերջինը և մաշկել թոյլերին։ Ընդհակառակը այսպիսի գործակատարը, որպէս աչքաբաց մարդ, աւելի մեծ աստիճանների է հասնում, աւելի վստահութիւն ներշնչում և աւելի ճոխ գործերի դրւում։

36. Վերոգրեալ սովորական և ուղղակի հարկի ձեն ստացած պետական կամ թույուլի, կալուածատիրական, մուրաշիրի, կրօնական—ողորմութեան և համայնական հարկերով եթէ կարողանար գլուխն ազատել Ատրպատականի սակաւապէտ ռայաթը, նրա ձեռին դարձեալ կմնար իւր արդիւնաբեծից մի այնպիսի բաժին, որով հնարաւոր լինէր գարի հացով և ցնցոտիներով մի կերպ կեանք քաշ տալ։ Բայց այս սոսկ գարի հացից էլ զրկւում է, լեռնական վայրի խոտի ու արմատիքի դիմելու է պարտաւորւում, երբ տեղի-անտեղի կառավարչական աղայական, մուրաշիրական և տանուտէրական տուգանքների է մատնւում, ապօրինի—արտակարգ վճարում-

ների է ենթարկւում։ Որևէ գիւղի սահմանում կատարուած սպանութեան և չորոպատումի համար պատասխանատու է նոյն սահմաններում ապրող գիւղական համայնքը։ Այս օրէնքը թէև իւր լաւ կողմն ունի, ամէն մի գիւղական հասարակութիւն մեծ զգուշութեամբ հսկում է իւր սահմանները, հասարակական ամէն մի անդամ հետամտում է չարագործներին, բայց վատ կառավարիչների շնորհիւ այս օրէնքը մեծամեծ զեղծումների և կաշառակերութեան առիթ է տալիս: Ճշմարիտ է մի գիւղական հասարակութիւնը 50—60 ծուխ մի սպանութեան, կամ մի կողոպտումի պատճառով վճարելիք 2—300 թումանով չի կործանւիլ և սոյն օրէնքի սարսափից իր բոլոր անդամներով միշտ աչալուրջ կհսկէ սահմանները և կհալածէ չարագործներին, բայց կաշառ—փող վաստակելու տենչով կուրացած խանի, մէմուրի, մուբաշիրի ձեռքում այս միջոցը սոսկալի զէնք է։ Պաշտօնականները մի զօրեղ աղաի վրա երբէք չեն յանդգնիլ իրենց ատամները փորձելու—փշրելու, ուստի նրա սահմաններում պատահած չարագործութիւնը սահմանակից մի ուրիշ գիւղի վրա բարդելուց էլ չեն խուսափում և նրա հասարակութեան ամէն մի ընտանիքին 5—25 թուման տուգանքի ենթարկելուց էլ չեն խղճահարւում։ Այս պատճառով էլ ռայաթը ուրախութեամբ գլուխ է խոնարհում զօրեղ կալուածատիրոջ ծանր հարկերի առաջ և դատարկւում, ամայանում են տկարների կալուածները։

37. Աղջիկ փախցնելու սովորութիւնը գրեթէ ընդհանրացած է այս երկրում, որի ընթացքում վիրաւորութիւններն և սպանութիւններն անպակաս են։ Այս պարագաներն էլ մեծ տուգանքների պատճառ է դառնում, բայց արմատացած սովորութիւնների առաջն առնելը գրեթէ անհնար է, այս դեռ բարբարոս ժողովրդի մէջ։ Սովորութեան համաձայն

փեսան մի նշանաւոր «Բաշլղ» (Գլխագին) է տալու աղջկա ծնողներին: Վերջինների դիրքի, աղջկա գեղեցկութեան և ժրաջանութեան աստիճանների համաձայն «Բաշլղը» բարձրացնում են նորա ծնողներն ու եղբայրները: Ճարահատեալ դիմում են փախցնելու և աւելի մեծ տուգանքների են ենթարկւում: Կալւածատէր ազան իւր հարկն առնում է աղջիկ մարդու տալու դէպքում, առանց նրա հրամանի և սովորական փէշքեաշների հարսանիք չի բռնւում, իսկ փախցնելու դէպքում էլ այդ հարկը, մանաւանդ եթէ փախուստը կապւած է ոճիրների և սպանութեան հետ, աւելի մեծանում է:

38. Ատրպատականի վարչութիւնը ստատիստիկի մասին գաղափար անգամ չունի, բոլորովին անհնարէ որոշ թւեր գըտնել և երկրամշակի վիճակի մասին ընթերցողին ճշգրիտ գաղափար տալ: Որքան հնարաւոր էր բերանացի հարց ու փորձերից, կալւածատէրներից, մուբաշիրներից, գործակալներից, գիւղական ժողովրդից աչքով տեսածից և վարչութեան տակ գտնւած գիւղերի հաշիւներից՝ հետևեալ եզրակացութեան եմ հասել:

Ա. Ատրպատականի գիւղական հասարակութիւնը ընդհանրապէս փոքր ընտանիքից է կազմւած, քանի որ երկու ամուսնացած եղբայրներ, կրօնի վարդապետութեան համաձայն, մի և նոյն յարկի տակ ապրել չեն կարող: Մինչև անգամ ամուսնացած որդիքը իսկոյն ծնողներից բաժանւելու պարտաւորւած են: Այս պատճառով ամէն ծխի ընտանիքի անդամները 4—6-ի մէջ է տարուբերւում, հայր, մայր և 2-4 զաւակներ: Միջին թիւ կարելի է ընդունել 5-ը.—ծնողները 2 տղա (դեռահաս և երեխայ) և մի աղջիկ, քանի որ աղջիկները փոքրահասակ են ամուսնացնում: Այսպիսի ընտանիքը մի չութից աւելի չի կարող կառավարել (չորս եզ—երկու լուծ): Եթէ չութից

աւել ունեցողներ լինին, պակաս ունեցողներն էլ նրանցից սակաւաթիւ չեն, քանի որ ծանրահարկի տակ ճնշուած է Ատրպատականի ռանչպարը։ Տան գլուխ 1-2 կով, մի մատեան, 1-2 էշ կամ ջորի, 3-10 կթան ոչխար կամ այծ հազիւ է պահում ամէն մի ընտանիք, դրանք էլ դժւարութեամբ են կառավարում։

Բ. Ամէն մի չութով Երեք խալւար սերմից աւել ցանել չի կարելի։ Հողի պառաւութեան, չէկութեան պատճառով շատ նոսր են ցանում։ Մանաւանդ որ երկրի փոքր մասում (Սալմաստ—Ուրմիի կողմերը) գործածում են գութան, մեծ մասը արօր են բանեցնում։ Ուստի 3 խալւար սերմը (2 ցորեն, մի գարի սովորաբար) ցանում են մօտաւորապէս երեք խալւար (արբասի) հողում (մօտաւորապէս 6 $^3/_4$ դեսեատինում)։ Ամեն մի չութի տիրոջ ոյժից վեր է 3 խալւարից աւելի հող խոզան թողնել և վարել։ Տան գլուխ էլ հազիւ մի մի խալւար առւոյտի տեղ գրաւեն։ Հետևաբար ամէն մի չութի տէր ծխական իւրացնում է մօտաւորապէս 7 խալւարից ոչ աւել հող (15 դեսեատին մօտաւորապէս), բացի համայնական արօտից։

Գ. Ատրպատականի մեծագոյն մասը չիկահող է, սևահողը շատ քիչ է, ուստի ցանքը արտադրում է առատ տարիներում 7-8, շատ անգամ հազիւ տասը, սովորաբար 4-ից մինչև 6, իսկ ստերջ տարիներում 2-1-ից էլ պակաս։ Մանաւանդ որ արհեստական պարարտացում գոյութիւն չունի, մեքենաներ, կատարելագործուած գութաններ չեն գործադրւում։ Միջին թւով բերքը կարելի է առ առաւելն 5 հաշւել։ Հետևաբար մի չութի տէր ընտանիք դէմի տեղերում սովորաբար 3 խալւար ցանելով վերցնում է ոչ աւելի քան 15 խալւար։ Ընդհանրապէս երկու բաժին ցորեն և մի բաժին գարի են ցանում, իսկ լեռնային, բարձրադիր կողմերում ընդհակառակը։

*Դ. Տասնեհինգ խալւար բերքից կամ 1500 լտրից առյաթը վճարում է պետական և կալւածատիրական հարկը 300* լիտր, *մուբաշիրի և գործակալի 30* լիտր։ *Սերմը 300* լիտր *և որա տոկոսները, եթէ աղաից է ստացել, առնւազն 75* լիտր։ *«Աւարդի» հարկը միջին թւով միշտ 2-3 %-ից աւել է բարդւում, մօտաւորապէս 45* լիտր։ *Ծխահարկի, անասնահարկի փողը, ընտանիքի մի հասած տղի, մի կով, մի մատեան, մի էշ և 5 ոչխարի համար 25 ղրան, բերքի վերածելով 37 լիտր, մուբաշիրին գաղտնի վնասներ 2 %, երեսուն* լիտր, *աղայական բերքի մի մասը քաղաք տանելու (բարգեարդա) 10* լիտր, *զոհաբերութիւններ աղքատներին և կղերին 3 % հաշւելով 45* լիտր։ *Քաղին ու կալին 2 մշակի վարձ 64 օրական (բացի կերածից) 128* լիտր։ *Տանուտիրոջ, համայնքի հանդի պահապաններին, հովիւներին և գզրին եւս-50* լիտր։ *Երկրամշակին մնում է 15 խալւար բերքից մօտաւորապէս կէսը՝ 7 ½ խալւար, որից պիտի բաժին հանէ տղաին հարսանիքի, աղջկան օժիտի, սև օրւան, անբեր տարւան համար։ Իսկ մնացորդով պիտի իւր ընտանիքը կերակրէ, հագցնէ, տաքցնէ, յայտնի բան է, եթէ պարտաւորւած չը լինի այդ գումարից մուբաշիրին, աղային, դիւանին տուգանքներ վճարելու և կոտորւած անասունների փոխարէն նորերը գնելու։*

*Ե. Կալից աղային և մուբաշիրին հասանելի դարմանը և քաղից տրւելիք աւլոյտը, խոտը փոխարկելով փողի, ինչպէս ներկայումս շատ տեղ գործադրւում է և վճարը միջին թւով 25 ղրան (տեղ տեղ 30-35 ղրան են առնում) հաշւենք, նոյնպէս փողի վերածենք հացահատիկի հարկերը, լիտրը միջին թւով 12 շահի հաշւելով (36 կոպէկ), երկու մասը ցորեն և մի մաս գարի. այնժամանակ աչքի առաջ կարող ենք ունենալ Ատրպատականի երկրագործ դասի ամեն մի ծուխի վճա-*

բաժը մօտաւորապէս.

| | | | | |
|---|---|---|---|---|
| 1. Հայահատիկից տրուած կրկնակ աշարը 2/10-րդ | 300 լիտրը | | 180 դրամ։ | |
| 2. Գործակալի-մուրաշիրի վարձը 2% | 30 | » | 18 | » |
| 3. Սրանց կաշառը 2% | 30 | » | 18 | » |
| 4. Աւարզ (մանր ծախսեր և նուէրներ) 3% | 45 | » | 27 | » |
| 5. Աղայական բերքի քըլհ-բարդերդա 1% | 10 | » | 6 | » |
| 6. Աղքատներին և կղերին զոհարեր 3% | 45 | » | 27 | » |
| 7. Սերմի փոխառութեան տոկոսը ապարին | 75 | » | 45 | » |
| 8. Ծխահարկ և անասունի հարկը | | » | 25 | » |
| 9. Դարմանի, աւոյտի և խոտի հարկը | | » | 25 | » |
| | | | 371 ղր | |

Ատրպատականում ամեն մի գիւղական երկրագործ ընտանիք, որ մի չուխով է ապրում, երբէք չի կարելի ենթադրել, որ այս թւից 371 դրանից պակաս հարկ վճարէ, որը մեր փողով մօտաւորապէս 68 ռուբլի է կազմում։ Այս թւից եթէ զեղչենք սերմնացանի տոկոսը 45 դրամ և կղերին աղքատների բաժը 27 դրամ, ընդ. ամենը 72 դրամ, դարձեալ 299 դրամը, կամ մօտաւորապէս 57 ռուբլին այնչափ մեծ է, որ ոչնչով չի թեթևանալ ռայաթի վիճակը: Մանաւանդ որ ռանչպարը ոչ միայն միշտ սերմնացու փոխ առնելու պարտա-

ւորւած է և կէսը բնութեամբ քաշում տանում են իրենց բաժը, այլ նա տալիս է բանւորի վարձ առնւազը 128 լիտրը, կամ 77 դրան, որով ապրում են նրա չէնքի կից «դարպաները»:

Զ. Ինչպէս վերևն յիշեցի, ամեն մի չութի տէր ծուխ չի կարող 7 խալւար հողից աւել վարել—ցանքի, խոտանի և առւոյտի համար: Գիւղական համայնքի անասունների արօտատեղը, եթէ հաշւենք մօտաւորապէս ամէն մի ընտանիքի համար 2 խալւար, այնժամանակ իւրաքանչիւր չութ ունեցող ծխի օգտւած հողը 9 խալւարից (20 դեսեատինից) աւելի չի կարելի համարել: Ուրեմն երկրամշակի վարած հողերի, արօտատեղերի և խոտհարքի համար վճարումէ իւրաքանչիւր խալւար տարածութեան 41 դրան մի-արասի (մօտաւորապէս 8 րուբլի), կամ ամէն մի դեսեատինի համար 3 րուբլի 17 կոպ. մօտաւորապէս, որ շատ զգալի է հողագործի համար: Իսկ բանջարանոցների, բոստանների, պարտէզների, այգեստանների և պտղատու ծառաստանների հողի համար ամէն մի խալւարին 6 թուման, կամ մօտաւորապէս 11 րուբլի 20 կոպ. որ իւրաքանչիւր դեսեատինի համար կազմում է մօտաւորապէս 5 րուբլի:

39. Թէև ծանր է Ատրպատականի երկրամշակի լուծը, անչափ է նրա տւած հողային ռէնտան, դժւարատար է նրա վիճակը, քանի որ երկիրը պառաւել է, ոչ պարարտացնելու միջոց ունի, ոչ էլ եւրոպական գործիքներով աշխատանքը թեթևացնելու հնարաւորութիւն. ոչ երկաթուղի, ոչ գոնէ սայլի ճանապարհ ունի, որ կարողանա հեշտութեամբ փոխադրել իրեն բերքը մեծ վաճառանոցներ ծախելու, բայց աւելի տանելի է, քան թէ դրացի Տաճկաստանի հողագործի վիճակը: Սրա գլխաւոր պատճառն այն է որ Տաճկաստանի գիւ-

գական երկրագործ համայնքին բացարձակապէս կեղեքումին կառավարչական հարկահանները, միլթէզիմներն ու զաբթի-յեները և մանաւանդ լեռնական անզուսպ քուրդ բէկերը, որոնց հողագործի կեանքին ու գոյքին իսպառ ապահովութիւն չկա։ Ատրպատականում զօրեղ կալւածատէրների շնորհիւ, կառավարչական գործակալները և լեռնային աւազակները չեն յան-դգնիլ մօտենալ գիւղական հասարակութիւններին և սրանց գոյքը ապահովւած է։ Բացի այս, ամեն մի կալւածատէր ագա, իր գիւղը ճոխացնելու համար, իր կրծքով պաշտպանում է ռայաթին պատահարներից և ոտնձգութիւններից· կարևոր դէպքում երկրամշակին լուծ ու լծկան է տալիս, սերմըն է մատակարարում, ջուր է բարձրացնում հանդերը ոռոգելու, մի խօսքով իր կալւածքն ու ռայաթը ճոխացնելու, եկամուտի աղբիւրները ընդարձակելու համար ջանում է զօր գիշեր։ Այն ինչ Տաճկաստանում անտէր մշակից անընդհատ յափշտակում, պահանջում և մինչև անգամ լծկանները խլում մորթում են, առանց որևէ օգնութեան ձեռք կարկառելու, առանց վիճակը ապահովելու և հրամայում են, որ իր ուժով արօրը քաշէ և բերք հասցնէ ագաներին հաց մատակարարելու։



# ԱՏՐՊԱՏԱԿԱՆԻ

## ԱԴՄԻՆԻՍՏՐԱՑԻԱՆ

### I

Վերջին ամիսներում, երբ չար Թուրքերը Կովկասի քաղաքները Հայի արիւնով ողողեցին, երբ մեր դրացիները թաթախեցան և ներկեցան քրիստոնէական արիւնով, երբ սահմանակից գաւառներից աւարի ծարաւով կուրացած լեռնական հրոսակային խմբերը անցան Արաքսը և ընկերակցեցան իրանց կրօնա-ցեղակիցներին, քաղաքակիրթ երկիրների բնիկները սրտատրոփ հետեւում, սոսկումով թերթում էին լրագիրները, հեռագիրները և մասնաւոր նամակները և վրդովւած սպասում էին, թէ ի՞նչ է կատարւելու մեր դրացի—Ատրպատական աշխարհում մի բուռը հայ քրիստոնեաների գլխին։

Այս սպասողական ջղայնացած մտքերը ապշած, չէին կարողանում բացատրել, թէ ինչի երկու միլիոնի չափ ատրպատականցի թաթարները մի քանի ժամում չեն ջարդում ու բնաջինջ անում երեսուն հազարի չափ հայերին, որոնք ապաստանած են Շահնշահի լայնատարած թեւերի ընդարձակ հովանու տակ։ Այդ երկրից ուղարկւած ամեն մի գիր ուշի ուշով քննում էին բոլորը և անբացատրելի է մնում այս հանելուկը, թէ ինչի Կովկասից ու Թիւրքիայից այդ երկիրը մտած հարիւրաւոր պրօպագանդիստները, խռովարարները չեն կարողանում բորբոքել ու փոթորկել իրանց ատրպատականցի ցեղակիցներին։

Այս խնդիրը բացատրելու համար՝ հարկ համարեցի ընթերցողին ծանօթացնել Ատրպատականի ադմինիստրացիայի հետ, որի մասին որոշ գաղափար կազմելուց յետոյ, հետաքրքրուողները իրանք էլ կարող են այդ մութ խնդիրը լուծել և որոշ եզրակացութեան հասնել։

1. Ինչպէս յայտնի է՝ պարսկական կառավարութիւնը գրեթէ կանոնաւոր զինւորական ոյժ չունի, նրա հեծելազօրը լեռնական—ֆէօդալական անզուսպ բէգերի հրոսակային խըմբերից է կազմւած, իսկ ոստիկանութիւնը դեռ անդրջրհեղեղեան սաղմային վիճակումն է։ Այս պարագան աւելի ևս զարմացնում է հետաքրքրւողներին, թէ ինչպէս պարսիկ պետական վարիչները կարողանում են զսպել ընչաքաղց, ագէտ և մոլի հպատակներին, որ չեն յանդգնում մօտենալ անզէն ու թոյլ հայ քրիստոնեա հպատակներին ջարդելու և կողոպտելու։ Առանց զինւորական ու ոստիկանական ոյժի մի թոյլ կառավարութիւն ինչպէս է սանձում ահաւոր մոլեռանդ ազգաբնակութիւնը՝ և մոլեգնած պրօպագանդիստները այնպէս են սանձւած, որ չեն կարողանում նոյն իսկ որևէ տերրօր կատարելու...

2. Ատրպատականի—նոյնպէս ամբողջ Պարսկաստանի գրեթէ բոլոր գիւղերը, մասնաւոր սահմանափակ սեփականութիւն են կազմում։ Իսլամի հասկացողութեամբ ամբողջ երկիրը մուսուլման համայնքի ընդհանրական սեփականութիւնն է կազմում և ընդհանրութեան վերատեսուչը ամբողջ համայնական գոյքի իշխանը, տէրը, դատաւորը և ոստիկանն է։ Որովհետև պետութեան ղեկավարը չի կարող ամէն մի գիւղի գործերը անձամբ վարել ու դատել, այդ պատճառով իւրաքանչիւր գիւղ այդ պետի կողմից շնորհւած է որևէ խանի, որ իր անունով իշխէ, կառավարէ, բարենորոգէ, դատէ, պատժէ

և համայնական հարկերը հաւաքելով յանձնէ պետական սընդուկին։

Վեհապետի բոլոր իրաւունքների լիազօրն է ամէն մի գիւղատէր խան և սրա իրաւունքների սահմանները կրճատելու, ընդարձակելու ոչ ոք լիազօրութիւն չունի։ Գիւղատէրը ինչպէս անսահման իշխանն է իր կալուածքի, այնպէս էլ՝ անմիջական պատասխանատու է այնտեղ կատարուած բոլոր ոճրագործութեան։ Իւրաքանչիւր կալուածքի—գիւղի սահմաններում կատարուած ամեն մի չարագործութեան համար գաւառապետը, նահանգապետը կամ կենդրոնական վարչութիւնը ճնշում է կալուածատիրոջ, որը կատարուած ոճրի միակ պատասխանատուն է ճանաչւում:

## II

3. Ամէն մի կալուածատէր խան իր գիւղում ունի համայնքից ընտրուած աղսաղալիների ժողովը և իր գործակալը—մուբաշիր, որոնք վարում են բոլոր հասարակական և մասնաւոր գործերի քննութիւնները և զեկուցանում են կալուածատիրոջ, որ տալիս է վերջնական որոշումը։ Ամեն մի կալուածքում կատարուած չարագործութեան վնասները պարտաւոր է կալուածատէրը անմիջապէս յանձնել գաւառապետին կամ նահանգապետին, եթէ չի կարողանում չարագործին բռնել ու յանձնել իշխանութեան։ Կառավարութեան լիազօրները ամենայն խստութեամբ կալուածատէրից պահանջում են չարագործին, եթէ չեն յանձնում ոճրագործներին, այդ ժամանակ տուգանքի և վնասների ցուցակը կազմում է կառավարութեան լիազօրը քմահաճոյքի համաձայն։ Ընդհանրապէս թոյլ կալուածատէրները աւելի են տուժում, քանի թէ ուժեղները, զօրեղ դատաւորները լաւ են քամում իրանց որսի ոսկորների ծուծը,

քանիթէ անկարողները։

4. Այս պարագան ինկատի ունենալով՝ ամեն մի գիւղական համայնք աչալրջութեամբ հետամտում է, որ իր վիճակում որ և է արտաքոյ կարգի դէպք չպատահի, կամ կատարուած դէպքում, նա անմիջապէս աշխատում է չարագործին կալանաւորել, յանձնել վարչութեան, որպէսզի ազատուի ջարիմաներից (տուգանքներից)։ Ամէն մի համայնքի մէջ կատարուած չարագործութեան համար պատասխանատու լինելով համայնքը, ամէն տուգանք բաժանւում է գիւղի ծխերի վրա, որոնք այդ պարտքը վճարելու պարտաւոր են համերաշխութեամբ։ Կալուածատէրը ոճրագործութեան տուգանքի և վնասների գումարի վրա աւելացնում է իր և իր գործակատարների բաժը և ամեն մի ծխի անդամների կաշին մտրակի տակ մաշելով գանձում է դրամը։ Նոյնութ դատաւորների անօրէն դահիճների, անխիղճ կալուածատիրոջ մտրակների տակ կեղեքուած ու սանձուած շինականը իր կեանքը—գոյքը փրկելու համար, ուրիշ հնարաւորութիւն չունի, կամ պէտք է արգելել որ և է դէպք չպատահի իւր սահմանում, և կամ պիտի բռնէ ու յանձնէ ոճրագործին պետական դահիճներին։ Այս պարագան է որ սանձահարում է ընչաքաղց. աղքատ ու թշուառ թաթարներին, որոնք հնարաւորութիւն չունին ուրիշ միջոցի դիմելու։

5. Ոճրագործին կառավարութեան յանձնելով՝ թէև մասամբ ազատւում են կալուածատէրն ու համայնքը. բայց եթէ ոճրագործը կարողութիւն չունենա, նրա մօտաւոր ազգականները չկարողանան իրանց գոյքով բաւականացնել—լրացնել տուգանքի, վնասի քանակը և դատաւորների պահանջները, չեն ազատւում պատասխանատուութիւնից։ Այդ գումարների պակասորդը անպայման կերպով պարտաւոր է լրացնել կալուածա-

 

ակէրը և տալս գանձել գիւղի ծխերից։ Պարսից ադմինիստրատորները այս գերագոյն բարբարոսական օրէնքով միայն կարողացել են թաթար խուժանին սանձահարելու և երկիրը խաղաղութեամբ կառավարելու։ Եթէ որ և է կալանաւորուած ոճրագործի գոյքը չի բաւականացնում տուգանքի, վնասի և տուժերի համագումարը, չարագործի ամենահեռաւոր արինակիցները դատապարտւում են լրացնելու այդ գումարը։ Իսկ եթէ դրանց գոյքով դարձեալ չի լրանում պահանջուած գումարը, այն ժամանակ համայնքը պարտաւորուած է իր միջոցներով ծածկել բաց մնացած մասը։

6. Տուգանքի և վնասների քանակը որոշելու իրաւունքը թէև վերապահուած է շիա կղերին, բայց ճարպիկ պարսիկ ադմինիստրատորները միշտ նորանոր պատճառաբանութիւններով այդ գումարը տասնապատկելու և հարիւրապատկելու հնարաւորութիւն միշտ գտնում են, եթէ չարագործի արինակիցները հնարաւորութիւն ունին վճարելու։ Ոճրագործին կալանաւորելուն պէս, նախ մոռացւում է իսկական գործը, սկսում են քննել, թէ չարագործը որքան կարողութիւն ունի և ինչ չափով հնարաւոր է նրա հարազատներին կեղեքել ու կողոպտել։ Երբ արդէն գալիս են որոշ եզրակացութեան, նոր սկսում են քննել իսկական գործը։ Քննութեան հետևանքը բխում է կորած գումարների քանակից և որքան կողոպտելու հնարաւորութիւնն ընդարձակ է, այնքան էլ երկար ձըգձգւում է գործի որոշումն ու վճիռը։ Թաթար խուժանը երբէք այնքան չի սարսափում մորակից, ֆալախկից, ոսից, զընդանից ու թնդանօթից, որքան սոսկում է գրպանների թեթեանալուց և արինակիցներին թշուառութեան մատնելուց։

7. Ամէն մի գիւղում պատահած գողութեան, սրածութեան, վէրքերի խնդիրները գիւղական համայնքը աշխատում է

անմիջապէս վերջացնել իր ատենակալների միջոցով, որպէսզի չլինի թէ կողմերը դիմեն կալուածատիրոջ գործակալին կամ դատաւորին։ Ողջ գիւղը միաբերան խնդրում, աղերսում է կողմերին, հաշտեցնում է, որոշում է տուգանքի մի չնչին չափ, խաղաղացնում է, որպէսզի գործը չհասնի իշխանութեան։ Ցանցաւորը զիջանում է և վճարում է պահանջը, որպէսզի գործակալը, կամ կալուածատէրը այդ տուգանքի կրկնապատիկը չյափշտակեն։ Եթէ գործը հասնում է գործակալին, նա հաշտութեան դէպքում ստանում է յանցաւորից իր վարձը—գօտը կամ քսան տոկոս վրադրով։ Եթէ կողմերը պարտաւորւում են դիմել կալուածատիրոջ, նա իր յիսուն տոկոսն է բարդում, եթէ հասնում է դատաւորին, նա վճարում է վնասուածի պահանջը և կրկնապատիկն է ստանում կալուածատիրոջից։ Իսկ եթէ նահանգապետին է հասնում գործը, այդ դէպքում քառապատիկը վճարելու է պարտաւորւում յանցաւորը և վնասուած կողմից էլ որոշ մաս են վերցնում պաշտօնակալները։ Այս սոսկալի տուգանքը և խիստ պատիժները ստիպում են թաթար խուժանին զսպելու իր կրքերը և ամէն աղէտի առաջն առնել, որպէսզի կրկին համայնքը արտակարգ հարկերից ու տուգանքներից ազատի, որի տակը ծանրաբեռնուած ամբոխը տնքում է սոսկալի չքաւորութեան և զրկանքների մատնուած։

## III

8. Գիւղական ադմինիստրացիայի բոլորովին հակապատկերն է աւանների և քաղաքների ոստիկանութիւնը։ Գիւղերի ժառանգական տէրերը մշտնջենաւոր իշխան ու դատաւոր են իրանց կալուածքում, նրանք միայն այն դէպքում են փոփոխւում, երբ ծախւում է կալուածքը։ Այն ինչ քաղաքի ոստիկա-

նական աստիճանաւորները յաճախ փոփոխւում են, երբ փոխւում են գաւառապետները, նահանգապետները և կառավարչապետները։ Քաղաքների իւրաքանչիւր թաղի քէդխուդան (թաղապետ) անմիջական կախումն ունի աւաններում՝ գաւառապետից, իսկ քաղաքներում՝ բէյլէրբէյից (ոստիկանապետ)։

9, Քէդխուդան ոչ միայն կառավարութիւնից որոշ ռոճիկ չի ստանում, ոչ միայն կանցելարիայի, բնակարանի, գրագիրների, սպասաւորների, պոստի, հեռագրի ծախսերը իր գրպանից է վճարում, ոչ միայն պարտաւոր է ծառայել գաւառապետի, կամ ոստիկանապետի քմահաճոյքներին՝ այլևայլ նուէրներով սիրաշահել նրանց ստորադրեալներին, այլ տարեկան որոշ հարկ է տալիս մեծաւորներին, իր իշխանութեան յանձնուած թաղի որակի ու քանակի համեմատ։ Քէդխուդան ստանձնելով թաղապետութեան պաշտօնը, նա տէր է դառնում այդ թաղի ազգաբնակչութեան բոլոր դատաստանական, քրէական, ոստիկանական գործերին, այնպէս որ՝ ո՛չ մի պաշտօնեայ, առանց թաղապետի անմիջական մասնակցութեան, չի կարող որևէ անձնաւորութիւն կալանաւորել, խուզարկել, բանտարկել, կամ դատապարտել։ Կառավարչական ատեաններից գրուած ամէն մի հրաման գործադրւում է թաղապետի անմիջական միջնորդութեամբ։

10. Քէդխուդան թաղապետութեան պաշտօնը իւրացնելու համար՝ գաւառապետին, կամ ոստիկանապետին վճարած հարկի գումարը անմիջապէս ստանում է իր Ֆարաշ-բաշիից (ոստիկանների աւագից), որով ծածկւում է իր խոշոր բացը. Ֆարաշ—բաշին էլ թաղը կառավարելու համար հաւաքած ֆարաշներից (ոստիկաններից) ստանում է պաշտօնի համար թաղապետին վճարած գումարը։ Ինչպէս թաղապետը, նոյնպէս ֆարաշները, կամ ֆարաշ-բաշին ո՛չ մի կոպէկ ռոճիկ չեն

ստանում պետական գանձից, այլ այդ պաշտօնները պահպանելու համար պարտաւորուած են, բացի տարեկան նուիրատըւութեան՝ անվերջ նուէրներ ցրւելու։ Այս էլ պէտք է յիշել, որ պաշտօն ստանալու նուիրատւութեան քանակը միշտ սակարկւում է, մրցակիցների մէջ գաղտնի աճուրդի է դրւում և ապա պաշտօնը յանձնւում է նպաստաւոր նուիրատուին։ Թէև սովորաբար Թաղերին լաւ ծանօթ և փորձառու Թաղապետներին են յանձնւում Թաղերը, բայց սրանց գրպանները լաւ մզելու համար մեծաւորները անվերջ փոփոխութիւններից և աճուրդներից օգտւում են:

## IV

11. Ամէն մի ֆարաշ իր դրամագլուխը պաշտօնին յատկացնելով՝ մարդասիրաբար չի ծառայում Թաղին. յայտնի բան է. նա ատամներ ունի, որոնք վարժ են կրծելու, երեխաներ ունի, որոնք հաց են պահանջում, կիներ ունի, որոնք հագուստ են ուզում և ծախսեր, որոնք հեշտութեամբ չի կարողանում բաւականացնել։ Այս պարագան ստիպում է ֆարաշին գիշեր-ցերեկ տքնելու, որպէսզի կարողանա սովից փրկել ընտանիքը, դրած դրամագլուխը կրկնապատկել, որպէսզի կարողանա էլ նպաստաւոր պաշտօնի հասնել։ Ֆարաշն առաւօտից մինչև գիշեր վազում է, ամէն ծակ ու ճեղ մըտնում, զննում է, քիթը մխած հոտոտում է, աչքերը չռած սպասում, թէ որտեղից իրան ոսկ է գալու։ Այսպիսի սատիկանը շատ պարզ է, որ իր Թակարդից որսին բաց չի Թողնիլ։

12. Մանաւանդ որ ֆարաշը ոչ միայն առանց ռոճկի պաշտօնը որոշ վճարով գնում է, ոչ միայն առանց որևէ

*վարձատրութեան ծառայում է թաղապետին ու ֆարաշ-բաշիին, այլ նա դեռ պայմանաւորուած է թաղապետի հետ, որ եթէ իրանց սահմանում որևէ չարագործութիւն պատահի և չկարողանան չարագործը գտնել ու կալանաւորել, պարտաւոր է գողօնի գինը, վնասը, կամ արեան գինը ընկերակիցների հետ հաւասարապէս վճարել։ Ֆարաշը իր գլխով և ամբողջ գոյքով երաշխաւորում է, ապահովացնում է թաղապետին իր ստանձնած պաշտօնի համար։ Թէև այդպիսի վնասների անմիջական պատասխանատուն թաղապետն է, բայց վերջինս, ինչպէս գիւղի տէրը, այսպիսի վնասները գանձում է գիւղական համայնքից, իր կորուստը պահանջում է և ստանում իր ֆարաշների խմբից։*

13. *Ամէն մի չարագործութեան ենթակա դիմում է ֆարաշ-բաշիին, կամ թաղապետին, որոնք աշխատում են ամէն կերպ անմիջապէս գոհացնել վնասուածին։ Կամ գտնում են յանցաւորին և նրանից վնասը կրկնակ քանակով ստանում և կիսում են գանգատաւորի հետ, և կամ իրենց գրպանից վըճարում են վնասուածին։ Հակառակ պարագային, եթէ վնասների ենթարկուողը գնա բողոքէ գաւառապետին կամ ոստիկանապետին, սրանք ոչ միայն կրկնակին են վճարելու իրենց մեծաւորին, ոչ միայն զրկուելու են իրենց հասանելի բաժից, այլ յաճախ պաշտօնանկ են լինում, կամ չարաչար տուժում։ Այս պատճառով թաղապետը, նախապատիւ է համարում իր գըրպանից վճարել կորուստները և չարագործութիւնների ենթակա անձնաւորութիւններին և ապա հետամտել չարագործութիւնների հեղինակներին, քան թէ թողնել որ վնասի ենթարկուածները պարտաւորեն բարձր ատեան գնալով իրեն վնասել և իր ձեռքից խլել չարագործութեան հեղինակներին։*

14. Թաղապետը երբէք չի տուժում, եթէ որեւէ փարաշ չկարողանա վճարել նրան հասած տուժի մասը, փարաշ-բաշին իր մնացեալ փարաշներով պատասխանատու և երաշխաւոր է ամբողջ խմբի համար, այնպէս որ՝ սրանցից կստանայ կորուստը: Փարաշ-բաշին այսպիսի անկարող, կամ ըմբոստ փարաշի ամբողջ գոյքը դրաւելուց յետոյ, նրան էլ կը բանտարկէ, կտանջէ, մինչև որ բաւականութիւն ստանա։ Այս պարագաները զարգացրել են Պարսկաստանում այնպիսի խուզարկու փարաշների խմբեր, որ քաղաքներում և աւաններում կատարուած ամէն չարագործութիւն իսկոյն պարզւում է և ոճրագործները իրանց արբանեակներով մատնւում են պարսկական դահիճներին, զնդաններին և տանջանքներին։

---

15. Քանի որ ամէն մի չարագործութեան ամբողջ պատասխանատուութիւնը ընկնում է ադմինիստրացիայի վրայ, սա պարտաւոր է բաւականացնել վնասների և կորուստների ենթարկուածներին, կարելի է ենթադրել, թէ ի՛նչ խստութիւններ են գործ դնում փարաշները, թաղապետները, ոստիկանապետները, որպէսզի կարողանան զսպել կամ գտնել չարագործներին։ Ընդհանրապէս բարբարոսական է փարաշների և ոստիկանական պաշտօնակալների ընթացքը։ Ոճրագործը գող, աւազակ կամ մարդասպան, փարաշների ճանկը մատնւելուն պէս՝ նրա ամբողջ գոյքը յափշտակում են. տանջանքների տակ կորզում են նրանից բոլոր թագցրած իրերը, կամ ստիպում են ծախել անշարժ կալքը և յանձնել դրամները:

16, Փարաշների, թաղապետների, ոստիկանապետների գլխաւոր եկամուտի աղբիւրը—ապրուստը մատակարարում են

չարագործները։ Ոստիկանութիւնը անսանձ կողոպտում է չարագործներին. և գլխաւոր պաշտօնակալները, քանի որ իրանց չաղ բաժինները ունեն այդ կողոպուտից, ամեն կերպ խրախուսում են ստորին պաշտօնեաներին։ Ընթերցողը կարող է գուշակել ոճրագործի ողորմելի վիճակը, նրա տագնապները, նրա հարազատների հոգեկան տանջանքները, եթէ միշտ նկատի ունենա, որ Պարսկաստանի ադմինիստրացիան իւր գոյութիւնը պահպանում է գողերին, աւազակներին, ոճրագործներին և եղեռնագործներին կողոպտելով։ Ո՛ր կատաղած ու բորբոքուած տէռօրիստը իր չարագործութեան րոպէին կարող է մոռանալ պարսիկ դահիճներին և չյիշել անմեղ ազգականներին, որոնք իր արարքի պատճառով ցմահ չքաւորութեան, տանջանքներին են մատնւելու։ Այս ըմբռնելուց յետոյ, պարզւում է այն գաղտնիքը, թէ ինչո՞ւ Ատրպատականի թաթարները գողութիւններով, աւերածութիւններով, արիւնահեղութիւններով չեն գերազանցում իրանց Թուրքիայի և Կովկասի ցեղակիցներին, քանի որ պարսիկ կառավարութիւնը, ո՛չ զինուորական ոյժ ունի, ո՛չ կազմակերպուած ոստիկանութիւն նրանց սանձելու համար, ճշմարիտ որ շատ զարմանալի է, քանի որ 75,000 տուն ազգաբնակութիւն ունեցող Թաւրիզի նման մի քաղաքում տարւա ընթացքում եօթը եղերական գործ չի պատահում, այն ինչ Կովկասի ամէն մի գաւառական քաղաքում ամիսը մի քանի դէպքեր է պատահում։

## VI

17. Թէև իսլամը ազգ չի ճանաչում, ազգայնութեան գաղափարը իսպառ գոյութիւն չունի Պարսկաստանում, բայց երկրի բնակչութիւնը բոլորովին իրարից տարբեր ցեղերից է կազմ-

ւած, որոնք լեզւով, սովորութիւններով, բարքով կատարեալ-պէս միմեանցից տարբերւում են։ Ատրպատականն էլ աղքատ չէ այդպիսի իրարից տարբեր ու ներհակ ցեղերից, որոնք դարերից իվեր իրար ոխերիմներն են և միմեանց արիւն են խմել։ Այս ցեղերը կատարելապէս ընկճելու և ստրկացնելու համար կառավարութիւնը իւրաքանչիւր ցեղի վիճակի վարչութիւնը յանձնում է իրանց տոհմական ցեղապետներից մէկին, որը պատասխանատու է ամբողջ ցեղի արարքի համար, ինչպէս որ և է գաւառապետ կամ թաղապետ իր վիճակում։ Ճըշմարիտ է XIX դարում պարսկական կառավարութեան կեդրոնացումը սանձահարեց այդ իրար բունն ու օջախը քանդող հորդաների ասպատակութիւնները, բայց չկարողացաւ հանգցնել նրանց սրտում ընկալած ոխակալութեան ոգին։ Յաճախ այս այլացեղերը ընդհարւում և անչափ անմեղ արիւն է թափւում։ Կառավարութիւնը չունենալով կանոնաւոր դատաստանական, ոստիկանական և զինւորական ոյժ, չի կարողանում սանձահարել այդ այլացեղերին իրար դէմ վարած ասպատակութիւնների ու աւարառութիւնների անմիջապէս, բայց նա հետամտում է և վերջիվերջոյ այնպէս է խաղաղացնում, որ կռւողները քսան-երեսուն տարի հազիւ կարողանում են իրանց տնտեսական վիճակը բարւոքել։

Այս ներքին հորդաների կատարած թաթարական աւերածների մասին կառավարիչները այնքան էլ շատ չեն մտածում, քանի որ սրանց արարքի դէմ ոչ կողմերն են գանգատւում, ոչ էլ եւրոպական դիպլոմատիան է բողոքում ու բաւարարութիւն պահանջում։ Ո՛չ ոք էլ չի հետաքրքրւում. թո՛ղ իրար ուտեն, ջարդեն և ոյժերը ջլատեն, այս ձեռնտու է կառավարութեան։ Մանաւանդ նահանգապետները և կառավարչապետները անչափ գոհ են այս արիւնհեղութիւններից, քանի

որ սրանք հնարաւորութիւն են գտնում երկու կողմերին էլ կեղեքելու, քամելու և իրանց քսակը լցնելու։ Այսպիսի դէպքերի ժամանակ կառավարիչները խուլ ու կոյր են ձևանում, քանի որ այնքան ոյժ չունեն, որ կարողանան առաջն առնել։ Պէտք է այս էլ գիտենալ, որ նահանգապետները իրանց անձնական միջոցներով են զինելու, ձիաւորելու և ուղարկելու ոստիկանական կամ զինուորական ոյժ խլրտումները խաղաղացնելու համար. արտաքո կարգերի ծախսերը կեդրոնական կառավարութիւնը չի ընդունում, կամ բաժանում է նահանգապետների վրա, որ լրացնեն։ Ուստի արինահեղութիւնը, յափշտակութիւնը, աւերածն ու եղեռը վերջանալուց յետո, նահանգապետի պաշտօնակալները սկսում են ընկճւած կողմին գանգատ ներկայացնելու։ Վերջինս անմիջապէս պաշտօնեա է ուղարկում աւերիչների գլխին՝ բացատրութիւն և տուգանք պահանջելու։ Եթէ ցեղի գլխաւորը անմիջապէս չի հպատակւում և չի բաւականացնում, պաշտօնեան ցեղապետի մրցակիցներից զօրեղագոյնին առաջ է քաշում և սրա նուէրները նահանգապետին ուղարկելով, պահանջում է նախկին ըմբոստ ցեղապետին պաշտօնանկ անել, վերջինին պետ հրատարակել։ Եթէ կարողանում է նահանգապետը՝ կալանաւորում և Թաւրիզ է ուղարկում ըմբոստ ցեղապետին, հակառակ դէպքում նրան այնքան ճնշում է յաջորդ ցեղապետը, որ նա պարտաւորւած անձամբ դիմում է կառավարչապետին որ իրան ների և Գահաժառանգից վերստին հրովարտակ ստանայ։ Այսպիսի ըմբոստ ցեղապետներին Թաւրիզում բանտարկում, այնքան են տանջում, մինչև որ կալանաւորը իր բոլոր ունեցածը նրանց է բաժանում։ Եթէ կատարւած ասպատակութիւններն ու չարագործութիւնները ծանր է, ըմբոստ—ցեղապետին սպանում են, թեթև է, տուգանքներով ազատւում, նորից հրովարտակ է ստանում, ստանձնում է ցե-

դապետութեան պաշտօնը և վերադառնում հարազատներին· Այս պարագաներից, այն անսահման տուգանքներից ստիպուած՝ ցեղերի առաջնորդները սանձում են իրանց ռայաթին, կամ ռայաթը ընտրում է այնպիսի ցեղապետ, որ կարողանա զըսպել համայնքին և ահաւոր տուգանքների պատճառ չդառնալ։ Տուգանքը միշտ բաժանւում է ամբողջ ցեղի վրա, որի անդամները հաւասարապէս տուժում են։

Ատրպատականի այս թաթարական ցեղերի մեծագոյն մասը շիա կամ շիիզմին հակւած աղանդաւորներ են, որոնք պարսկաստանից դուրս որևէ յենման կէտ չունենալով, պէտք է անպայման կերպով ստրկանան իրանց հովանաւորող Շահնշահի կառավարութեան։ Բայց տարբեր են թուրքական սահմանների մօտ ապրող սիւննի քուրդերը, մանաւանդ Ուրմիի լճից հարաւարևմուտք տարածւած Սօուչ-Բուլաղ նահանգի քուրդերը, որոնք թէ ցեղով, թէ կրօնով և թէ բարքով բոլորովին թաթարական ցեղերի հակապատկերն են ներկայացնում, ատում են շիաներին էլ, նրանց պետութեան ներկա ռէժիմին էլ։ Չնայելով որ Սօուչ-Բուլաղի ահաւոր նահանգին (300 000 բնակիչ) գրեթէ միայն քուրդերն են տիրապետում, որոնք իրանց ցեղակիցներից—Թուրքիայից ոչ միայն բարոյական քաջալերութիւն, այլ առատ զէնք ու մթերք են ստանում, գըրգռւում և բորբոքւում են իրանց տիրող կառավարութեան դէմ, բայց պարսիկ ադմինիստրատորները սրանց էլ սանձահարած են և չեն թոյլ տալիս խլրտելու, ինչպէս ընկճած ու ստրկացրած են իրանց կրօնակից ու ցեղակից թաթարներին։ Ամբողջ Սօուչ-Բուլաղի և Սարդաշցի գիւղերը քուրդ ցեղապետների սեփականութիւնն է, որոնք իրանց վիճակում անկախ իշխում են, անսահման իրաւունքներով։ Ամէն մի գիւղատէր զինած է իր ռայաթին—քուրդերին ամենակատարելագործուած զէնքերով,

ձիով և քուրդը մեծ հաշակ է վայելում իր գործած զէնքով ու քաջութիւնով։ Երկրի բնական անառիկ լեռները, անմատչելի ձորերը չեն թոյլ տալիս, որ պարսիկ կառավարութիւնը կարողանա սրանց ընկճել և հպատակեցնել։ Կառավարութիւնը չկարողանալով սրանցից շատերին կատարելապէս նուաճել, հարկերը չի պահանջում, այլ պարտաւորացրել է սահմանապահ հեծելազօր պահել—հարկի փոխարէն։ Բայց այս բոլորը աննպաստ պայմաններում անգամ նահանգը այնպէս խեղճացած է կառավարութեան առաջ, ինչպէս ընկճուած է Սալմաստի, Մարանդի, Մարաղայի և Հաշտարուդի դաշտային ստրկացած և օպիումից ապուշ դարձած ժողովուրդը։ 1881 թ. Շէյխ-Իբադուլլահի և 1899 թ. Ղազի-Ֆէթթահի ապստամբութիւնները պարսիկներին ինչպէս ընկճեցին, ծանօթ է արդէն Կովկասի լրագրութեան։ Կառավարութիւնը ամբողջ ցեղի յանցանքի ու ոճրի պատասխանատւութիւնը գցում է ցեղապետների վրա և նրանցից բաւարարութիւն է պահանջում։ Այս բաւարարութիւնը երբեմն տասնեակ և հարիւր հազարների է հասնում։ Այդ տուգանքը ստիպում է ցեղապետներին զսպել իրանց ցեղը։ Հակառակ դէպքում կառավարութիւնը իշխանութիւնը յանձնում է ցեղապետների հակառակորդ մրցակիցներին և սրանց այնքան է իրար դէմ կռւեցնում, մինչև բոլորին էլ ընկճում է։

20. Պարսիկ ադմինիստրացիայի միակ ոխերիմ ներքին հակառակորդն եղել է շիա կղերը, որը յաւակնել է միշտ իրան վերապահել երկրի դատաստանական, քաղաքական և տնտեսական գործերը և ջանացել է Շահերի դիրքը ուզորպատորի, կամ լոկ զինւորական սպարապետի աստիճանով սահմանափակել։ Արքունիքը խուլ կերպով անվերջ շարունակել է կղերի դէմ մի ներքին կռիւ, բայց և այնպէս Պարսիկ

ադմինիստրատորները իրանց խորամանկութեամբ և կեղծիքներով կղերին էլ են ընկճել ու իրանց շահերին ծառայեցրել, ինչպէս խոնարհեցրել են անզուսպ խաներին, արիւնարբու ցեղապետներին և անխիղճ աւարառուներին։ Կղերի բարձրացրած յանկարծակի ամբոխային ցոյցերի առաջն առնելու համար՝ կառավարութիւնը զիջել է ամբոխի պահանջներին՝ անմիջապէս բաւականութիւն տալով ու ցրւելով։ Իսկ խաղաղութիւնը վերահաստատելուց յետոյ գաղտնի քննութիւն է կատարել և գըլխաւոր խռովարարներին հեռացրել է, աքսորել կամ սպանել։ Այս ցոյցը ղեկավարող, ծրագրող միւջթէհիդներին առաջարկել է մայրաքաղաք՝ Շահին տեսութեան, կամ Քէրբալա—Օսմանեան երկրում ուխտի գնալու։ Այս քաղաքավարի աքսորը մերժող կղերը չարաչար տուժում է. կամ թունաւորում են, կամ նրանց բնակարանը ռմբակոծում։ Դարերի փորձերը ստիպել է նրանց հպատակեցնելու։

21. Պարսկաստանում կատարւած ցոյցերը ընդհանրապէս արհեստական են եղել։ Ժողովուրդը ոստիկանական և կառավարչական այնպիսի խիստ կապանքների մէջ է, տգիտութիւնը նրան այնպէս է ստրկացրել, որ սա ինքնաբերաբար ամբոխւելու հնարաւորութիւնից զուրկ է։ Ժողովրդին ամբոխում են կղերը թալաբաների (ուսանողների) միջոցով, նահանգապետները, կառավարչապետները իրանց լրտես լօթիների միջոցով։ Այսպէս օրինակ. 1898 թ. Ատրպատականի կառավարչապետ Գերուսի Հասան-Ալի-խանը ուզում էր ազատւել տեղացի նշանաւոր Նիզամ-իւլ իւլէմա միւջթէհիդի ինտրիգներից, որը Թէհրանում ունեցած ազդեցիկ եղբայրների միջոցով կաշկանդում էր կառավարչապետի քայլերը։ Կառավարչապետը իր լրտես լօթիների միջոցով գրգռեց ամբոխին, իբր թէ Նիզամ-իւլ-իւլէման ահաւոր քանակութեամբ ցորեն ունի ամբարած Թաւրի-

դում և աժան չի ծախում, որ հացթուխները կարողանան չքաւոր հասարակութեան հաց մատակարարել։ Ամբոխը աներկիւղ յարձակւեց Նիզամ-իւլ իւլէմաի տան վրա, կողոպտեց, ամբարները ցրւեց, անպատիժ և առանց պատասխանատւութեան մնաց՝ մինչև օրս։ 1899 թւին կենտրոնական կառավարութիւնը չէր ցանկանում Ատրպատականից հեռացնել կառավարչապետ Հասան-Ալի խանին, իսկ նրա կաշառակեր ընթացքից զզւած էր գահաժառանգը։ Նոյն թւականին Հասան-Ալի-խանի կարգադրութեամբ Ղարաբաղցի աւազակ Ռահիմ-խանը ռմբակոծեց Արդաբիլի մուջթէհիդ-Միրզա-Ալէքբերի տունը և նրան քշեց Թաւրիզ։ Թաւրիզի մուջթէհիդները ժողովրդին աղմկեցին կառավարչապետի դէմ, որը դուրս եկաւ քաղաքից և հրաժարական ուղարկեց Թէհրան։ Ռէժիի գործի ժամանակ, 1891 թւին, թէև ամբողջ աշխարհին հռչակեցին, թէ Թաւրիզի մուջթէհիդ Հաջի-Միրզա-Ջաւադ աղան դիմադրեց և չթողեց դաշնագրի գործադրելուն, ամբողջ երկրի ազգաբնակութիւնը կառավարութեան դէմ գրգռելով, բայց այս բանը այնքան էլ ճիշտ չէ, քանի որ Շահն էլ զղջացել էր և ձգտում էր մի կերպ քանդել տւած դաշնագիրը։ Գործին շատ մօտ մարդիկ Շահին հասկացրել էին, որ այդ ընկերութիւնը Շահի գանձին խոստացած տարեկան վճարի հարիւրապատիկն է գանձելու ժողովրդից, ուստի Գերուս-Հասան-Ալի-խանն էլ ոչ պաշտօնապէս օգնում էր մուջթէհիդին, որպէսզի մի կերպ ոչնչացւի դաշնագիրը և երկիրը չկողոպտւի անգլիական ընկերութիւնից։ Ամբոխը հետևեց Հաջի-Միրզա-Ջաւադ-աղային, աղմկեցին մի քանի քաղաքներում, պայմանը քանդեցին և խաղաղւեցին։

Խռովութիւնների և խռովարարների զսպանակը ադմինիստրացիայի ձեռքին է։

Ադմինիստրացիայի մասին աւելի որոշ գաղափար տալու համար, կարեւոր ենք համարում Ատրպատականի փիշիքար Նիզամի Սալթանէի Թաւրիզ գալու, երկու տարի պաշտօնավարելու և պաշտօնանկ հեռանալու ժամանակ հետաքրքիր արկածների նկարագրութիւնը տալ ընթերցողներին։

---

# ՆԻԶԱՄԻ ՍԱԼԹԱՆԷ

1. Ատրպատականի փիշիքարը (Իրանի գահաժառանգի գլխաւոր գործակալը), կամ ինչպէս սովորական է դարձել նրան անւանել կառավարչապետը—կուսակալը. Ամիրի-Նիզամ Հասան-Ալի-խան Գերուսը պաշտօնանկ էր եղել և հեռացել վիճակից, 1899 թ. Ապրիլին։ Այդ անձնաւորութիւնը խիստ վարչական մարդ էր, նոյն իսկ ծերութեան ժամանակ՝ երկրորդ անգամ փիշիքարի պաշտօնավարութեան ընթացքում, որին Մուզաֆէր-էդդին շահը ուղարկել էր Ատրպատական, երբ խռովութիւնների առաջն առնելու կարիք կար, երբ հարկաւոր էր մի ազդեցիկ մարդ, որ կարողանար զսպել Թաւրիզի խռովարարներին, որոնք նախկին փիշիքար՝ Ղայմաղամի տունը աւարի էին մատնել, Նիզամ-իւլ-իւլէմա հոգևորականի ցորենի ամբարներն էին ցրւել և սպառնալիք էին կարդում քաղաքի կալւածատէրներին։ Հասան-Ալի-խան Գերուսը երբէք չէր գիջել, որ պետական-վարչական գործերում միջամտեն ոչ միայն սովորականները, այլ, հակառակ իսլամական-շիա աղանդաւոր-

*նների օրէնքին ու դաւանանքին, նա մինչև անգամ ամէն ճիգ թափում էր. որ չէզոքացնի միւջթէհիդներին և նրանց դերը սահմանափակի զուտ կրօնական, ծխական գործերով։*

*2. Մի անգամ երբ ներկա շահը դեռ գահաժառանգ էր, Ամիր-Նիզամ Գերուսից կրկնակի թախանձանքով խնդրել էր, որ մի մարդասպան բանտարկեալի իրեն յանձնէ, փիշիքարը զգալով որ գահաժառանգին շրջապատողները կաշառուած են և ձգտում են իր միջոցով բանտից դուրս կորզել չարագործին, նա պատասխանել էր, որ շուտով կը կատարի գահաժառանգի կամքը և իր սպասաւորներին հրամայել էր անմիջապէս կախել մահապարտին։ Գահաժառանգը գիտենալով փիշիքարի բնաւորութիւնը, շտապել էր անձամբ գալ՝ կալանաւորին ազատելու, բայց ճանապարհին ոճրագործի դիակը կախուած էր տեսել։ Բայց Ամիր-Նիզամը այնպէս ուժեղ մարդ էր, այնքան յարգուած, որ ժառանգը չէր նկատել անգամ, որ նա իւր կամքը չէր կատարել, իսկ գահ բարձրանալուց յետոյ, կրկին նրան էր յանձնել Ատրպատականի փիշիքարի պաշտօնը, չնայելով նրա ծերութեան: Ամիր-Նիզամը խիստ խելացի ադմինիստրատոր էր, հակառակորդները որքան թակարդներ էին լարել նրա դէմ պարսկական նենգամտութեամբ, նա հմտութեամբ իրեն յանձնուած գործերը այնպէս խելացի կերպով էր գլուխ բերել, որ միշտ աւելի բարձրացել էր, աւելի ուժեղ դիրք էր ստեղծել իրեն համար, թէ իւրայինների և թէ օտարների աչքում։*

*Շէյխ-Իբադուլլահի ապստամբութիւնից յետոյ, երբ Պարսիկ կառավարութիւնը ձգտում էր բոլորովին քայքայել քրդերին, Ամիրի-Նիզամին հրամայուած էր ոչնչացնել ապստամբների ամենաուժեղ բէկին: Խաղաղութեան դաշը կնքելուց և երկիրը անդորրելուց յետոյ, այդ բէկին իւր մօտ կանչեց Ամիրի-*

Նիզամը և զօրանը նրան ասանց ուղարկեց ասելով, որ—,,Քանի ինքը՝ Ամիրի-Նիզամը երկրի երեսին է, ոչ ոք չի յանդգնիլ նրա կեանքին դիպչիլ։'' Հաւատաց երդումին պարզամիտ քուրդը, եկաւ, մտաւ Ամիրի-Նիզամի վրանը։ Ամիր-Նիզամը վաղօրօք մի խոր հոր էր փորել տուել և ինքը մտել էր երկրի հողի տակը, որպէսզի երդմնազրուժ չը լինի, իսկ ծառաները վրանում գնդակահար արին անզէն քուրդ բէգին։

3 Ամիր-Նիզամի քաջութեան, խելքի, հմտութեան և վարչականութեան առաջ խոնարհւում էին բոլոր պարսիկ մեծամեծները, նրանից անչափ գոհ էին և՛ Նասր-էդդին և՛ Մուզաֆէր-էդդին շահերը, նրանից ակնածում էին ոչ միայն պարսիկ մինիստրները, այլ նոյն իսկ Սադրազամ-Աթաբէգ-ազամը. բայց կեդրոնական վարչութիւնը նրանից օգտւում և մայրաքաղաքից հեռացնում էր, որ նա իրենց ապիկարութիւնը չը մերկացնէ, իրենց դիմակները չը պատռէ և չխայտառակէ։ Թէ և երկրորդ անգամի կառավարչապետութեան ժամանակ անչափ փոխւել էր Ամիրի-Նիզամը, որ հին ադմինիստրատորի միայն շուքն էր մնացել, ծերութիւնը նրան ընկճել և թուլացրել էր, ժողովուրդը փնտռում էր նախկին բարեկամին, կաշառակերութիւններով անչափ զեղծում էր կատարում, այնպիսի իրար ներհակ հրամաններ էր արձակում երկու հակառակորդների մէջ, որ ակնյայտնի ընչաքաղց կաշառակերութիւնը պարզւում էր կողմերին, մինչև այն աստիճան, որ բոլոր գանգատաւորները նրանից խոյս էին տալիս, բայց և այնպէս նա երբէք իր սկզբունքին հակառակ ընթացք չը բռնեց և այդ յամառութեան էլ զոհ գնաց։

4. Արդաբիլում մի յայտնի մոլլա՝ Միրզա-Ալէքբէր անունով երազում էր մուջթէհիդների գերիշխանութեան խոնարհեցնել Պարսկական վարչութիւնը։ Նա հաւկացող, խիստ կրօնամոլ,

*անկաշառ, արդարասէր, բռնութեան դէմ մարտնչող և ծայրայեղ ժողովրդասէր հոգևորական էր։ Նա ուխտել էր իր կեանքը ժողովրդի վիճակի բարօրութեանը նւիրել և ամբունութեամբ դիմում էր նպատակին։ Նա այնքան կոյր հետևող էր իրենց վարդապետութեան և անչափ մանրաքննին, որ ուխտել էր երբէք չուտել—չխմել ուրիշի փառակից, չէր ընդունում ոչ մի հրաւէր, և ոչ մի նւէր։ Միրզա-Ալէքբէրը ամբողջ տարին հաւաքում էր ունեցողներից տասանորդը և ցրւում էր կարօտեալներին, առանց որևէ դինար իւրացնելու, կամ որևէ վարձ ստանալու իր բոլոր պաշտօնակատարութիւնների համար։ Միրզա-Ալէքբէրը ոչ դատ էր վարում, ոչ թուղթ էր վաւերացնում, ոչ էլ, ներկայիս Ատրպատականի կղերին հետևելով, կալւածներ ձեռք բերելու էր տքնում։ Նա անչափ գոհ է իր տարեկան մի-երկու հարիւր թումանի եկամուտով, որ ստանում էր ժառանգական կալւածներից, և դրանով էլ ապրում է։ Այնպիսի դիրք է ընդունել, որ Արդաբիլի ժողովուրդը Միրզա-Ալէքբէրին պաշտում է, ոչ միայն անչափ յարգանքի է արժանացնել նրան, այլ ընդունում է, որ նրա մէջ բուն է դրել իրենց անհետացած Իմամի հոգին և նրա համար կեանք զոհելը սրբազան պարտականութիւն են համարում իրեն հետևողները՝ շիա-հաւատացեալները։ Միրզա-Ալէքբէրը իր վարքով ներկայիս Ատրպատականի դասակիցների այնպիսի հակառակ պատկերն է ներկայացնում, որ նրան խելացնոր են հրապարակել նախանձորդները, չեն թողնում, որ հետևորդների մեծ բազմութիւն հաւաքէ գլխին։ Նա էլ առանձնացած իր վիճակում, ջանում է սովածներին կշտացնել, նեղւածներին օգնել և ճնշւածներին դուրս կորզել բռնաւորների ճիրաններից։*

5. *Միրզա-Ալէքբէրը ընթացքը ծայրահեղութեան հասց-*

րեց, նա ոչ միայն միջամտում էր ամէն տեսակ դատաստանական գործերի, հովանաւորում էր սնանկներին և պարտքը վճարելուց խոյս տուողներին, այլ համարձակ մէջլիսում անարգում էր պատուորներին, սրանց ուղարկող Ղաջարներին։ Արդաբիլի նահանգապետները անվերջ գանգատւում էին, թէ Միրզա-Ալէքբերը խոչնդոտ է դառնում, չի թողնում գործերը վերջացնել և կենտրոնական վարչութեան հրամանները կատարել։ Ամիր Նիզամը հրամայեց նրան կալանաւորել, բերել Թաւրիզ քննութեան։ Երբ վերջինը ընդդիմացաւ, յայտնի աւազակ Ռահիմ խան Չէլէբիանլին ուղարկեց նրա վրա, ձիաւորներով և թնդանօթով, որոնք մոլլա Միրզա-Ալէքբէրի տան վրա ռումբեր արձակեցին, տեղ տեղ քանդեցին, ճնշեցին, այնպէս որ նա անճարացած անձնատուր եղաւ։ Թէև Արդաբիլցիները, մանաւանդ վիճակի ժողովուրդը անչափ վրդովւեց, բայց Ռահիմ խանի անողորմ ձիաւորների կեղեքումներից սոսկալով, մանաւանդ թնդանօթների ռումբերից ահաբեկուած, լռեցին, սպասելով գործի վախճանին։

6. Միրզա-Ալէքբէրին Արդաբիլից Թաւրիզ բերելիս, մի խլրտում բարձրացաւ իւլէմաների-մուջթէհիդների մէջ, որոնք սկսեցին բողոքել կառավարչապետի բռնած ընթացքի դէմ։ Ամիր-Նիզամը թէև կարող էր անմիջապէս սրանց տուները էլ ռմբակոծել, իրենց էլ կալանաւորել, բայց, որպէս Պարսիկ հեռատես մարդ, զգաց թէ կղերին դրդողն ով էր և հրաժարական տւեց։ Երիտասարդ գահաժառանգը ցանկալով հեռացնել Ամիր-Նիզամին և իր անմիջական իշխանութեան տակն առնել Ատրպատական աշխարհը, նա կղերին պաշտպան հանդիսացաւ։ Ամիր-Նիզամը պնդեց հրաժարականի վրա, հեռացաւ Ատրպատականից, բայց կղերը աւելի կորցրին իրենց դիրքը, աւելի սուր խաղալիք դարձան Ադմինիստրա-

տորների ձեռքին

7. Ինկատի ունենալով, որ գահաժառանգը ցանկանում էր անձամբ կառավարել Ատրպատականը, Պարսից մեծամեծներից ոչ որ չէր զիջանում յանձն առնել Ատրպատականի կառավարչութիւնը։ Ոչ ոքի հաճելի չէր՝ թէ յիսուն հազար թուման վճարել այդ պաշտօնի համար կենտրոնական վարչութեան և թէ ապագան վտանգել՝ գահաժառանգի կամքին հակառակ ընթացք բռնելու պարտաւորութեամբ։ Ամբողջ երկու ամիս թափուր էր վիճակը և դեռ յաճախորդ չէր յայտնւում այդ պաշտօնի համար։ Աթաբէգ-Ազամը, որ ամէն ճիգ թափելով ուզում էր հեռացնել մայրաքաղաքից իւր նենգամիտ և վտանգաւոր ախոյեաններին, այդ պաշտօնը առաջարկեց Նիզամի-Սալթանէ Հիւսէյն-Ղուլի խանին։ Իսկ վերջինս չուզենալով ընդհարուել թագաժառանգի հետ, ամէն միջոցի դիմեց, որ ազատւի այդ կոչումից, բայց շահի հրամանը այնպէս անդառնալի էր, որ թագաժառանգը հեռագրեց ընդունել և ճանապարհւել դէպի Ատրպատական։ Այս հեռագրից ապահովուած Նիզամի-Սալթանէն, թէև դարձեալ նազ էր անում ընդունելու պաշտօնը, որպէս զի պաշտօնի վճարից՝ յիսուն հազար թումանից աւելի բան չը պոկեն նրանից, բայց Թաւրիզում նրա ագէնտները արդէն լուր տարածեցին, թէ առանց որևէ վճարի առաջարկում են նրան փոխարքայի պաշտօնը, բայց նա յանձն չի առնում, չի զիջանում ընդունել։ Վերջապէս վաթսուն հազար թուման կանխիկ նուէր յանձնելով Նիզամի-Սալթանէն՝ ճանապարհ ընկաւ դէպի Ատրպատական։

8. Նիզամի-Սալթանէ Հիւսէյն-Ղուլի խանը մի շատ խորամիտ, հասկացող, շրջապատը ճանաչելու անչափ ընդունակ և ուշիմ անձնաւորութիւն է, որ մաքսատան ամենաստորին

գրագրի աստիճանից բարձրացել է աստիճանաբար մինչև Թուշէրի մաքսատան գլխաւոր կապալառուի և մինչև անգամ Շիրազի՝ Ֆարսիստանի ընդհանուր կառավարչապետի պաշտօնին։ Նա իրեն շրջապատող պարսիկ մեծամեծներից բոլորից հեռատես մարդ է, շատ լաւ է իմանում չէրիաթը, անչափ նուրբ կերպով ուսումնասիրել և իւրացրել է Պարսկաստանի վարչական եղանակները և, որ ամենագլխաւորն է, մեծ կարողութիւն է դիզել, որի առաջ խոնարհւում է ամբողջ ազգաբնակութիւնը։ Ինչպէս ասում են՝ սիրուած է Սինացի քրդական էլլիքներից, բայց վարքով բարքով նման է զուտ Պարսկի-Ֆարսի, անչափ նախանձախնդիր է հայրենիքի անկախութեան, մանաւանդ զարգացման, որոնց պատճառով միշտ ընդհարուել է Պարսկական մեծամեծների հետ, որոնք իրենց հաճոյքի, փողի համար միշտ պատրաստ են իրենց ծննդավայրերը աճուրդի դնելու և մատնելու։ Նիզամի-Սալթանէն անձնական շահի առթիւ ընդհարում է ունեցել Անգլիացիների դիպլոմացիայի հետ, որի պատճառով Նասր-Էդին շահի ժամանակ պաշտօնանկ է եղել և երկար ժամանակ անգործ է մնացել։ Այս պարագան երկար մտածութիւնների պատճառ էր դարձել և նա հոգով ու համոզմունքով անգլոֆիլ է դարձել շնորհիւ այդ ընդհարման։ Նա յաճախ կրկնում էր, որ«—իրենց յարաբերութեան մէջ Ռուսները Պարսիկների հետ աչառութեամբ (բաղարէզ) են վերաբերւում, այնինչ Անգլիացինները անաչառութեամբ (բիղարէզ)»։ Թէև վաղուց Նիզամի-Սալթանէն հաշտուել էր Անգլիական դիպլոմացիայի հետ, բայց դարձեալ, սրան Ատրպատականի փիշիքար նշանակելու համար, Պարսիկների կենտրոնական վարչութիւնը պարտաւորուած էր Անգլիացիներից յատուկ թոյլտւութիւն խնդրել, իսկ Աթաբէգ-Ազամը Հիւսէին Ղուլի խանին մայրաքաղաքից

հեռացնելու համար, նրա օպպօզիցիայից ազատուելու համար, զիջաւ Անգլիական դիպլոմացիային դիմում անելու և յաջողացրեց ծրագիրը։

9. Դեռ Թէհրանից դուրս չէր եկել, Հիւսէյին-Ղուլի խանի ագէնտները սկսեցին Թաւրիզում դրւատել նրա արդարամտութիւնը, անկողմնակալութիւնը և մանաւանդ տակունութիւնը։ Ատրպատականցիներին յայտնի էր, որ Նիզամի-Սալթանէն այնքա՛ն օրէնսգէտ էր, որ կարող էր միւջթէհիդներին չէրիաթից դաս կարդալ, այնքա՛ն խիստ էր, որ կարող էր ամենազօրեղ կրօնաւորներին էլ աքսորել, այնքա՛ն ճարպիկ էր, որ կարող էր այծի եղջիւրից կաթ կթել, այնպէս խորաքննին էր, որ ամէն մի նենգութիւն ու խարէութիւն կարող էր մի քննական ակնարկով պարզել և ոչնչացնել ամէն տեսակ կեղծւած դօկումէնտներ, ուստի սարսափը պատեց ամէն մի կալւածատիրոջ, հարուստի և կապիտալիստի սրտին։ Ներկայիս Ատրպատականի գիւղական կալւածատէրներից ո՞ր մէկը նենգութեամբ, կամ խարէութեամբ, կամ կեղծիքով և կամ բռնութեամբ չէ իւրացրել, չէ սեփականացրել տասը, քսան, յիսուն, հարիւր գիւղ։ Ո՞ր դատաւորի, կամ միւջթէհիդի դռնեներին, վաթսուն գանգատաւորներ չեն բոլորւած, որոնցից ամէն մէկը չի ողբում իրեն հասցրած վնասների, զրկանքների կեղեքումների դէմ։ Որը կեղեքւած է ազգականից, որը կողոպտւած է բռնակալից, որն էլ զոհ է գնացած նենգամիտ կղերի վրա տածած վստահութիւնից, որոնք որևէ կերպով յափշտակել են այդ թշւառների կարողութիւնը, չկա արդարադատութիւն, որ քննէ ու պաշտպանէ այդ թշւառների բողոքը։ Նրանց կոծից ու մորմոքից տանջւած և բորբոքւած սըրտերը վրդովւած, խաղաղութիւնից զրկւած, սկսեցին պատրաստութիւններ տեսնել դիմաւորելու և դատաւորին սիրաշա-

հելու, որ քաղցր հայեացքով նայի իրենց վրա և ներողամիտ սրտով զանցառութեան, մոռացութեան տա անցեալը: Դեռ Նիզամի-Սալթանէն Ղազվին չը հասած, Թաւրիզից, Ուրմիից, Սուչ-բուլաղից, Մարաղայից, Արդաբիլից և Ղարադաղից կալուածատէրների և կապիտալիստների պատգամաւորները ճանապարհ ընկան դէպի Զէնջան, ընդառաջելու փիշիքարին, նրա սէրը գրաւելու, ներողամտութիւնը հայցելու իրենց տէրերի համար: Այս բոլոր պատգամաւորները իրենց հետ տանում էին զանազան նուէրներ, ձի, ջորի, գորգ, կարպետ, գոհարէղէն, մարգարիտ, մանաւանդ՝ ոսկի հնչուն դրամ: Ինչպէս պատմում են, Նիզամի Սալթանէն մինչև Թաւրիզ հասնիլը երեք հարիւր հազար թումանի փէշքեաշ էր ստացել, բացի գորգերին ու կարպետները. նժոյգներն ու զարդերը: Այս նուէրները—,,Բարի գալստեան զոհաբերութիւնն է'' համարւում, պարագաների, պաշտօնականի անձնաւորութեան դիրքի և հմտութեան համեմատ կարող է բարձրանալ և իջնել:

10. Հիւսէին Ղուլի խանը ահաւոր սիրտայով էր գալիս Թէհրանից. նրա հետ էին ինչպէս որդին, երկու եղբօրորդիները մօտաւոր ազգականները, նոյնպէս քարտուղարները, հաշւապահները, գրագիրները, ֆարաշ-բաշին (ոստիկանապետ) ախոռապետը, գահիճները, բանդապետները և անթիւ սպասաւորներ: Այն նախարարները իրենց նպատակին հասնելու համար, պարտաւորուած էին նախապէս գրաւել շքախմբի անդամներին, որպէսզի կարողանային մօտենալ Հիւսէին-Ղուլի խանին: Այս բազմութեան մէջ կային և այնպիսի ատրճանաւորներ, զօրականներ ու կարողութեան տէր մարդիկ, որոնք իրենց հաշւով, իրենց գոյքով հետեւում էին փիշիքարին, Ատրպատականի այլևայլ նահանգների և գաւառների կառավարչութիւնը ձեռք բերելու յոյսով: Ինչպէս Նիզամի-Սալթանէն վաթսուն հազար

թուման վճարելով ստացել էր պաշտօնը, նոյնպէս որոշ գոհարկութիւններով այս պաշտօնականները պիտի գնէին նըրանից գաւառապետի և նահանգապետի պաշտօնները:

11. Նախկին փիշիքարը հեռանալիս, սովորութեան համաձայն, իրեն հետ տարել էր, կամ ցրւել իւր դիւանատան բոլոր ծառայողներին, նրա վարչական ատեանները, բանտը, ամէն բան դադարել էին գոյութիւն ունենալուց: Դիւանատան գործեր, արխիւ, հին գործեր ստանձնելու, յանձնելու սովորութիւնը գոյութիւն չունի այս երկրում: Որևէ պետական հիմնարկութիւն չկայ, նահանգական, կամ գաւառական վարչութիւն չկան, որոնց վարչութիւնը-վերատեսչութիւնը յանձնուած լինի պաշտօնակալի, այլ պաշտօնակալի անձնաւորութիւնը իւր մէջն է ամփոփում ամէն բան, բացարձակ ինքնակալ իշխանութիւնով: Ո՛չ Ամիրի-Նիզամը մի բան ստացել էր, որ յանձնէ Նիզամի-Սալթանէին, ո՛չ նրա գործակիցները կապ կարող էին ունենալ Նիզամի-Սալթանէի հետ, ո՛չ սա որևէ կարիք ունէր նրա անուան կամ նրա նախորդների անուան գըրւած փէրմաններից և րաղամներից, ո՛չ էլ սրա հրովարտակը որևէ առնչութիւն ունէր նախորդների հետ: Գուցէ ընթերցողները երևակայեն, թէ կառավարչապետը յատուկ դիւանատուն կարող է ունենալ, որտեղ գուցէ կենտրոնացրած են բոլոր հրամանները ու գործերը, այդ մասին կանխօրէն ըզգուշացնենք, որ որևէ հիմնական դիւանատուն չկայ Պարսկաստանում, բացի արտաքին-գործերի մինիստրութիւնը, որտեղ դիպլոմատիկական մարմինների և այլ հպատակների վերաբերեալ գրագրութիւնները պահւում են, երբեմն էլ Շահնշահների փէրմանների ու հրովարտակների ժողովածու, կամ որևէ քաղաքացիական կոդէքս չէ հրատարակուած, որով կարողանային, կամ պարտաւորւէին առաջնորդւելու կառավարչա-

պետները։ Միահեծան շահի կողմից նշանակուած բոլոր կառավարչապետները անպայման անսահման են, որքան որ ոյժերը ներէ։

12. Թաւրիզ հասնելու պէս Հիւսէին-Ղուլի-խանը՝ կառավարչապետը, իր եղբօր մեծ որդուն յայտարարեց Ատրպատականի ներքին գործերի վերատեսուչ, իսկ սրա փոքր եղբօրը Ատրպատականի արդարադատութեան տեսանել ընդհանուր նախագահ։ Ամբողջ երկիրը կախուած էր նոյն ընտանիքի երեք անդամի կամայականութիւններից և սրանց կամքը օրէնք ու անդառնալի պատգամ էր ազգաբնակութեան համար, որոնցից գրեթէ ոչ ոք չէր կարող յանդգնել բարձր ատեան՝ Շահնշահին դիմել, քանի որ բոլորը համոզուած էին, որ իրենց բողոքը կարդալու համար՝ փող էին վճարելու, հրաման գրելու համար՝ փող էին պահանջելու, իսկ հրամանը գործադրել տալու իրենք անկարող պիտի լինէին։ Նիզամի-Սալթանէի Թաւրիզ հասնելուց դեռ մի ամիս էլ չանցած, նրա մեծ եղբօր որդին հանեց վրայից «լեբբադեն», քաղաքացիական շորերը, հագաւ զինուորական համազգեստ, ընդունելով ամբողջ Ատրպատականի զօրքերի ընդհանուր հրամանատարութիւնը։ Մի 30-32 տարեկան մարդ, մարէշալի համազգեստով սկսեց կառավարել «Արև—Առիւծի» Ատրպատականի բանակը, առանց զինուորականութեան «այբ ու բէնի» հետ ծանօթ լինելու, իսկ նրա առաջ խոնարհւում էին 60-70 ծերունի զօրականներ, որոնք գուցէ իրենց կաշիները փթացրել էին կռւի դաշտում, քամիի, անձրևի և արևի տակ, ռումբերի խլացնող որոտների և վառօդի շշմեցնող ծխի մէջ։ Այսպէս զինուորական իշխանութիւնն էլ իւրացրին և Արադոտանից հեռուները բերած իրենց սպասաւորներին, գրագէտներին և գործակալներին յանձնեցին երկրի վարչութիւնը։

13. Պառավորչական տեսութեան և խորհրդակցութեան կանչւեցան Ատրպատականի բոլոր նահանգապետներն ու գաւառապետները։ Ոչ՝ մի պարմանքի, կամ բողոքի տեղիք չէր կարող տալ այն բոլոր փոփոխութիւնները, որոնք հէնց առաջին ամսին իսկ կատարւեցան։ Այս փոփոխութիւնները նահանգապետների, կամ գաւառապետների կատարած զեղծումների, կամ նրանց երկարատև և աչալուրջ ծառայութիւնների համար չէր, այլ լոկ փող կորզելու նպատակով էր։ Հիւսէյին Ղուլի խանը ցանկանում էր իւր հետ բերած պաշտօնականներին տեղաւորել այս ու այն վիճակում, կամ սրանց միջոցով բարձրացնել վիճակից իւրեն հասանելիք նւէրները։ Բոլոր նահանգապետները և գաւառապետները հաւաքւել էին Թաւրիզ, մանրամասն հաշիւ տալու իրենց վիճակի մասին և խորհրդակցելու ապագա ծրագիրների մասին։ Առաւօտից մինչև իրիկուն զանազան սէրթիբներ (déneral) և Ամիրի թումաններ dênêral lieufenant) մտնում էին փիշքաշի եղբօր մեծ որդուն, սակարկելու այս ու այն վիճակի վարչութեան գինը և ամէն մէկը մի մի խալաթ, հրովարտակ ստանալով՝ գնում էին իրենց նոր վիճակին։ Սրանցից ոչ ոք չէր կարող դժգոհել, քանի որ ամէն բան աճուրդով էր, աւելի տուողը, կանխիկ վճարողը հասնում էր ցանկութեան։

14. Թէև նահանգապետները 3-4 ամիս առաջ, Նօվրուզին (Նոր տարի) էին ձեռք բերել իրենց պաշտօնները՝ վիճակները նախորդ փիշքէշից առաւել նւէրներով, բայց անտարտունջ երկրորդ անգամ համրում էին այդ հարկը, շրջանից ետ չընկնելու համար։ Նահանգներից փեշքեաշները, որ վճարում էին նահանգապետները փիշքէշին երկու տեսակ է, կանխիկ և ամսական։ Կանխիկը վճարւում է պաշտօնը ստանալու համար իսկ ամսականը ամէն ամիս պաշտօնակալը պիտի հասցնէ կա-

ռավարչապետին, որքան որ մնա գործում։ Կարող են նահանգապետին մի ամսից յետո էլ պաշտօնանկ անել, եթէ արտաքո կարգի մի բան պատահի, թէև այսպիսի դէպքեր հազիւ է պատահում, այդ ժամանակ նա միայն փէշքաշը և մի ամսականը պարտաւոր է վճարել։ Յայտնի բան է այս բոլորը կատարւում է ծածկաբար, բայց գաղտնի չէ՝ երկրի սովորական կարգն է, որ սրբագործուած է դարերից ի վեր։ Թաւրիզ քաղաքի ստախկոնապետը, նահանգի ֆինանսական պաշտօնակալը՝; վաճառականական դատարանի նախագահը և սրանց կցորդները ենթարկւեցան նահանգապետների և գաւառապետների միջակին։

15. Փորձառու Ադմինիստրատորը չէր կարող բաւականանալ սովորական եկամուտներով, նրան Թէհրանից հրահանգ էր տուած Ատրպատականը խաղաղել այն աւազակապետներից, որոնց կեղեքումից հանգստութիւն չունէր կենդրոնական վարչութիւնը։ Այս պարագան այնպիսի լայն անցք էր բացած անսահման կառավարչապետի առաջ, որ նա լիուլի կարող էր յագեցում տալ իր ցանկութիւններին, փող կորզել՝ որքան որ ցանկար։ Իսկ նա նպատակին հասնելու համար այնպիսի միջոցներ գործածել գիտէր, որ երբէք նրան ոչ ոք չէր կարող մեղադրել։ Ամէնից առաջ Նիզամի-Սալթանէն մտածում էր գաւառների յայտնի աւազակներին կոտորել, որոնք աներկիւղ, ազատ կեղեքում էին ազգաբնակութիւնը, յափշտակել էին ուրիշների անշարժ գոյքը. գիւղերը և անարգել հաւաքում էին եկամուտները։ Պէտք է իմանալ, որ այսպիսի աւազակներ չի կարելի գտնել և ոչ մի երկրում, որանք միայն Իրանին են յատուկ։ Այս աւազակները ոչ միայն աստիճանաւորներ, զօրականներ են, այլ Շահնշահից տիտղոսներ էլ ունեն։ Կան դըրանց մէջ այնպիսիները, որ իրենց տոհմի—ցեղի առաջնորդ-

ներն են, ինչպէս Չալաբեանի, Շահսէվէն եայլի, եայլն, ձիաւոր զինւեր են պահում և կառավարութիւնից թոշակ են ստանում։ Յաճախ այդ աւազակները իրենց ձիաւորների գնդերով իրար դէմ կռիւ են մղում, աւերում, աւարում ոտնատակ տալիս խեղճ ժողովրդի ցանքը, տունը, տեղը։ Երբեմն միևնոյն ցեղի մէջ կուսակցութեան են բաժանւում առաջնութեան խնդրով և առանձին ընդհարումների ժամանակ զարհուրելի արիւնահեղութիւններ է կատարւում, մինչև որ մէկն ու մէկը կորզում է էլբէգի (ցեղի) ղեկավարութեան պաշտօնը։ Այս աւազակապետներին կառավարչապետները կալանաւորում, քամում և կրկին բաց են թողնում, որ գնան կպչեն ժողովրդի վզին և ծծեն նրանց արիւնը։ Սրանք մի քանի տեսակ օգուտ են տալիս։ Նախ որ ժողովրդին այնպէս են կեղեքում, որ նա յամառ հաց հազիւ է գտնում ապրելու, որով բոլորովին նրան ստրկացնում են։ Սրանց ձիաւորները պետութեան համար պատրաստի ոյժ է, երբ կարիք ունենա, օգտւում է շատ մեծ չափով։ Եթէ աւազակ առաջնորդներից մէկը ապստամբում է, կառավարութիւնը միւսներին՝ քիչ թոշակ տալով, աստիճանը բարձրացնելով, տիտղոս տալով, նրանց արձակում և զսպում է յանդուգն անզուսպին։ Նահանգապետները և կառավարչապետները ամէն տարի սրանից կթում են, որը նրանց բիւջէի նշանաւոր մասն է կազմում։

16. Նահանգապետներին փոփոխելուց յետո Նիզամի-Սալթանէն նորանոր հրահանգներ տւեց, որ իրենց վիճակում ապրող այս ու այն աւազակապետի հետ ինչպէս վարւեն և ինչպէս նրանց կալանաւորելով յանձնեն փիշիքարին։ Նահանգապետները իրենց վիճակը հասնելուց յետո, վճարած փէշքեաշների տեղը լցնելու համար, արդարն ու մեղաւորը ղանազանելու նեղութիւնը չէին կարող յանձն առնել, միմիայն աջ ու ձախ պա-

հանջում և կորզում էին, որ լրացնեն իրենց բայը։ Աւազապետները իրենց վիզը կենտրոնական վարչութեան ճանկերից ազատելու համար չէին մերժում գոհացնելու նահանգապետների համեստ պահանջները։ Այս պարագային Արզաբիլի նահանգապետը Զահէվանի առաջնորդ Խոսրովից իր բաժինը կորզելուց յետո, նրան նենգութեամբ յանձնեց Հիւսէին-Ղուլի- խանին, որը կալանաւորեց և շղթայակապ գլորեց իր բանտը, որտեղ հինգ վեց ամսւա տանջանքից յետո, քանի հինգ հազար թուման տւեց, խալաթ ստացաւ (պարգև), վերադարձաւ ծննդավայրը՝ իւրայիններին, որ նորից կողոպտէ ազգաբնակութիւնը ապագա փիշիքաշի համար փէշքեաշ պատրաստելու։

17. Մեծամեծ աւազակներին զարհուրեցնելու, նրանցից պատկառելի գումարներ կորզելու, ժողովուրդին, ազգաբնակութեան սոսկացնելու, ընկճելու տենչով, իր կառավարութեան սկզբնական ամիսներում Նիզամի-Սալթանէն շատ խիստ վարւեց ձեռքն ընկած սրիկա-աւազակների հետ, մերկ ու ակլոր ոճրագործների հետ, որոնք Խոյի, Մարաղայի ճանապարհներին մարդիկ էին կողոպտել և սպանութիւններ կատարել։ Այս աւազակներին թնդանօթի բերանին կապել տւեց և յրւեց, կամ մորթոտել տւեց։ Այս անգութ խստութիւններից յետո, որոնք ազատւելու համար ոչ դրամ ունէին, ոչ միջնորդ, որ կարողանային ծախու գնել իրենց կեանքը, երբ Խոսրովին էլ այն աստիճանի տանջեց, էլ աւազակապետներին ոչ մի խօսքով հնար չեղաւ համոզելու, նրանցից ոչ ոք անձնատուր չեղաւ, Թաւրիզ չեկաւ։ Աւազակապետները գիշեր-ցերեկ զինւած թափառում էին այս լեռից միւսը, անտառից՝ անտառ, գիւղից՝ գիւղ և պարսիկ պաշտօնակալները երբէք չէին յանդգնիլ նրանց դիմաւորել, նոյն-

իսկ բանակով։
18. Այս պատճառով Ահարի-Ղարաջադաղի հաքիմը (նա
հանգապետը), համաձայն նոյն իսկ գահաժառանգի պարբե-
րական հրամաններին, չըկարողաւ ձեռբակալել Ռահիմ-խանին՝
Չէլէբիանների առաջնորդին։ Ամբողջ տարւան ընթացքում
Ղարաջադաղի նահանգապետը մինչև անգամ իրեն համար բան
չկարողացաւ կորզել այս յանդուգն աւազակապետից։ Ռահիմ
խանը, որ մի Պարսկական général է, Նուսրէթ-իւլ-Սուլթան
տիտղոսով, Պարսկական անւանական սահմանապահ գնդի
հրամանատար է Արաքսի ափին։ Սա ոչ թէ սահմանն է պահ
պանում մաքսանենգներից, փախստականներից, այլ երկու
սահմանում էլ ազատ աւազակութիւններ է կատարում և բըռ-
նաբարութիւններով սպացնում ողջ Ղարաջադաղի ազգաբնա-
կութիւնը։ Այս աւազակապետը յափշտակել է երեսուն-քա-
ռասուն գիւղ, սարկացրել է ամբողջ նահանգի ազգաբնակու-
թիւնը և կառավարութիւնը հնարաւորութիւն չունի սրան զըս-
պելու։ Սրա ձեռքից միշտ 30-40 գանգատաւորներ շրջապա-
տած են իրենց նահանգապետին, Ատրպատականի կառա-
վարչապետին, շահին, միւջթէհիդներին, բայց ով կարող է
զսպել աւազակապետին։ Նիզամի Սալթանէն թէև չը կարո-
ղացաւ զսպել, կալանաւորել Ռահիմ-խանին և պատժել ինչպէս
հարկն է, բայց այնպիսի միջոցների դիմեց, այնքան ձիաւոր-
ներ ուղարկեց նրա դէմ, այնքան գրգռեց շրջակա աւազակ-
ներին և ուղարկեց Ռահիմ-խանի յափշտակած կալւածների
վրա, որ աւազակը անճարացած, Թաւրիզի իւր Սարրաֆի՝
Հաջի-Փարաջի միջոցով մի մեծ գումար հասցրեց փիշիքարին,
շահեց նրա սիրտը և ազատւեց հալածանքներից։ Հաւատաց-
նում են, որ Ռահիմ խանը բանտից ազատւելու, Հիւսէին Դու-
լի խանի ճիրաններում չը դողդողալու համար, Խոսրովի փէշ-

*քեաշի կրկնապատիկն է սուել, բայց մուլթ անգամ կատարուածների մասին չի կարելի խօսել, գուցէ դրանք բամբասանք լինին։*

19. *Բայց և այնպէս, այս չնչին գումարները չէր կարող յագեցնել Նիզամի Սալթանէի ծարաւը, գիշերը քունը կտրած նա ծրագիրներ էր կազմում, որ ամէն կողմից այնպէս ծծել, այնպէս քամէ, որ Ատրպատականցիների երակներում արեան հետքը միայն թողնէ, որ չկարողանան ոթափուիլ։ Ատրպատականի ամենահարուստ և ամենաբարեբեր նահանգը Սօուչ-Բուլաղն է, որ տարածւում է Կապուտան լճի հարաւային ափերից դէպի հարաւ, ուր ապրում են շիաների հակառակորդ սիւննի քրդերը։ Այս նահանգի քուրդ ազգաբնակութիւնը դեռես սար-կական վիճակումն է, կալուածատէրները Ատրպատականի միւս նահանգներից անհամեմատ մեծ մասն են վերցնում երկրի բերքից, հողից և հողագործի ամբողջ վաստակը ամբարւում է քուրդ տոհմական բէգերի, խաների և աղաների ամբարներում։ Ատրպատականի կառավարչապետի գլխաւոր եկամուտը գոյանում է այս նահանգից։ Նիզամի-Սալթանէն իր տեղի ու անտեղի հրամանագրով և կարգադրութիւններով սկսեց ճնշել Սօուչ-Բուլաղի կալուածատէրներին, որոնք արտակարգ վճարումներից անչափ բորբոքուած՝ բողոքեցին նահանգապետների դէմ։ Երբ բաւարարութիւն չստացան, յուզումը սաստկացաւ, քուրդ աղայականները, խաներն ու բէգերը արդէն վաղ զգացել էին իրենց լծի ծանրութիւնը և վաղուց մտածում էին եղջիւրները ցոյց տալ։*

20. *Քիւրդերը երդմամբ միաբանեցան։ Ղազի-Ֆէթահի և Ղարր-աղայի առաջնորդութեամբ մի դրաւոր առաջարկ արին Պարսկական կառավարութեան՝ Նիզամի-Սալթանէի միջոցով, որով ձգտում էին սահման դնել անսահման դատաւոր-*

ների ընչաքաղց կրքերին։ Քուրդ աղալեանները պահպանելով իրենց անսահման, ինքնակալական իրաւունքները իրենց ռայաթի վրա, յենւելով Պարսից կառավարութեան՝ կեղեքում են զարհուրելի կերպով այդ լիգւանի անասուններին (քրդերի աղայանները ռայաթին այսպէս են անւանում), բայց չէին դիջանում, որ կալւածատէրներին էլ համանման սիստէմով կողոպտէ Պարսկական իշխանութեան ներկայացուցիչը՝ հաքիմը։ Ցայտնի բան է, Պարսից կառավարութիւնը անպայման հպատակութիւն պահանջեց կալւածատէրներից։ Թէ վարչութիւնը և թէ քրդերը տատանւում էին զէնք բարձրացնելու և խռովութիւնը սաստկացնելու։ Քիւրդերին գոհացնելու համար փոփոխեցին նահանգապետներին. բայց զուր, անմռունչ կռիւը շարունակւում էր, անապահովութիւնից Սօուչ-բուլաղի բազարը կապւած էր ամիսներով, ժողովուրդը քաղաք չէր գալիս, իսկ կալւածատէրները առանձնացած իրենց կալւածները կամ զէնքերին էին կարգի, սարգի գցում, կամ խորհուրդներ էին կատարում։ Նիզամի-Սալթանէն բոլոր ձիրքը գործադրեց, քուրդերից պատգամաւորներ պահանջեց, նրանց առաջարկութիւնները գոհացնելու խոստումով։ Թաւրիզում ամէն խորամանկութիւն գործ դրւեցան և սրանց իրարից բաժանեցին, Ղադի-Փաթահին կալանաւորեցին՝ աքսորեցին Թէհրան, մնացեալներին ցրւեցին։ Նիզամի-Սալթանէն այսպէս նրանց մէկ-մէկից հեռացնելուց յետո, ձեռքն ընկած կալւածատիրոջ փետրեց և ճանապարհեց։ Պարսից կառավարութեան գլխաւոր գործիչների երկրում խաղաղութիւն պահպանելու ամենագլխաւոր զէնքը կալւածատէրներին կողոպտելն է, նրանց պարտքի տակ ընկճելով աւելի լաւ են ստրկացնում, քան թէ զէնքով ու մահով։

21. Բայց Նիզամի-Սալթանէն նպատակին չհասաւ, քանի որ

Թէհրանից՝ կենտրոնական վարչութիւնը, դժգոհ Սօուջ-բուլաղի խլրտումներից և Նիզամի-Սալթանէի ընթացքից, դուրս հանեց նրա իշխանութեան սահմանից Սօուջ-բուլաղի նահանգը, այնտեղից ուղարկեց Մուզաֆէր-Միրզին՝ նահանգապետ, որին տրուած իրաւունքները—արտօնութիւնները բոլորովին չէզոքացնում էին Ատրպատականի կառավարչի գերիշխանութիւթիւնը։ Ընկճուած, յուսախաբ քուրդ կալուածատէրները իրենց կեանքը, գոյքը փրկելու տենչով ոչինչ չխնայեցին Մուզաֆէր-Միրզից, որպէսզի փառաւորով ապացուցանեն իրենց հլու հպատակութիւնը։ Իսկ Մուզաֆէր-Միրզը իւր տարի ու կէսւա նահանգապետութեան ընթացքում կորզած հարիւր հազարներից ոչ մի մասն չուեց Նիզամի-Սալթանէին, և ինչպէս պատմում են շատ չնչին բաժին էր հասցրել Թէհրանի իր պաշտպաններին։ Այս պարտութիւնը այնպէս էր վրդովել Նիզամի-Սալթանէին, որ նա մի քանի անգամ ուզեց հրաժարականը, բայց Թէհրանի վարչութիւնը նրան չէր ուզում տեսնել իւր շրջանում և մաքառել դրա կուսակցութեան դէմ։

22. Երբ նահանգական վարչութիւնները կարգի դրեց և կարևոր հրահանգները տուեց, Նիզամի-Սալթանէն սկսեց անձամբ քննել, միջամտել և հմտութեամբ ուսումնասիրել կալուածական խնդիրները, կալուածատէրների և սրանց կայքերի յափշտակողների մէջ։ Այս անվերջանալի վէճերն այնպիսի ահագին եկամուտի աղբիւր է մարզուած և հմուտ վարչականի ձեռքում, որ սա կարող է նահանգական վարչութիւններից ստացուած գումարների քառապատիկը հասցնել կառավարչապետին։ Թէև առակ է դարձած Ատրպատականում, թէ «չկա գիւղ, որին տիրէր իսկական տէրը կամ ժառանգը և չկա կալուածատէր, որ իւր ձեռքում գտնուած կալուածքը յափշտակած չը լինի», բայց այս առածը եթէ բառացի ճըշ-

մարիա չէ, ճշմարտութիւնից էլ այնքան հեռու չէ։ Ներկայիս Ատրպատականում կան այնպիսի կալուածատէրներ, որոնք 100-150-200 գիւղ ունին, որոնք իրենց ծնողներից կամ մի և կամ կէս գիւղից աւելի չեն ժառանգել, որտեղից են իւրացրել, սեփականացրել այդ կալուածները։ Եթէ քննել, եթէ հնարաւոր լինի արդարութեամբ դատել, շատ յափշտակիչների դիմակը պիտի պատռուի և շատ ոչնչացած մոլլաների սատանայական ճիրանները պիտի երևին։ Մինչև անգամ «վագըֆները» ջնջւել 'և սոսկ կալուածներ են դարձել, շնորհիւ ագահ միւջթէհիդների ապօրինի վճիռներին, որպէսզի կարողանան այդպիսի «վագըֆները» յափշտակել և իւրացնել։ Դիմիշկիեների Ջաճիրեի 370 գիւղերից՝ որոնք մօտ երկու հարիւր տարեան «վագըֆ» են, այսօր միայն 12 կտոր գիւղ է մնացել «միւթէվէլլիների» ձեռքը, որոնք գուցէ 5—10 տարի յետոյ այլեւս գոյութիւն չեն ունենալ, այնինչ «գուրանով» և «հադիսով» յատուկ հրամաններ կան, որ «վագըֆը» չի կարելի ծախել և չի կարելի յափշտակել ժառանգորդներից, մինչև Մէհդիի յայտնութիւնը։ Եթէ երբ. Նազարբէգեանների և Զարգարեանների «դիւանխանէով» հաստատուած պայմանագրերը չը լինէր, վաղուց այդ 12 կտոր գիւղն էլ «վագըֆից» դուրս գցուած և խանները, կամ մոլլաները յափշտակած կլին ինչպէս յափշտակել են 360 կտոր գիւղերը։

23. Կալուածների յափշտակութեան վէճերը կարելի է բաժանել երեք ձևի։ Ա. Մի որևէ կալուածատիրոջ ուժեղ ժառանգը իւրացնում է կալուածները և զրկում միւս եղբայրներին, քոյրերին և մայրերին։ Այսպիսի ժառանգորդները անճարացած, երբ հնար չեն գտնում արդարութիւն ձեռք բերելու, յուսահատութիւնից տանում ծախում են իրենց բաժինը կամ զօրաւոր խանի, պաշտօնականի և կամ մի յայտնի մոլլայի։

Այսպիսի դէպքերում ընդհանրապէս ծախողներին խոստանում են վճարել, երբ կալուածքին տիրանան, բայց մինչև տիրանալը այնքա՜ն ծախսեր է լինում, կամ գնորդների խղճմտանքը այնքան լա՜յն է լինում. որ կալուածքը ետ բերելուց յետոյ մոռացւում են խոստումները և զրկւածները կողոպտել են տալիս իրենց հարազատ զրկողներին։ Զօրեղ կալուածատէրները երբ որևէ կերպով մի կալուածքից մաս են գնում, այդ կալւածքի ժառանգորդներից մէկի բաժինը, կալուածքում այնպիսի դիրք են բռնում, ռայաթի հետ այնպէս են վարւում, որ մնացորդ բաժնի տէրերը կամ շատ չնչին գնով ծախում են իրենց բաժինը և կամ դատից ու դատաստանից յուսահատւած, մերժւած՝ ձեռք են քաշում և կամ ուղղակի դրանից խոպառ հեռացնում են իրենց բաժնից զօրեղները և յափշտակում կալուածքը: Բ. Որևէ կալուածք յափշտակելու համար ուժեղ կալուածատէրերը՝ խաները, կամ մոլլաները այդ կալուածատիրոջ անակնկալ այնպիսի տուգանքի են մատնում, որ նա պարտաւորւած 3—4000 թումանով կալուածքը կամ նրա մասը Բիշարթ է դնում (պայմանական-գրաւական) և ժամանակին. օրին փողը չը վճարելով, կամ այնպիսի արգելքներ են բարձրացնում, որ չեն ստանում և գնում տիրում են կալուածքին պայմանաժամը լրանալուց յետոյ։ Ամէնից շատ այս միջոցով են կալուածներին տիրանում մեծ կապիտալիստները և մոլլաները։ Գ. Զօրեղ խաները, որևէ վիճակի զինւորական, հեծելազօրի սահմանապահ և կամ նահանգապետները բռնութեամբ յափշտակում են և մի տարի, երկու տարի եկամուտներին տիրելուց յետոյ. այլևս փոքր կալուածատէրները, կամ թոյլերը չեն կարողանում ետ ստանալ նրանցից իրենց կալւածները։ Այս ընթացքով Սուլէյման-խանը Աֆշարը իւրացրել էր Աֆշարի գաւառի կեսից աւելին, Խոսրովը Մուղանի

մէջ ահաւոր կալուածներ ձեռք բերել, ներկայիս Ռահիմ-խանը իւրացրել է Ղարադաղի կէսից աւելին, Ալի-խանը՝ Մաքուն և ուրիշները Քիւրդիստանում։

24. Նիզամի-Սալթանէն այսպիսի գանկատների առթիւ խնդրագրեր էր ընդունում, իսկոյն կարգադրութիւններ էր անում, հրամաններ էր արձակում նահանգապետներին՝ գործերը քննելու և արդարի իրաւունքի պաշտպան հանդիսանալու։ Յայտնի բան է, այսպիսի հրամանների համար Նիզամի-Սալթանէն բաժ չէր վերցնում, բայց նրան շրջապատող պաշտօնակալները առանց որոշ հարկի բաց չէին թողնում խնդրատուներին: Նահանգապետները ճարպիկութեամբ քննում էին կողմերի գրպանները և արդարութիւնը սակարկում։ Յայտնի բան է, ծանրակշիռ նուէրներ՝ հնչուն դրամ համրողները միշտ յաղթանակում էին, իսկ գանկատաւորների ահաւոր տանջանքով և որոշ ծախսերով դուրս բերած հրամանագրերը յաճախ մնում էին մեռած տառ, քանի որ յափշտակողները չխայտառակելու համար գրաւած կայքերի եկամուտներից շաղ-շաղ բաժինը գցում էին պաշտօնակալների ատամների տակ։ Նիզամի-Սալթանէն դերասանի նման նուրբ դիմախաղերով այնպէս էր ձևացնում իր արդար զայրոյթը անհնազանդ նահանգապետների մասին իրեն բողոք ներկայացնողների առաջ, որ անփորձ օտարականը շատ դիւրին կերպով կարող էր խաբուել, թէ կառավարչապետը երբէք համախոհ չէր կարող լինել այդ անիրաւ նահանգապետների հետ, այն ինչ բոլոր մանրամասնութիւնները նրան զեկուցանում էին բողոքողների վերադարձից շատ առաջ և ստանում կարևոր հրահանգները։ Եթէ բողոքողները ուժեղ անձնաւորութիւններ էին լինում, կամ հակառակորդի խոստման կրկինը վճարելու յօժարանում էին, այդ ժամանակ կառավարչապետը նրանից

հրամանագիր էր գրում, նախատում էր ըմբոստ նահանգապետին և նրա մօտ ճանապարհում խնդրատուին, վերջինիս ձեռքը յանձնելով կարևոր կարգադրութիւնը կամ հրամանագիրը, որոնք նախկին հրամանագրի նման անգործութեան դատապարտւելուն երբէք կասկած չունենալով։ Նիզամի-Սալթանէն երբէք յատուկ պաշտօնակալներ, յանձնակատարներ չէր ուղարկում զանազան նահանգներ, նա ամէն գործ կատարում էր նահանգապետների միջոցով, որով վերջիններս աւելի սերտ կերպով կապւում էին իրեն հետ։ Այն ինչ Պարսկաստանի մէջ այսպիսի գործերը գլխաւոր կառավարիչները քննում, վճռում են առանձին յանձնակատարների միջոցով։

25. Նահանգապետներին իրենց վիճակներում անսահման արտօնութիւններ տալիս և գործ յանձնելիս, պայմանաւորւում էր, որ նրանք մասնաւոր հրամանագրերի վրա ուշք չը դարձնեն, այլ վարւին ամէն շաբաթ ուղարկւած հրահանգների համեմատ։ Խղճալի դատավարները դայլութից և յուսահատութիւնից չէին կարողանում բացատրել, թէ ինչ պատճառով նահանգապետները ոչ միայն իրենց կառավարչապետի անմիջական հրամանները չէին գործադրում, այլ նրա կամքի հակառակ մեքենայութիւններ էին սարքում։ Յաճախ Թէհրանից՝ կենտրոնական բարձր իշխանութիւնից հրովարտակներ էին բերել տալիս անարդարութեան և զրկանքի մատնւածները, որոնց ձեռքում գտնւած մինիստրական, Աթաբէգ ազամի և բարձրագոյն հրամանագրերն ու ֆէրմանները դարձեալ նոյն մեռելութեան էին դատապարտւում։ Այսպիսով մի քանի տասնեակ տարիներով դատ վարողները, նորանոր հրահանգներ և վճիռներ ձեռք բերողները, առանց նպատակի հասնելու, ընկճւում, սնանկանում, յուսահատութիւնից կաթւածի ենթարկւում, իսպառ մոռացութեան սա-

յով իրենց դատը—վէճը, առանց վերջնական վճռի կամ ցանկութիւններին հասնելու։ Իսկ նահանգապետները յափշտակիչներից ամէն տարի կորզած կաշառ փէշքեաշը բաժանում էին կառավարչապետների հետ։

26. Նիզամի-Սալթանէն ոչ միայն իր աջակից նահանգապետներից, գաւառապետներից, ոստիկանապետներից ստանում էր որոշ հարկ - պաշտօնագին, նրանց կողոպուտից որոշ մասը, դատավարութիւններից իր բաժը, ոչ միայն մէկին-միւսին շնորհած պաշտօններից, տիտղոսներից, աստիճաններից և օրդէններից ստանում էր իր վարձը, այլ իր իշխանութեան տակ գտնուած ամէն պաշտօնականներից և գործակալներից օգտուել։ Թէև քաղաքի 80 հացթուխները գտնւում են անմիջապէս քաղաքի ոստիկանապետի իշխանութեան տակ, բայց Նիզամի-Սալթանէն այնպէս էր կարգադրել, որ հացթուխները օրական 35 թուման (մօտ 60 ռուբլի) փող մատակարարեն իր տնտեսին՝ խոհանոցի ծախսը հոգալու։ Յայտնի բան է Նիզամի-Սալթանէի ֆարրաշ բաշին, Թաւրիզի ոստիկանապետը հետեւում էին կառավարչապետի օրինակին և նրանց խոհանոցի ծախսերն էլ բարդւում էին աղքատների, Թաւրիզի թշւառ ազգաբնակութեան ծախուած հացի գնի վրա։ Այսպէս մսագործները, մթերավաճառները, նպարավաճառները որոշ հարկ ունէին, որոնք անխափան հասցնում էին կառավարչապետի տնտեսին և ախոռապետին։ Կասկած չկա, որ նահանգապետներն էլ իրենց վիճակի քաղաքներում անպայման ընդօրինակում էին կառավարչապետի օրինակին աւելի փոքր դիրքով և ժողովրդի ուտելիքը՝ օրական պարէնը ծանրաբեռնում էր շնորհիւ դատաւորների ընչաքաղցութեան։

27. Նիզամի-Սալթանէն Ատրպատական մտնելիս ամէնի

մօտ խօսում էր, որ իրեն մայրաքաղաքից ուղարկել են Թաւրիզ յատկապէս երկու գործով. Ա. Քաղցած ժողովրդին հաց մատակարարել և Բ. Հին կարգերի համաձայն պետական հարկը կալուածատէրներից մթերքով—հացահատիկով ստանալ։ Այս երկու խնդիրն էլ փիշիքարի համար էական հարց էր, երկուսն էլ մեծ եկամուտի աղբիւր և սրանից հետևեց ամբողջ երկու տարի՝ մինչև Ատրպատականից հեռանալը։ Երբ Նիզամի Սալթանէն Ատրպատական մտաւ՝ 1899 թւի Յունիսին, ցորենի խալւարը՝ (33 պուդը) ծախւում էր մօտ 240 ղրանի (40 ռուբլի), իսկ մեծամեծ կալուածատէր կղերն ու խաւանները չէին ցանկանում մթերքով հարկերը վճարել կառավարութեան, այլ ձգտում էին հացահատկի փոխարէն փող վճարել 40—60 ղրանով, ինչպէս սովորական դարձել էր 15—20 տարւան ընթացքում։ Քաղաքի ազգաբնակութեան քաղցը, պարբերական խառնակութիւնները, կալուածատէրների սինդիկատը՝ ցորենի գինը բարձր պահելով երկրում արհեստական սով առաջացնելը իրեն փաստ չինած, Նիզամի-Սալթանէն ստիպեց կալուածատէրներին մթերահարկի կէսը հացահատիկներով վճարել, և այնքան ճնշեց, որ իւր կամքը առաջ տարաւ։ Քաղաքում գտնւած կառավարչական ամբարը, ուր մի բուռը ցորեն չկար, քաղոցից յետո (36) երեսունը վեց հազար խալւար ցորեն-գարի ամբարեց և սկսեց ժողովրդին հաց մատակարարել աժան գնով։

Վերջին քառորդ դարում, երբ Ատրպատականի Սարրաֆները—վաճառականները կալուածատէր դարձան, ամէն միջոցի դիմեցին, որ ցորենի գինը միշտ բարձր պահպանեն, որպէսզի իրենց կապիտալը մեծ տոկոսով շահեցնեն։ Սարրաֆներն ու վաճառականները ամէն ինչ կշեռքի ու չափի տակ դնելով. ամէն բերք փողի վերածելով, երկրագործին

կեղեքելով, գիւղերի վրա դրած դրամագլխից 10-20 % փող վերցնելով, հետզհետէ նորանոր կալուածներ գնելով, ընդարձակեցին իրենց գործերը։ Խաներից շատերը չկարողացան դիմանալ և իրենց կալուածները գրաւ դնելով, ծախելով կորցրին, իսկ վաճառականները, մանաւանդ կղերը հետզհետէ կենտրոնացրին իրենց ձեռքը ամբողջ նահանգի հողերը։ Այսօր կալուածների 1/3 մասը կղերի, 1/3 մասը վաճառականութեան և մի 1/3 մասն էլ գտնւում է խաների ձեռքին։ Գլխաւոր կալուածատէրների սինդիկը ամէն միջոցի դիմում է, որ հացահատիկի գինը չընկնի, նրան հետեւում են մանր կալուածատէրերը և քաղաքների ազգաբնակութիւններին մեխալով են ուտացնում—վաճառում հացը։

28. Քաղաքում կալուածատէրների սինդիկը ցորենի գինը 220—250 դրանի էր ծախում, բայց Նիզամի-Սալթանէն 140 դրանի էր մատակարարում ցորենը հացթուխներին, որպէսզի վերջիններն էլ այդ գնով հաց մատակարարեն ժողովրդին. այսինք լիտրը 1,40 դրանի։ Այս նպաստը մի մեծ բարիք չէր Թաւրիզի աղքատ ազգաբնակութեան համար, որոնք ցորեն գնելու և իրենց տներում հաց թխելու հնարաւորութիւն չունէին։ Ամէն օր իւրաքանչիւր հացթուխին մի խալւար ցորեն էին մատակարարում. հսկում էին, որ հացթուխն էլ օրական խալւար ու կէս հաց ծախէ։ Հացագործների վրա յատուկ կօնտրօլ կար, որոնք ամէն իրիկուն զեկուցումն էին տալիս ուր հարկն է։ Յայտնի բան է հացագործները կարող էին կարգին շահել, 14 թումանի ցորենը 21 թումանի ծախելով, բայց եթէ նրանք պարտաւորուած չլինէին Նիզամի-Սալթանէի խոհանոցի ծախսը մատակարարել, ոստիկանապետից փարաշ-բաշիից և փարրաշներից չկողոպտւէին և թաղապետների նւէրներ հասցնելու չպարտաւորւէին։ Եթէ մի-

այն այս կողոպուտին ենթարկւէին հացագործները, զարձեալ նրանց վիճակը աւելի կլինէր, բայց կողմնակի աւարառուները, հարկապահանջները աւելի դառնացնում էին ինչպէս հացագործի, նոյնպէս էլ հացի կարօտ—աղքատների վիճակը։ Բազարում ծախում էին հում, եփ, կիսաշաղախ, մի տեսակ անմարսելի զանգւած, որի մէջ բացի ցորենի հիւթը ամէն տեսակ նիւթ կար։ Այդ զանգւածում գարման, խոտ, հող, նշի կեղև և նոյն իսկ մի տեսակ սպիտակ կաւ խառնւելը պարզւելով՝ մեծ յուզում առաջ բերեց քաղաքում։ Բայց ո՞վ էր հոգս քաշողը, ո՞վ էր մտածողը. թէ աղքատ դասակարգի, բանւորի ստամոքսը, աղիքները, գլուխը և միտքը ի՞նչ զարհուրելի տանջանքների էին մատնւած։ Կառավարութիւնը սեփական ամբարից արժան հաց-ցորեն մատակարարելով հացթուխներին, լիովին իրաւունք ունէր նրանցից մաքուր հաց պահանջելու, բայց հանելուկ էր մնում այն պարագան, թէ նա ինչի էր լռում և չէր ստիպում կարգին հաց պատրաստել։

29. Կալւածատէրերը իրենց աշնանացան, մրոտած, որոմնախառն, դարմանոտ և հողոտ կալի ակուցքն էին բերում յանձնում կառավարչական ամբարին։ Յայտնի բան է ամբարի վերակացուները զօրեղ կալւածատիրոջ գործակատարներին չէին կարող խիստ ճնշել և նրանցից աննշան տոկոս կաշառ վերցնելով, ընդունում էին ներկայացւած հատիկները։ Թոյլ կալւածատէրները աւելի մեծ տոկոս փեշքեաշներ էին տալիս շտեմարանապետին և ազատւում։ Այս պատճառով ամբարում կուտակւել էր շատ ցած տեսակի հացահատիկ։ Ամբարի վերակացուն և դրա ստորադրեալները կառավարութիւնից յատուկ ռոճիկ չունենալով, չոր խմ չէին ուտելու, իսկ այդ յաւելւած հարկերը—կաշառները մտնում էին գլխաւոր վե-

բաանաչի գրպանը: Ուստի վերակացուները իրենց բաժին հանելու համար պարտաւորուած էին ցորենի—գարու մէջ քիչ հող խառնել, քիչ էլ փթած ու ապականուած մթերք: Հացահատիկը յանձնում էին սովորական կարգերի համաձայն ($^1/_{16}$) մի տասնեվեցերորդ յաւելուածով, իսկ հացթուխներին յանձնելիս այդ տասնեվեցերորդականից բաժ էին վերցնում սորին պաշտօնակալները: Սրանց հակառակը կարող էր հացագործին էլ մեծ տուգանքի մատնել, քանի որ նրանք ամէն օր դիմելու էին ամբարը մթերք վերցնելու: Ցորենի մաղ, մաքրող մեքենաները այս երկրում չայլութեան գործիքներ դարձան վերջին քսան տարւան ընթացքում, ուստի կարելի է երեւակայել, թէ ինչ խառնուրդ էին յանձնում կառավարչական ամբարից հացագործներին: Եթէ պարտաւորեցնէին հացթուխներին այդ հացահատիկները մաքրելու, անուաղը այդ ցորենի—գարու միջից 20% հող, քար և այլ անպէտք նիւթ կարող էր դուրս գալ: Եթէ մնած—կապուտած ցորենը, որոմը և ուրիշ նիւթեր էլ դուրս թափուէին, մի այդքան էլ պակասելու էր: Իսկ 40% պակասորդ մթերքից լրացնելու հնարաւորութիւնը գանէին: Բացի այս՝ ամբարից ջրաղաց և փուռը կրող բեռնակիրները, ջրաղացները նոյնպէս բաժին էին հանելու այդ մթերքից, քանի որ թանգութեան տարին նրանց վճարած վարձով անհնարին էր ընտանիք կերակրել և սովամահ չլինել:

30. Նիզամի-Սալթանէն մթերահարկի փոխարէն գլխաւոր վարչութեան վճարելու էր իւրաքանչիւր խալւար ցորեն—գարու համար 60 ղրան. իսկ միջին թւով մթերքը գիւղերից քաղաքի ամբարը փոխադրելուն 20 ղրան: Այնպայ ծախսեր, պակասորդ չէ կարելի խալւարին 5-10 ղրանից աւելի հաշւել, բայց 90 ղրանի իրեն վրա նստած հացահատիկը նա

տալիս էր հայագործներին 140 գրան։ Թէև 50% աշխատանքը աշխարհի ամէն կողմը աւագակութիւն է համարւում, բայց Թաւրիզի ազգաբնակութիւնը այնչափ գոհ էր, քանի որ ամբողջ երեք-չորս տարի 3—4 գրանով էր հաց գնել և ընտանիք պահել, իսկ Նիզամի-Սալթանէն այդ գները կիսով չափ պակասացրեց։ Պետական հարկը հայահատիկով տալու մէնքան մեծ տանջանքի նպատակը յայտնի բան է այս չնչին օգուտները չէր, նրա-դաղտնիքը Նիզամի-Սալթանէի հեռանալուց և Թէհրան մեկնելուց յետո պարզուեց։ Բաւական չէր, որ Նիզամի-Սալթանէն մի փոքր նեղութիւնով ամբողջ քաղաքի համակրանքը գրաւեց, ահագին ժողովրդականութիւն ստացաւ, միանգամայն այնպէս կեղեքեց ու հարստահարեց ժողովրդին, որ ամէնքը մինչև այսօր զարձեալ նրանից գոհ մնացին։ Ինչպէս ասացի, Թաւրիզի 75 հացթուխներին մի ամբողջ տարի օրական հարիւր խալւար ցորեն մատակարարելու համար վճռել էին պետական եկամուտից 36,000 խալւար ցորեն ամբարել քաղաքի Արք կոչուած բերդում։ Բայց Նիզամի-Սալթանէն, նախ մթերքը ամբարելու և ապա բաժանելու պատրւակով, մինչև 1899 թ. դեկտեմբերին ցորեն չաւեց հացթուխներին։ Իսկ 1900 թ. Օգոստոսից, երբ արդէն գիւղացիները նոր բերքը մեծ առատութեամբ քաղաք թափեցին, հացթուխները զգւած երեսները շուռ տւին կառավարչական ամբարի վերակացուներից։ Նիզամի-Սալթանէն 8 ամիս օրական 75 խալւարի չափ ցորեն էր մատակարարել քաղաքին և բոլորն էլ համոզուած էին, որ ամբարում 1899թ. ցորենից 18-19,000 խալւարից աւելի մթերք կայ։ Նիզամի-Սալթանէի հեռանալուց յետո պարզւեց, որ թէ 1899 թ. բերքի մնացորդը և թէ 1900 թ. 46,000 խալւար մթերքի տարբերութիւնները ժամանակին ծախսել և անցել էին փիշկեշաւի գըր-

պանը, որը առանձնապէս խլացրել էր, մօտաւորապէս 3,600,000 ղրան (600,000 ռուբլի)։ Ինչպէս պատմում են ճանապարհին Նիզամի-Սալթանէից այս գումարը ետ են ստացել, երբ նա 1901 թ. Ապրիլին գնում էր Թէհրան։

31. *Թէև անուանական կերպով Ֆինանսի (Մալիէ) մինիստրութիւն կա Պարսկաստանում, բայց նրա գործավարները ներքին գործերի մինիստրի (Սադրազամ) և սրա պաշտօնակալների անմիջական իշխանութեան են ենթարկուած։ Բացի մաքսից, պօստի, հեռագրատան և անցագրի վարչութիւններից, ամբողջ Ատրպատականի եկամուտը ամբողջապէս յանձնուած է, փիշիքարի բացարձակ տրամադրութեանը։ Վարչական, դատաստանական, հողային — կալուածական ամբողջ գործերը կենտրոնացած են Ադմինիստրացիայի ձեռքում։ Ինչպէս յայտնի է, Ատրպատականում—նոյնպէս ամբողջ Պարսկաստանում, բացի մաքսից, անուղղակի հարկեր գոյութիւն չունին։ Խմիչքի և ծխախոտի ակցիզ, դրօշմաթղթի, մոնոպոլներ դեռ. անծանօթ են այս երկրին։ 1904 թուականին աշխատեցան դրօշմաթուղթեր մտցնել մուրհակների, դաշնագրերի և կալուածագրերի համար, բայց բացի մաքսատան սահմանից՝ դուրսը չկարողացան գործադրել տալ, քանի որ կղերը և կալուածատէրները խուլ ընդդիմութիւն ցոյց տուին։ Պարսկական պետական եկամուտը մաքսից և կալուածական հարկից է բաղկացած։ Կալուածական հարկը գանձւում է անմիջապէս կալուածատէրներից, որ երկուսի է բաժանուած՝ դրամական և մթերական։ Դրամականը ֆինանսական վարչութեան կենտրոնական մատեանների որոշ քանակութեամբ, մի կամ երկու տասներորդ յաւելուածով գանձում են մալիէի գործակալները։ Ուժեղները շտապում են իրենց հարկը մալիէի մէմուրի հետ յարմարեցնել—վճարել և ստացականները*

վեր առնել, իսկ թոյլերի վրա պաշտօնականներ են դրւում, որոնք մի նոր տասանորդ վրադիրով (իրենց վարձը) կորզում են կալւածատիրոջից, կամ գիւղականներից։ Ինչպէս ամբողջ գիւղական կալւածների, նոյնպէս քաղաքական կալքերի, այգիների, կրպակների, քարվանսարայների, բաղնիսների, սաւուցաների, արհեստանոցների և գործարանների հարկերը գանձում է Մալիէն։

32. Ինչպէս յայտնել ենք «Կալւածատիրութիւնը և կալւածատիրական հարկերը Ատրպատականում» գրւածքի մէջ, քան տարուց աւելի է, որ պետական մթերահարկը վերածել են նոյնպէս դրամականի։ Տեղական պայմանների և կալւածատէրների անձնաւորութիւնների բանած դիրքի համաձայն է գնահատւած մթերքը։ Ընդհանրապէս ուժեղ կղերը, խաները, սարրաֆները թեթև գնով են վճարում այս հարկը, իսկ թոյլերը ծանր։ Հացահատիկների $^{2}/_{3}$ ցորենի և $^{1}/_{3}$ գարիի խալւարը հաշւում են 40—100 ղրան։ Պէտք է նկատի առնել, որ քաղաքների և մեծ ճանապարհների մօտերը թանկ է գնահատւած, իսկ երկրի խորքերը, անմատչելի լեռնային վայրերը համեմատաբար աւելի աժան։ Մթերահարկի մասին ահաւոր վէճ ունեցաւ Նիզամի-Սալթանէն և վերջապէս ստիպեց կալւածատէրներին, որ հնաւանդ սովորութիւնների համաձայն մթերքով վճարեն, որից թէ ինքը մեծ շահ ստացաւ և թէ կարողացաւ քաղաքների հացագործներին ցորեն մատակարարել և գրաւել արհեստաւորներին և բանւորներին՝ աժան հաց ծախել տալով։

33. Փիշիքարը ճգնում էր ճնշել կալւածատէրներին, որ հնաւանդ սովորութիւնների համաձայն տասնորդական (աշար) մթերահարկը հացահատիկով վճարեն։ Կալւածատէրները առաջարկում էին, որ քանի տարւան ընթացքում արդէն սովո-

րական դարձած կարգերի համաձայն իրենք փողով են վճարելու մթերահարկը, այն էլ նախորդ տարիների ընթացքում կառավարութիւնից տրւած ստացականների հաշւով։ Բայց փիշիքարը կարողացաւ նրանց ընկճել, մանաւանդ քաղաքների բանւոր դասակարգի գրգռումների երկիւղից կապիտալիստները գիշան և մթերահարկի կէսը հացահատիկով և միւս մասը դրամով վճարեցին։ Այս պատճառով մեծ կալւածատէրները պարտաւորւեցան մեծամեծ գումարներ փոխադրել իրենց սնդուկներից, նահանգապետների և փիշիքարի դրամարկղը։ Փիշիքարի անմիջական իշխանութեան տակ գտնւող ֆինանսական պաշտօնակալները կալւածատէրներից մի խալւար մթերքի փոխարէն 16—20 թուման փող էին ստանում, իսկ մթերքի թոշակ ունեցողներից չորս չորս թումանով վճարում իրենց պահանջը։ Այս փոփոխութեան խնդիրն է գլխաւոր պատճառը, որ նահանգապետները իրար գլուխ կտրելով և ահաւոր «փեշքեշներով», յաւելւածներով իրար ձեռքից խլում են նահանգների վարչութեան ղեկը։ (Այժմ արդէն թոշակների խնդիրը կարգադրւում է մաքսային—եւրոպացի պաշտօնակալութիւնը, որից 25% ետ է պահում յօգուտ պետութեան)։

34. Ինչպէս Նիզամի-Սալթանէն Թէհրանից բազմամբոխ սւիտայով եկաւ Ատրպատական, այնպէս էլ բոլոր նահանգապետները իրենց բազմաթիւ ստորադրեալներով մանում են իրանց յանձնւած նահանգները։ Նահանգապետը իւր զաւակներին, կամ եղբայրներին կարգում է իրեն յանձնւած նահանգի վիճակներում օգնական—գաւառապետ, կամ դատարանների վարիչ, տեսուչ և սրանք բոլորն էլ իրենց շրջապատողների հետ ամէն միջոցի դիմում են, որպէսզի պաշտօն ձեռք բերելու համար վճարած գումարը, իրենց անկահ և շռայլ ծախսերը, մի բան էլ օգուտով դուրս կորզեն ազգաբնակու-

թիւնից։ Ամէն մի նահանգապետ որոշ ռոճկագնով յանձնում է իրեն ծառայողներին քարտուղարի. հաշւապահի, ծախսարարի, Ֆարաշ-բաշու, սպասաւորի, բանտապետի, դահիճի և ուրիշ պաշտօնները։ Ծառայողները, մինչև անգամ յետին ղըռնապանը, կօշիկ մաքրողը ծանր տուրքով են ձեռք բերում իրենց պաշտօնները, հետևաբար ամէն ծառայող տքնում է մեծ բան կորզել պաշտօնականների դռներում վէճ—գործ ունեցողներից։ Մինչև անգամ մեծամեծների գլխաւոր ծախսարարները ահաւոր գումար են կորզում իրենց տիրոջ խոհանոցում, ախոռներում ծառայողներից, նրանց ռոճիկով գործ յանձնելու համար։

35. Ո՛չ մի պաշտօնական ծառայող—փիշիքարից սկսեալ մինչև ամենայետին ֆարրաշը կառավարութիւնից յատուկ ռոճիկ չունի իւր վարած պաշտօնի համար. ընդհակառակը ամէն պաշտօնեա ինքն է վճարում իւր մեծաւորներին, որ հաց վաստակելու հնարաւորութիւն ունենա։ Բոլոր պաշտօնները թէև գաղտնապէս են աճուրդի դրւում, բայց մանրամասնութիւնները ականջից ականջ տարածւում է, որպէսզի մեծաւորը կարողանա մրցման ենթարկելով էժան չփախցնել։ Միայն ստորին ծառայողներին, թաղական, գաւառական սոսկ ֆարրաշներին (ոստիկաններին) հազիւ են հասցնում իրենց վիճակներից, քանի որ դրանց փոխարինող հմուտ և փորձառու խուզարկուներ դժւար են գտնւում։ Այս ստորին պաշտօնականները պարծանքով կրկնում են, որ իրենք թամք են, գլխաւոր պաշտօնակալ բռնակիրների շալակին բարձած և առանց նրանց աջակցութեան անպէտք են այդ երկոտանի գրաստները։ Ամէն նահանգապետ իւր վիճակում անսահման ինքնիշխան է, ինչպէս շահնշահը Իրանում, նրա գործին ո՛չ մի իշխանութիւն չի կարող միջամտել։ Նահանգապետը

պարտաւոր է խաղաղութիւնը հաստատ պահել իւր վիճակում, անդորրութիւնը չխանգարել. կամքն ուզած միջոցները գործադրելով։ Հաջի-Սադր-Դովլէ նահանգապետը յանկարծակի թնդանօթներ շարեց քաղաքի մօտակա բլուրի վրա, ռմբակոծեց քաղաքը, առանց նախապէս այս մասին Ատրպատականի, կամ կենտրոնական վարչութեան թոյլտուութիւնը առնելու։ Նոյն պաշտօնակալը Ուրմիայում ձերբակալելով Չահրէկանների առաջնորդ Խոսրով խանին, թնդանօթի բերանին կապելով օդը թռցրեց։ Պաշտօնակալի վիճակի մէջ, առանց նրա համաձայնութեան, բարձրագոյն կառավարութիւնը իրաւունք չունի որեւէ խուզարկութիւն կատարելու, կամ ձերբակալութիւն անելու. առանց թաղապետի գիտութեանն ու համաձայնութեան գահաժառանգի, կամ շահնշահի պաշտօնականները իրաւունք չունին որեւէ չարագործի տուն մտնել, կամ կալանաւորել, կամ գիւղ մտնել՝ առանց կալուածատիրոջ համաձայնութեան, եթէ յանցաւորը շինական է, կամ գիւղում ապաստան է գտել։

36. Ընդհանրապէս Ատրպատականը կառավարւում են գահաժառանգ փոխարքայի հովանաւորութեան տակ փիշիքարը (ամբողջ Ատրպատականի գլխաւոր կառավարիչը) և նահանգապետները։ Մեծ նահանգները բաժանւում են երկու երեք գաւառների, որոնց գաւառապետները գտնւում են նահանգապետի անմիջական իշխանութեան ներքև, ինչպէս Խոյի նահանգապետը իւր գաւառապետ օգնականն ունի Սալմաստում, կամ Սօուջ-Բուլաղի նահանգապետը՝ Սարդաշտում և Սահին-Գալէում։ Նահանգապետները իրենց իշխանութեան տակ ունին երեք տեսակ ծառայողներ. ա. **Միրզաներ** (գրագիր—քարտուղար), բ. **Փիշխիդմեդներ** (սենեկապան—յանձնարարութեան պաշտօնեա) և գ. **Ֆարրաշներ** (ստորին ոստիկան-

նէր)։ Բոլոր այս պաշտօնեաները, ինչ աստիճանի, արժանաւորութեան, շքանշանի տէր էլ լինին դրանք, առանց բացառութեան նահանգապետի ստորադրեալ ծառաներն են, նրա կամքից ու քմքից կախուած է բոլորի գոյութիւնը։ Նահանգապետը իւր ստորադրեալ գնդապետներին, գեներալներին և ուրիշ պաշտօնեաներին կարող է ծեծել տալ, կապկըպել, բանտարկել, խայտառակել, մինչև անգամ մահու դատապարտել ու գործադրել բոլոր հրամանները, առանց վերաքննութեան։ Ո՛չ ոք չի յանձն առնիլ, չի յանդգնիլ բարձրը իշխանութեան դիմել, բողոքել և արդար դատաստան պահանջել։ Մի օր ականատես եղա, թէ ինչպէս փիշիքար Ղայմաղամը քարգուզարի (արտաքին գործերի վարիչ) երկու գեներալ պաշտօնակալներին ֆալախկա դրած թակել էր տալիս և դրանց մեծաւորը արտասուալից աչքերով աղերսում էր ներել և չխայտառակել Եւրոպացիների առաջ իւր հովանաւորութեան յանձնուած պաշտօնատան աւագ գործավարներին։

37. Բոլոր կալուածատէրները համարւում են Ադմինիստրացիայի ստորին ծառայողները, որոնք իրենց կալուածների վրա կառավարչի, դատաւորի, ոստիկանի և լրտեսի դերն են վարում։ Այս է գլխաւոր պատճառը, որ Պարսիկ կառավարութիւնը չի համաձայնում, որ օտարականները գիւղեր գնեն Պարսկաստանում։ Գիւղերի վերաբերեալ բոլոր խնդիրները նահանգապետները և կառավարչապետը հարթում են կալուածատիրոջ հետ, որոնք պատասխանատու են իրենց կալուածների սահմաններում պատահած չարագործութիւնների համար։ Գիւղական հարկերի, տուրքերի, նահանգական տնակնկալ ծախսերի, կառավարչական յայտարարութիւնների, տուգանքների և տոյժերի համար նահանգապետները անմիջապէս յարաբերութեան մէջ են մտնում կալուածատէրների

հետ, որոնցից կորզում են առիւծի չափ բաժինը, իսկ կալւածատէրները իրենցից առնուած գումարների վրա տաս—քսան տոկոս բարդելով բաժնում են կալւածքի բնակիչների տների վրա և ստանում են իրենց կորուստները։

38. Դատավարութիւնը, մանաւանդ դատաստանական վճիռների գործադրութիւնը Ատրպատականում, նոյնպէս ամբողջ պարսկաստանում Ադմինիստրացիայի ձեռքին է։ Դատավարութեան վճիռները թէև տալիս են կղերը—միւջթէհիդները, բայց կողմերին միւջթէհիդներին ուղարկում են ադմինիստրատորները, որանց վճիռները գործադրում են ադմինիստրական պաշտօնակալները։ Ադմինիստրացիայի աջակիցներն են կազմում արտաքին գործերի նախարարութեան պաշտօնակալները (քարգուզար), որոնք վարում են ընիկների գործերը քրիստոնեա և հրէա ընիկների և օտարահպատակների հետ։ Որովհետև դատավարութիւնը շատ բարդ և կնճռոտ կողմեր ունի Ատրպատական աշխարհում, այս գործերում կղերը յատուկ դեր ունին, կղերն ու ադմինիստրացիան անվերջ կռիւ են մղում դատավարական իրաւունքները իրարից խլելու, ուստի այդ խնդիրը կառաջադրուի առանձին հատուածով։

39. Ատրպատականի նահանգները իրարից անկախ վիճակներ են, որոնց ներքին կառավարութիւնը և սովորութիւնները բոլորովին իրարից տարբեր են։ Տարբեր են հարկատուութեան ձևերը, հարկերի չափը և տեսակը, կշիռները և չափերը։ Թաւրիզում լիտրը 1000 մսխալ է, Մարանդում 2000 մսխալ, Մարաղայում, Արդաբիլում, Խոյում և Ուրմիայում բոլորովին տարբեր։ Սօուչ-բուլաղում ռուսական փութ են գործածում, Աստարայում և կառավարչական հիմնարկութիւնների լիտրը 660 մսխալ է։ Ներքին վարչական

սովորութիւնները, տարբերութիւնները այնքան մեծ է, որ այստեղ նրա զանազանութիւնները բաժանելը հեռու կտանէր մեզ նպատակից, ուստի թողնում ենք այդ մասին ծանօթութիւն տալ Ատրպատականի վաճառականութեան մասին գրուած հատուածում։

40. Ատրպատականը բաժանւում է.

Ա. Թաւրիզ, իւր վիճակով, Հաշտարու, Գեարմարու, Դուխարղան և Մարանդի գաւառներով։

Բ. Արդաբիլի նահանգը, Մուղանի գաւառով։

Գ. Աստարա » Խալխալի »

Դ. Ղարաջադաղի՝ Ահարի նահանգը։

Ե. Խոյի նահանգը Սալմաստի և Մակուի գաւառներով։

Զ. Ուրմի նահանգը։

Է. Մարաղայի նահանգը։

Ը. Սօուջ-Բուլաղի նահանգը Սահին-Գալէի և Սարդաշտի գաւառներով։

Այս բոլոր նահանգների վարչութիւնը տրւում է նահանգապետին գահաժառանգի հրովարտակով, որի համար յատուկ նուէր են ներկայացնում վալիաթին փիշքեարի ձևով։ Ընդհանրապէս ուժեղ փիշքեարները այս փէշքեաշների երեք քառորդը իրենք են իւրացնում և մի քառորդը հազիւ ժառանգին են հասցնում, իսկ ներկա գահաժառանգը չէր թոյլ տալ, որ Նիզամի-Սալթանէն իրեն անունով գանձուած փէշքեաշները խուզէ։ Այս խնդիրը միշտ սառնութեան պատճառ էր դարձել։ Թէև ժառանգի դէմ երբէք չէր յանդգնել դժգոհութիւնն յայտնել Նիզամի-Սալթանէն, բայց անվերջ պընդում էր հրաժարականի վրա, ծերութիւնը պատրւակելով։ Մանաւանդ որ գահաժառանգը միջամտելով դատաստանական և կալուածական խնդիրներին, նեղ տեղն էր թողնում

Նիզամի-Սալթանէին, որը դժկամակած միշտ պնդում էր իւր հրաժարականի վերա։ Կենդրոնական կառավարութիւնը թէև միշտ փոխարքայի կողմն էր բռնում, վերջինի որոշումների գործադրութեան հրաման էր արձակում, բայց փոխարքան չէր յանդգնում դիմադրել գահաժառանգի հրամաններին, կամքին, այս պատճառով անկատար էին մնում շատ խնդիրներ։ Այս խառն վէճերից դժկամակած, գահաժառանգը չէր թողնում, որ Նիզամի-Սալթանէն ճնշումներ գործ դնէ կալուածատէրների վրա և նրանցից մթերք կորզէ, կամ կարողանա քաղաքի հացագործներին աժան ցորեն մատակարարել։ Այս նեղ վիճակից ազատուելու համար, Նիզամի-Սալթանէն հրաժարականի վրա պնդեց ու հեռացաւ, տանելով իրեն հետ Թէհրանից բերած ահաւոր պաշտօնեաների ախտան։ Պետական ամբարների մթերքը գահաժառանգը վերստուգելուց յետո, ինչպէս պատմում են, գահաժառանգը պաշտօնեա էր ուղարկել Նիզամի-Սալթանէի ետևից, որոնք ճանապարհին նրան հասել և ետ էին առել ցորենի պակասորդի արժէքը երկու երեք հարիւր հազար թուման։



ՀԵՂԻՆԱԿԻ ԵՐԿԵՐԸ ԾԱԽՈՒՄ ԵՆ

ՎԻՊԱԿԱՆ

---

## ԵՐԿԵՐԻ ԺՈՂՈՎԱԾՈՒՆ

**ՊԱՏԿԵՐՆԵՐ** *Տաճ. Պատ. Թուրքահայերի կեանքից* 1 ր.
**ՎԻՔԵԱԼԱՑԻ ԳԱՂՏՆԻՔԸ** ,, ,, ,, 1 ր.
**ԱԼՄԱՍՏ**, 1 *հատոր* ,, ,, ,, 1 ր.
**ԱԼՄԱՍՏ** 2 ,, ,, ,, ,, 1 ր.
**ՋԱՒԱՀԻՐ** 77—78 *թ. Ռուս. Թուրք. կռւից արկած.* 1 ր.
**ՎԻՊԱԿՆԵՐ** *Երկու վէպ. Թրքահայերի կեանքից* 1 ր.
**ԲԺԺԱԾՆԵՐԸ** *երեք պատկեր ,, ,, կեանքից* 1 ր.
**ԿԱՐԵԼԻ՞ Է ՍԻՐԵԼ** *պատմական վէպ* 1 ր.

*Ընտիր թղթի իւրաքանչիւր հատ. 2 ր.*

**ԽԵՒ-ԿԱՐԱՊԵՏ** *Թրքահայ. կեանքից* ,, ,, 1 ր.
**ՔՈԹ-ԵՂԻԿ** ,, ,, ,, ,, 30 կ.
**ՇԽՆՈՑ** ,, ,, ,, ,, 30 կ.
**ԺԱԹԱՆԳՆԵՐ** ,, ,, ,, ,, 30 կ.
**ԲԵՐՍԱՑԻ ԱԹՈՌՔԵԼԸ** ,, ,, ,, ,, 25 կ.
**ԹՈՒԼՈՒՄԲԱՋԻՆԵՐ** ,, ,, ,, ,, 10 կ.
**ԳԻՄԱԿՆԵՐ** *երգիծական արկածներ* 50 կ.

ՈՂԲԵՐԳԱԿԱՆ

**ՑՈՒՑԱՆ** *երեք արարւած. Թրքահայ կեանքից* ,, 1 ր.
**ՍԱՐՐԱՓ** *հինգ* ,, ,, ,, ,, 30 կ.

ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՒԹԻՒՆ

**ԽԻՒԼԱՓԱԹ** *Պատմ. տեսութիւն Սիւննիների մասին* 50 կ.
**ԻՄԱՄԱԹ** ,, ,, *Շիաների* ,, 1 ր.
**ՀՈՂԱՏԻՐՈՒԹԻՒՆԸ ԿՈՎԿԱՍՈՒՄ** 10 կ.

*Դիմել Թիֆլիս Կենտրոնական և Գուտենբերգ գրավաճառա-նոցները*

*Գրավաճառները կարող են դիմել նոյնպէս.*

ATRPET ALEXANDROPOL RUSSIE

*Որոնց կը լինի սովորական 20 % զիջում:*

# ԴԱՏԱՎԱՐՈՒԹԻՒՆԸ

## ԱՏՐՊԱՏԱԿԱՆՈՒՄ

---

Գուցէ չկա աշխարհում որևէ անկիւն, ուր այնքան զրկանք և անիրաւութիւն կատարուի, որքա՜ն կամայականութիւնների է ենթարկւում Ատրպատականի ողորմելի ժողովուրդը և այնքան խճողւած լինի դատաստանական գործեր, գանգատներ ու բողոքներ, որքան կուտակւած են այս աշխարհում։ Բայց կաշառակուրծ պաշտօնականների, անխիղճ և անիրաւ դատաւորների, ախունդների ու միւջթէհիդների ճիրաններից ազատ մնալու համար. ժողովուրդը խոյս է տալիս դատավարութիւնից, նախապատիւ է համարում հակառակորդից կրած զրկանքը, պաշտօնականների և մոլլաների ձեռքով ստացւելիք բաւարարութիւնից։ Բռնութեան յափշտակութեան և զրկանքի սահմանը չկա, բայց քչերն են յանդգնում անխիղճ դատաւորների դըռները բաղխելու, արդարութիւնը գտնելու յուսով։ Իսկ գանգատի դիմելու ստիպւածները հաստատ համոզւած են, որ ոչ միայն բաւարարութիւն չեն ստանալու, այլ չարաչար տուժելու են, մեծամեծ կորուստների և անհուն տանջանքի ենթարկւելու են, բայց, հոգեկան տանջանքներին մասնակից գտնելու յուսով, դիմում են միմիայն հակառակորդի խաղաղութիւնը

խօսվելու, տուգանքների, կորուստների և հատուցանքների մաս-նելու տենչով: Այս տենչը բաւարարելու, կողոպտելու, սգաց-նելու, մոռմոքեցնել և սերունդից սերունդ մուրացիկ դարձ-նելու ստրկացնելու արհեստը այնպէս լաւ են ուսումնասիրած պարսիկ պաշտօնեաները, մանաւանդ ախունդները ու մուջ-թէհիդները, որ լիովին յաջողել են տալիս կողմերի բորբոք-ւած կրքերին:

Մեր նախորդ յօդուածներից ընթերցողը անշուշտ բաւական պարզ գաղափար կազմած է պարսկաստանի պետական կազ-մի մասին, գիտէ, որ դրական օրէնք գոյութիւն չունի այս երկրում, ամէն խնդրի լուծումը առնում են Ղուրանից և նրա բացատրութիւններից: Դատաստանական գործերի վճռահա-տութեան վերջին խօսքն էլ շէրիաթից է սպասում պարսիկը. իսկ շէրիաթը մի այնպիսի առաձգական զէնք է ճարպիկ ախունդի ձեռքում, որ նա ծռմռում է իր քմահաճոյքի համեմատ: Ուստի մենք էլ շէրիաթը մի կողմը թողնելով, պիտի նկարա-գրենք այնպէս, ինչպէս ներկայիս վարւում են անօրէնն ու անխիղճ առաջնորդ համարւողները իրենց հովանաւորութեան տակ մնացած թշուառ ժողովրդի հետ:

1. Գիւղական հասարակութեան վէճերը, կռիւները, պարտ ու պահանջի, ժառանգութեան, բաժանման, ընտանեկան հա-կառակութիւնների, մարդ կնոջ կռւի բոլոր գործերը կարգա-ւորում է գիւղի ագսախկալին (տանուտէրը), հողատիրոջ լիա-զօրի (մուբաշիրի) հետ: Որովհետև այսպիսի վէճերի կարգա-ւորութեան, կամ խաղաղացման համար գիւղացին պարտաւոր-ուած է վճռողի գումարից հարկ վճարելու դատաւորներին, ուս-տի թշուառ հողագործը յանկեան հակառակորդի հետ, կամ եր-կու դրացու միջնորդութեամբ կարգաւորում են խնդիրը, որ ազատուեն անտեղի տուգանքներից և աւելորդ հարկից: Եթէ

համաձայնութեան չեն կարողանում հասնել, դիմում են իրենց գիւղի կամ մօտակա ապրող և հասարակութեան համակրանքը վայելող մի ախունդի (կղերական մոլլա), որն ըստ շէրիաթի տալիս է ոչ պաշտօնական վճիռ և յորդորում է հաշտուել, ստանալով չնչին նուիրաբերութիւն։ Եթէ կողմերը չեն լսում, դիմում են ագսախկալին-մուբաշիրին, վերջինները վճռողների գրպանները բաւական խուզարկելուց և թեթևացնելուց յետոյ, պարտաւորութեան գիր են առնում (իլթիզամ) և ուղարկում են վճռողների համաձայնութեամբ ընտրած ախունդի մօտ շէրիաթական վճիռ կայացնելու, որի որոշման պարտաւորւում են անպայման հպատակուել կողմերը։ Եթէ ախունդի ընտրութեան մասին վճռողները իրար չեն զիջում, կողմերի առաջարկած ախունդների անունների վրայ վիճակ են գցում գործի վերջաւորութիւնը բաղդին են յանձնում։ Վիճակով ընտրուած ախունդի վճռին անպայման հպատակւելու համար, հակառակորդներից իւրաքանչիւր է ստանում, յաջողութեամբ հաշտութեան պայմանը գրելու, որով այս պայմանը դառնում է անվիճելի և պարտաւորեցուցիչ։ Այսպիսի որոշումները շէրիական կարգով կատարելով, դատաւորը-ախունդը գուրանի որոշ այաթով հաստատում ու կնքում է, այս պատճառով ախունդի տուած վճռի դէմ բողոքելու իրաւունքից զրկւում են կողմերը, իսկ տրտնջացողը անօրէնների և հայհոյողների դասն են ընկնում։

2. Գիւղական ախունդների վճիռը գրեթէ անփոփոխ գործադրւում է, եթէ կողմերից ընկճուածը հնարաւորութիւն չի գտնում բողոքը հասցնելու կալուածատիրոջ, կամ մի նըշանաւոր միւջթէհիդի։ Գիւղական ախունդները աշխատում են իրենց որոշումները շէրիաթի դրական կէտի վրա հիմնել, որպէսզի իրենց վճիռը չկարողանան քանդել միւջթէհիդները և նրանց անունն ու վարկը խայտառակել։ Գործա-

*վարութեան ընթացքում գիւղի ագսախկալին, մուբաշիրը, ախունդի լիազօրը անընդհատ իրար ականջ են փսփսում, գաղտնի յարաբերութեան մէջ են մտնում դատավարի և պատասխանատուի հետ, ամէն ճիգ գործ են դնում վիճողների գրպանները խուզելու, նրանց տուած զանազան խոստումներով: Յաճախ այլևայլ պատրուակներով ձգձգում են գործը մինչև խոստացուաց կաշառի, բաժի գանձումը կամ ապահովացնելը: Պարզ է, որ միշտ զօրեղ կողմը, կարող մարդը ձեռք է գցում այնպիսի նպաստաւոր վճիռ, որ թոյլը իսպառ յուսահատուած ընկճւում և կործանւում է: Դարերից իվեր անիրաւ հարուստի յաղթանակը այնքան սովորական է եղել, որ Ատրպատականի շինականի համար սովորական առած է դարձել և պարտաւորական օրէնք, թէ—«Աղքատ արդարի անիրաւ հզօրի դէմ մարտնչելը պակասամտութիւն է»:*

*3. Գիւղերում պատահած քրէական գործերը, գողութեան, աւազակութեան, հրձգութեան, առևանգութեան, աղջիկ փախցնողի, պոռնկութեան, կռւի, վէրքի և խեղանդամութեան դատավարութիւնը կատարում են կալուածատէրները կամ սրանց լիազօրները ագսախկալիների հետ: Սրանք պատժում են յանցաւորին, ծեծում, բանտարկում, տուգանում, վնասները առնում, վնասի ենթարկուածին բաւարարում և կարգը պահպանելու համար միջոցների մէջ խտրութիւն չեն դնում: Այստեղ էլ ակնյայտնի կերպով զօրեղները, կարողները խեղդում են աղքատ չունեորի ձայնը դրամով—վճարներով: Խեղանդամների բաւարարութեան քանակը (դիա) դարձեալ սահմանում են ախունդները շէրիաթի ու հադիսների համաձայն: Կալուածատէրը և գիւղացին ամէն միջոցի դիմում է, որ այսպիսի խնդիրների առթիւ գործին չմիջամտի կառավարչական պաշտօնակալը, բոլոր ոյժով տքնում են կողմերի խաղաղաց-*

նելու։ Մինչև անգամ եթէ յանցանքը գործուել է երկու հարևան կալուածների բնակչութեան մէջ, կալուածատէրերը համերաշխաբար խաղաղացնում են վիճողներին, որպէսզի պաշտօնականները իրենց քիթը չխոթեն և բաժ չվերցնեն իրենց ռայաթից։

Այսպիսի դէպքերում երկրագործ դասը այնքա՜ն տուգանքների է ենթարկուել, որ այդ գործերը ներքին կերպով հարթելու ճանապարհները կատարելապէս ուսումնասիրել և կարգի է գրել, որպէսզի չարաչար տուգանքներից ազատուի։

4. Ոճրագործութեան, մարդասպանութեան դէպքում նահանգապետները անպայման միջամտում և մեծ տուգանք են ստանում կալուածատէրերից, որոնք իրենց վճռածի վրա 20-40 տոկոս բարդած գանձում են գիւղական համայնքից։ Թէև չիա կղերը իւր իրաւունքն է համարում թէ քաղաքական, թէ քրէական և թէ ոճրագործական դատավարութիւնը, բայց պարսիկ կառավարութիւնը, ոճրագործական խնդիրները անկախ վարում, վճռում, գործադրում է որոշումները, արհամարհելով կղերի անտեղի տրտունջները։ Մանաւանդ քաղաքներում կառավարչական պաշտօնեաները անմիջապէս միջամտում, անկախ քննում ու վճռում են ոչ միայն ոճրագործական, այլ նոյն իսկ քրէական ու յանցանքի բոլոր գործերը։ Կառավարութիւնը ձեռնամուխ է լինում նոյնպէս այն դէպքում, երբ շինականների վրա բողոք են տալիս քաղաքացիները, ոչ-մուսլիմները, օտարահպատակները, կամ ճանապարհորդները։ Եթէ կալուածատէրը ուժեղ է, նա կառավարչական պաշտօնեաների ճանապարհը անմիջապէս կտրում, ետ է դարձնում, իսկ թոյլերը չարաչար տուժում են։

5. Աւաններում և քաղաքներում առանձին, անկախ արդարութեան դատարաններ չկան, գաւառապետը, նահանգապետը

կամ կառավարչապետը միանգամայն իրենց վճռելի դատաւորները և դատախազներն են։ Պարտ ու պահանջի բողոքները, յանցանքները, քրէական գործերը, ոճիրները քննում ու վճռում են ադմինիստրատորները։ Այս գործերը քննում, կողմերին և վկաներին լսում, եզրակացութիւնները և որոշումները տալիս են նահանգապետների օգնականները, որոնք իր եղբայրները, զաւակները, կամ մերձաւորներն են, որոնց պաշտօնի կոչողն ու հեռացնողը իրենք են։ Մանր գործերը, գանկատները լսում, վճռում և վերջացնում են նահանգապետների Փառրաշ-բաշիները (ոստիկանների աւագը)։ Շէրի օրէնքներին ծանօթ նահանգապետը շատ հմտութեամբ է վարում գործերը. շատ բաժին է ստանում կողմերից, իսկ անգրագէտների որոշումները յաճախ փոփոխւում են։ Գործերի վճռահատութիւնից դատաւորները տաս տոկոս վարձ են ստանում, բայց մինչև որոշում տալը, վճիռ կայացնելն ու գործակալը երկու կողմից 20-30 տոկոս էլ կաշառ են վերցնում կանխապէս։ Իսկ կաշառն այնքան սովորական է, որ դրա դէմ բողոքելը տարօրինակ դէպք կարող է համարուել և այդ փէշքեաշները արդար վճար են համարում նահանգապետները, քանի որ դրանով պիտի լրացնեն այն գումարը, որը նրանք տալիս են բարձր իշխանութեան պաշտօնները աճուրդով վերցնելու։

6. Եթէ նահանգապետի շրջապատողները չեն կարողանում համոզել վիճող կողմերին, երբ կողմերից մէկը Ալլահի-Շէրիաթի անունով արդարութիւն է պահանջում, կամ կաշառելով նահանգապետին, խնդրում է գործը մուջթէհիդի դուռը ուղարկել, այս դէպքում վիճողներից ստորագրութիւն են առնում, կողմերից ընտրուած, կամ վիճակով որոշած մի մուջթէհիդի մօտ գնալ շէրիաթական վճիռ ստանալու համար։ Քա-

ղաքի թաղերը մասերի չէ վերածուած և ժողովրդի համար պարտադիր չէ այս կամ այն միւջթէհիդի դուռը գնալ. այլ նա ազատ է ընտրել դատաւոր միւջթէհիդներից կամ ախունդներից որին որ ցանկայ։ Պարսիկների մէջ ոչ միայն բազմաթիւ են աղանդները, այլ անթիւ են ամեն մի աղանդի բացատրողները, իսկ ամէն մի անհատ իւր հաւանած բացատրիչ կղերին է ձգտում յանձնել իւր դատը։ Որովհետև կողմերի աշխարհայեացքները տարբեր են, նրանք չեն կարող միևնոյն անձնաւորութեան երկուսն էլ հաւատալ, այս պատճառով միւջթէհիդի ընտրութիւնը անչափ նեղութիւն է պատճառում նահանգապետին։ Նահանգապետը համոզելով, կամ վիճակով միւջթէհիդին որոշելուց յետո, կողմերին իւր փիշխդմէթների և ֆարրաշների առաջնորդութեամբ ուղարկում է շէրիաթի դուռը։ Կողմերը պարտաւոր են իրենց հետևող նահանգապետների սպասաւորներին կերակրել, կշտացնել օրավարձ տալ մինչև գործի աւարտը։ Այսպիսի որսերին մաշկելու արհեստը լաւ են ուսումնասիրած ֆարրաշները, այնպէս որ, դատաւորի դռնից ներս մտնող գանկատաւորը, կամ պատասխանատուն պարտաւոր է իրեն հետևող, հրաւիրող ֆարրաշներին, դռնապաններին, կօշիկների պահապանին միւջթէհիդի շիբուխչիին անվերջ վճարել, որպէսզի վզակոթը ազատէ բռունցքների հարուածներից, կամ հրապարակով ապտակի ու նախատինքի չարժանանայ։ Յայտնի բան է, զօրեղ գանկատաւորները աւելի քիչ են կեղեքւում ու նախատւում, քան թէ թոյլերը. բայց ընչաքաղց ֆարրաշը աւելի շատ բան պոկելու համար աներեսութիւնից ձեռ չի վերցնում։ Այս էլ պէտք է նկատի առնել, որ նահանգապետ դատաւորները յայտնի ուժեղ անձնաւորութիւնների դէմ գանկատներ կամ չեն ընդունում, կամ նրանց հետ ակնածութեամբ են վարւում,

որպէսզի չփչրւեն։ Իսկ եթէ դատաւորը բարձր կառավարութիւնից դրանց ջախջախելու, կամ կեղեքելու արտօնութիւն կարողանում է ձեռք բերել, այդ դէպքում դրանց էլ ֆարրաշները այնպէս են հրմշտկում, ինչպէս սովորական թոյլերին, և վա՜յ այդպիսի պարագային ֆարրաշի ճանկն ընկած կարողութեան տիրոջը։

7. Միւջթէհիդը անմիջապէս գործին վերջ տալ չգիտէ, նա էլ փառասիրութեան յագուրդ տալու համար, ամիսներով տանում բերում է գանգատաւորին, նրանց վկաներին, վկաների երաշխաւորներին (թէզգիլ) որպէսզի ցոյց տա աշխարհին, մրցակիցներին, թէ իւր դուռը միշտ հոծ բազմութիւն է խռնւում, ինքը ահաւոր ամբոխի և կառավարութեան համակրութիւնն է վայելում։ Ամէն նիստին 40-50 ախունդների ներկայութեան միւջթէհիդը մի քանի րոպէ գործը քննելուց յետո, որևէ պատրւակով կանգնեցնում է քննութիւնը և առաջարկում է հետևեալ օրը որոշ ժամին այս կամ այն փաստաթղթով, տոմարով կամ վկաների հետ ներկայանալ։ Միւջթէհիդը գործերը քննում է իւր տանը, գաւթում, ճանապարհին, մզկիթի դռանը կամ աղօթարանում. հրաւէրքի դահլիճում, կամ որտեղ որ պատահի, միշտ աշխատելով գործը ցուցադրել մեծ բազմութեան առաջ։ Պատահում են դէպքեր, որ գործերը միւջթէհիդների դռներում տարիների ընթացքում չեն վերջանում և կործանում են իսպառ կողմերին։ Թէև միւջթէհիդը ինքն է անձամբ քննելու և վճռելու գործերը, նրա համոզմունքից պիտի բղխի վճիռը, բայց միւջթէհիդի ազգականները, մտերիմները, աշակերտները կարողանում են գործի ընթացքի վրա իրենց ազդեցութիւնը բանեցնել։ Յաճախ միւջթէհիդը յորդորում է կողմերին, որ իրեն մտերիմներից մէկին միջնորդ դատաւոր ընտրեն և նրա կայացնելիք

հաշտութեան գրին հպատակելու ստորագրութիւն տալ։ Ընդհանրապէս շէրիի վճռի դէմ կարելի է ընդ միշտ բողոքել և իրար ներհակ նորանոր որոշումներ կայացնել տալ. այս պատճառով գործն խպառ վերջացնելու, անվերջ դատավարութիւններից ազատելու համար, ուժեղ կողմի պաշտպանները նահանգապետ—դատաւորը, կամ միւջթէհիդը սախպում են, որ անպայման գործը միջնորդ դատաւորների յանձնւին, որպէսզի նրանց կայացրած հաշտութեան դաշնագիրը խծբծելու կամ բողոքելու իրաւունք չունենան կողմերը։

8. Եթէ գանկատաւորը կամ պատասխանատուն նկատում են, որ դատաւորը կամ միւջթէհիդը կաշառւելով հակառակորդից՝ ուզում են իրենց խպառ կործանել, այս դէպքում փախչում են, որևէ տեղ ապաստանում։ Թէև պարսկական կառավարութեան Ռուսների հետ ունեցած սնանկութեան դաշնագրի համաձայն խոստացած է ջնջել ապաստարանները, բայց դրանց առաջն առնելու անկարող է, քանի որ ներկա ագիտութեան խաւարը թագաւորում է երկրում։ Իրանի գլխաւոր սրբատեղիները, նշանաւոր մզկիթները, յայտնի միւջթէհիդների բնակարանները. գահաժառանգի և շահի աթոռները այնպիսի սրբագործւած ապաստաններ են, որ ոչ թէ միւջթէհիդները՝ այլ շահնշահերն անգամ չեն յանդգնիլ ապաստանածին ձեռնամուխ լինել։ Ճշմարիտ է, ապաստանելով գանկատաւորները՝ նպատակի չեն հասնում, բայց գործը կաշկանդում են։ Դատաւորը. միւջթէհիդը ոչ միայն չի կարող յանդգնիլ ապաստանածին բռնել, կալանաւորել, շղթայել, թակել, սպանել, այլ մինչև անգամ չեն կարող նրա ինչքը, մանաւանդ անշարժ կալւածքը գրաւել ու ծախել։ Թուցէ վաճառատունը, ապրանքը, պահանջները գրաւեն, բայց համաձայն շէրիաթի, ժողովրդից ոչ ոք չի մօտենայ գնելու կամ օգտւելու այդ իրե-

ըից, յատկապէս անշարժ կալուածներին, քանի որ ապրանքա-
տիրոջ ազատ կամքին հակառակ առուծախը միւսլիմանի հա-
ւատքով «հարամ» է, չի կարելի սեփականացնել։ Տիրոջ կամ-
քով չծախուած ուտելիքը ճշմարիտ հաւատացեալ միւսլիմանը
չի կարող ուտել, կերպասեղէնը՝ հագնել, փռւածքի վրա՝ ման
գալ, տանը մէջ՝ ապրել, աղօթել կամ ծոմ պահել, կալուած-
քի-գիւղի կամ այգու հասոյթը ստանալ, ուտել։ Այն միւս-
լիմը, որ առանց տիրոջ կամքին միւսլիմանի ապրանքը իւրաց-
նէ, նա ոչ միայն անօրէն—հայհոյող է, ոչ միայն իսլամի
համայնքից դուրս է շպրտուած, այլ այդպիսի անձի հետ յա-
րաբերութիւն ունեցողի հետ էլ բարեկամութիւն, խնամիու-
թիւն. երթեւեկութիւն, սեղանակցութիւն, մինչև անգամ բա-
րեւակցութիւն անելը «հարամ» է։ Այս պարագային շիանե-
րը այնքան խիստ են, որ ապաստան մտնողի հակառակորդը
որդէն մեծ մասամբ գործը տարուած է համարում և միշտ
պատրաստ է զիջողութեան, հաշտութեան։

9. Մանաւանդ որ այսպիսի պարագային պատասխանա-
տուի ապրանքը անցնելով անխիղճ նահանգապետի—դատա-
ւորների ձեռքը, նրանք այդ ամէնը իւրացնում, բաժան բա-
ժան են անում իրար մէջ, եկամուտը յափշտակում են մէմուր-
ները (պաշտօնեա), ընտանիքի անդամներին տանջում, կեղե-
քում են պաշտօնականների սպասաւորները, ֆարրաշները և
ամէն բան աւարի մատնելով գանգատաւորին, ապրանք չի
մնում իւրացնելու։ Ապաստանողի անվերջ հալածանքներից
ստիպուած ապաստարանի վերատեսուչը կամ տէրը անձամբ
կամ լիազորի միջով լսում, ուսումնասիրում է նրա գանգա-
տը ու պահանջը և բանակցութեան է մտնում դատաւորների,
կամ նոյն իսկ գանգատաւորի հետ, աշխատում է կողմերին
հաշտեցնել, կամ ինքն է միջնորդ դատաւոր ընտրում կող-

*մերից և հաշտեցնում, վերջացնում է։ Գանկատաւորը ի նկատի ունենալով նահանգապետի կաշառակերութիւնը, միւջթէհիդի ագահութիւնը, ֆարրաշների և մէմուրների անկարգութիւնը, դրացիների դժգոհութիւնն ու նախատինքը, մանաւանդ օրըստօրէ գրպանի թեթևանալը, զիջում՝ մի կերպ հաշտւում է։ Այս պարագային հաշտւում են նոյն իսկ գանկատից առաջ նրան խոստացուած գումարի քառորդով և տասներորդով, որի կէսը բաժին է տալիս պաշտօնակալներին և նրանց սպասաւորներին։*

10, *Դարևոր սոյնանման անթիւ օրինակներից այնպէս է փորձուած Իրանի ազգաբնակութիւնը, որ ամէն մի զրկուած ու ճնշուած գանկատաւոր, հազար անգամ նախապատիւ է համարում հակառակորդից կողոպտւել ու հարստահարւել, քան թէ միւջթէհիդից կամ դատաւորից։ Այս պատճառով դատարաններում սովորական գործերի դատավարութիւնը անհամեմատ քիչ է։ Այս պատճառները ծնունդ են տւել Պարսկաստանի քաղաքներում տարօրինակ դատարանների և դատաւորների, որի նմանը աշխարհի և ոչ մի անկիւնում չի կարելի երևակայել։ Պարսկաստանի աւանների, քաղաքների ամէն մի խանութպանը՝ մրգավաճառ թէ մսագործ, ճոթածախ թէ մանրավաճառ, կալուածատէր թէ սեղանաւոր* (banquier) *մի մի դատաւորներ են և իրենց գրքի համեմատ իրենց կրպակներում բանտ, դատարաններ ու գործադիր մարմին ունին։ Մի խանութպան, երբ նկատում է, որ իր պարտապանը խոյս է տալիս պարտքը վճարելուց, նա բռնում է պարտապանին, որտեղ որ պատահի, տանը՝ թէ փողոցում, թէյարանում՝ թէ հրապարակում և բռնի ուժով, ամենայն խայտառակութեամբ ստիպում է պարտքը վճարելու։ Առնելիքը գանձելու համար այսպիսի խայտառակ ընթացքը այնքան սովորական է, որ ոչ*

ոք պահանջատիրոջը կամ նրա գործակատարին արած բռնութեան համար չի էլ մեղադրում։ Եթէ պարտապանը քիչ գլխքով մարդ է, վաճառատան կամ նոյն իսկ բնակարանի առաջ նստեցնում է պահանջատէրը իւր գործակատարին, որ նրան որտեղ որ պատահի բռնէ և մինչև որ պահանջը չըստանա, բաց չթողնէ։ Գործակատարները երբեմն օրերով, շաբաթներով կտրում են պարտապանի դուռը և այնքան խայտառակութիւններ են կատարում, այնպէս ձանձրացնում են, որ պարտապանը անճարացած միջոցներ է որոնում գոհացում տալու պահանջատիրոջը և նախատինքից ազատուելու։ Յայտնի բան է, ուժեղ պահանջատէրը միայն կարող է թոյլ պարտապանին ճնշել, իսկ զօրեղները թակում, ջարդում, ճանապարհ են գցում աներես գործակատարներին. որի ընթացքում կատարուած ծեծկռուքին, կամ վէրքերի գործին միջամտում է նահանգապետի, կամ թաղապետի և կամ ոստիկանապետի փարրաշների խումբը և երկու կողմից էլ իւր բաժը վերցնելուց յետոյ, գործը—պարտ ու պահանջի քննութիւնն էլ քաշւում, մտցնում է դատարան, որով կողմերը ընկնում են չարաչար ծանր տուգանքների տակ։ Այս պատճառով կողմերը միշտ սուր ընդհարումներից խոյս են տալիս և գործը կարգաւորում են ատտնին կերպով։ Որպէսզի գործակատարները չկարողանան աներեսաբար պնդել և աներկիւղ պահանջել իրենց պատրոնների իրաւունքը, ծեծի, նախատինքի չմատնուել և պաշտպանութիւն գտնել շրջապատողներից դրանց ընդհանրապէս ընտրում են սէիդների (Ալի-Ֆաթիմէի սերունդից) շըրջանից, որոնք պարսկաստանի ամենաարտօնեալ դասակարգն են կազմում։

11. Այս կռիւներում սովորաբար թոյլերը միշտ տուժում և զօրեղները կլանում են նրանց իրաւունքը։ Ո՛չ մի աշխար-

հում թոյլ, ակարի իրաւունքը այնքան չի անարգւած ու փչացած, որքան Պարսկաստանում, այս պատճառով ամէն մի պարսիկ գլուխը պահպանելու, իրաւունքից չզրկւելու համար պարտաւորւած է մտնել որևէ զօրեղի հովանու տակ։ Ընդհանրապէս մեծամեծները և նշանաւոր վէզիրները մտնում են մեծ մուջթէհիդների հովանու տակ, իրանց հովանու տակ առնելով շրջապատող փոքրագոյններին։ Միջակ վաճառականները մտնելով կալւածատէրների և սեղանաւորների հովանու տակ, իրենց հովանու տակ առնում են աւելի թոյլերին։ Երբ մէկը անկարող է անձամբ գանձելու իւր պահանջը, նա դիմում է իւր հովանաւորին, որի գործակատարները համարձակ ստիպում են պարտապանին վճարելու և գումարը հասցնում են իրենց պատրոնի հովանաւորեալին։ Հովանաւորութիւնը կատարւում է կամ փոխադարձ վաճառականական շահերից ստիպւած՝ և կամ որոշ վարձատրութեամբ։ Զօրեղ հովանաւորողները, երբ պատահում են ուժեղ հովանաւորւածի, ընկւում է կատաղի մրցում։ Այստեղ գործակատարները իրար ախոյեան են կանգնում և վա՜յ ընկնողին, նա գլորւում է չարաչար, նրան հալածում են բոլորը։ Երբեմն երկու մուջթէհիդներ, երկու կալւածատէրներ և կամ երկու յայտնի սեղանաւորներ մրցման են դնում իրենց ուժերը, իրար գլուխ ցոյց տալու համար. որպէսզի հետևորդները շատացնեն—մուշտարի աւելացնեն և այսպիսի մրցումը ամիսներ է տևում։ Սպասաւորներն ու գործակատարները իրար են ջարդում, խեղանդամութիւններ է պատահում և չեն զիջում մինչև կառավարութեան միջամտութիւնը։ Ամէն մարդ իւր հովանաւորին է գովում, ամէնքն էլ իրենց առաջնորդին են արդարացնում, բոլորն էլ ձգտում են, որ յաղթանակը՝ թէև անիրաւ, իրենց գլխաւորն ստանա։ Յաղթանակողի վաճառատան յաճախորդ-

ների թիւը աւելանում է, ամէն մարդ աշխատում է գրաւել այսպիսի հովանաւորի սիրտը, որպէսզի կարիք եղած ժամանակ չգլորւի խորխորատը։

12. Հովանաւորութեան կարիքն այնքան անհրաժեշտ է Պարսկաստանում, որ առանց հովանաւորի ապրելն անհնար է։ Ոչ ոք չի կարող ապրուստ ճարել, գոյքը և գոյութիւնը ապահովել, եթէ հովանաւոր չունենա։ Սրա պատճառը կառավարութեան անչափ, անսահման թուլութիւնն է, նա չի կարողանում հպատակների կեանքը, գոյքը, պատիւը ապահովել։ Նա ոչ զինուորական և ոչ էլ ադմինիստրացիական ոյժ ունի, որ իհարկին պաշտպանէ մասսային։ Նա ոչ կանոնաւոր կրթւած բիւրօկրատիա ունի, ոչ էլ զարգացած ազնւականութիւն (խաներ), որ կարողանա արդար դատաստանով և խոհեմ վարչութիւնով զսպել յափշտակիչներին, անճարացած թող է աւել հովանաւորական սիստէմի զարգանալուն, որի առաջն առնելը անկարող է։ Հովանաւորութիւնը այն ծայրահեղութեան է հասել, որ պարսիկների մէջ սովորական առած է դարձել, ասում են.—Այս ինչ վաճառականը այն ինչ կալւածատիրոջ կինն է, այսինչ կապալառուն այնինչ սեղանաւորի կինն է, այսինքն գործում է և գոյութիւնը պաշտպանում է նրա հովանաւորութեան տակ։ Այս հովանաւորութեան շնորհիւ այս ինչ, այն ինչ առուտրականները, արհեստաւորներըն էլ այս ինչ կապալառուի կիներն են։ Ինչպէս ամէն զօրեղ ուեէ զօրեղագոյնի կինն է դարձել, այնպէս էլ ինքը իրենից թոյլերին իրեն կին է դարձրել։ Հովանաւորութիւնը ձրի չի կատարւում. մեծամեծները միւջթէհիդներին իրենց եկամուտի տասանորդն են տալիս, կամ կտակում են իրենց գոյքի երրորդ մասը, որպէսզի իբր աղքատներին բաժանեն, բայց երկու կողմն էլ համոզւած է որ խաբէութիւն են կատարում,

այլ տալիս են փոխադարձ շահերից շաղկապուած: Մեծամեծների շնորհը վայելելով վաճառականներն էլ ինչպէս տասանորդ են տալիս իրենց հովանաւորներին, նոյնպէս ստանում են հովանաւորուածներից, ամէն մի գործից, վէճից, կամ առուտուրից։ Ինչպէս միւջթէհիդներն ունին իրենց ատեանը, այնպէս էլ վաճառականները ունին իրենց դիւանը, որտեղ ճնշում, համոզում են թոյլերին, որ գոհացում տան հովանաւորողներին։ Երբեմն մասնաւոր դատարան ունեցող որևէ վաճառական կարողանում է կաշկանդել կառավարչական պաշտօնակալներին, միւջթէհիդներին և նպատակին հասնել։

13. Ամէնից որոշ գաղափար կարելի է կազմել կատարուած փաստերից, որից մի օրինակ առաջ բերելը աւելորդ չեմ համարում։

Թաւրիզում մի յայտնի սեղանաւոր Հաջի, որ վայելում էր ինչպէս Սադրազամի, գահաժառանգի և շահի հովանաւորութիւնը, հովանաւորուած էր Ռուսական պասպորտով կայսերական կօնսուլատից։ Այս սեղանաւոր Հաջիին քսան տարի առաջ թակելով հարսանիքից քաշել, տարել էր մի պարսիկ ադմինիստրատոր։ Նա այդ անարգանքը չկարողանալով կրել, գնացել էր պապական ծննդավայրը Շամախի, արձանագրութիւնները քննել, նորոգել տուել և պասպորտով զինուած եկել էր Թաւրիզ, որ այլևս ոչոք չկարողանա նրան ճնշել։ Այս բոլորովին ապահովուած սեղանաւորին շրջապատել է Թաւրիզի վաճառականութեան մեծագոյն մասը, որոնց նա 12%-ով փող է բաց թողնում։ Ուժեղ հովանաւոր, փողատէր և հաստատակամ մարդ, ինչո՛ւ նրան չպիտի շրջապատեն։ Եղբ. Սարաջով անունով վաճառականներ—պարսկահպատակ նրանից փող են վերցնում շահով 10—15 տարի, տարեկան 50—70 հազար

թուման, անընդհատ վճարելով կապիտալը 12%-ով։ Սարաջովները մեծ քանակութեամբ նուշ էին տանում Ռուսաստան, և շաքար, նաւթ ու երկաթ էին բերում Պարսկաստան, իսկ սըրանից հինգ տարի առաջ սնանկացան։ Հաջին իւր առնելիքը լիովին ստանալու տենչով՝ մի ամբողջ տարի նրանց ձեռք բանեց և չթողեց, որ սնանկութիւնը յայտարարուի։ Հրապարակով նրանց փող էր տալիս, վարկերն էր պահպանում և փոխանակագիրներ էր յանձնել տալիս բանկերից, որ կարողանան գործերը շարունակել և Ռուսաստանի վաճառականների հետ։ Այս ընթացքով Սարաջովները կարողացան Բագուից մեծ քանակութեամբ շաքար ու նաւթ բերել և Թաւրիզի բանկերից ու սեղանաւորներից փոխառութիւններ անել։ Երբ Հաջին այս դրամներից ու ապրանքներից իր պահանջը և ապրանքը լիովին ստացաւ, գուցէ մի բան էլ աւել, վարձատրութեան կամ ապագային սնանկներին օգնելու նպատակով, Սարաջովները յանկարծ անհետացան Թաւրիզից և Վլադիկավկաս կալանաւորուած՝ դարձան Թաւրիզ։ Հաջին նկատելով, որ Ռուսահպատակների շահերի պատճառով Ռուսական կօնսուլատը քարգուզարի միջոցով սկսեց խիստ միջոցների դիմել, նա էլ կուլիսների ետևից պաշտպանեց հովանաւորեալներին և այնպիսի ընթացք տուեց գործին, որ Սարաջովները կուլ տուին ինչպէս Ռուս վաճառականների, նոյնպէս Թաւրիզի քսանից աւելի թուրք ուժեղ վաճառականների դրամները և կօնսուլատն ու թուրք վաճառականները չկարողացան նոյն իսկ մի ճանապարհ գտնել, որ այդ հովանաւորին հրապարակ դուրս քաշեն։ Հաջին առանց հրապարակ դուրս գալու, գործին այնպիսի ընթացք տուեց, քարգուզարին այնպէս կաշկանդեց, որ կօնսուլատի ձեռք առած միջոցները զուր անցան, Բագուից եկած կրկնա-

կի փաստաբանները ունայած են դարձան, միայն Սարաջով-
ները, որպէս անբարեխիղճ մնանկներ, երկու տարի բանտ նըս-
տան և ազատուեցան։ Հաջին այնպէս ծածկեց գրաւած ապ-
րանքն ու դրամը, այնպէս գաղել տւեց Սարաջովների խո-
կական մատեանները, մէջ գցեցին կեղծւածները, որ հնար
չգտան, փաստ չգտան, որ դատաստանի յանձնէին Հաջիին։
Չնայելով որ Պարսիկ և Ռուս վաճառականներին յայտնի էր,
որ Հաջին պաշտպանում էր մնանկ Սարաջովներին, որ Հա-
ջին իւր առնելիքները ստացել էր Սարաջովների վերջին
ժամանակները գնած ապրանքով և արած փոխառութիւն-
ներով, չնայելով որ միւջթէհիդները պաշտպանում էին Պար-
սիկ յայտնի վաճառականներին, իսկ կոնսուլատը իւր force-
majeure-ով ճնշում էր քարգուզարին, բայց և այնպէս Հա-
ջին մնաց, միայն իւր զօրեղ ազդեցութեամբ, քարգուզարին
խոնարհեցրեց և իւր կամքը առաջ տանելով՝ Թաւրիզի հրա-
պարակում ձեռք բերեց զօրեղագոյնի դիրքը, մարսեց կլանա-
ծը և մարսել տւեց իւր հովանաւորուածներին իրենց չարա-
գործութիւնը։

14. Այսպիսի դառն փորձերից խրատուած Պարսիկ վաճա-
ռականը, նա ամէն մի մնանկութեան դէպքում նախ և ա-
ռաջ քննում է, թէ ով է իրեն դէմ կանգնած, հրապարակով
կամ վարագուրուած. ում հովանաւորեալն է կոտր ընկնողը և
ապա միջոցների է դիմում գործը խաղաղութեամբ վերջաց-
նելու, հաշտուելու։ Եթէ մնանկացողի պահանջատէրների մէջ
քրիստոնեայ կամ օտարական չկա, գործի գլուխ է անցնում
որևէ միւջթէհիդ, իւր բաժինը ստանալու յետո, մնանկացողին
ու օրւա համար էլ մի բան գաղել է տալիս, 20—25% վճա-
րով փակում է հաշիւները և գոհացնում բոլորին։ Եթէ պա-
հանջատէրների մէջ գտնւում են ուժեղ անձնաւորութիւններ,

որոնք կարողանում են դիմադրել միւջթէհիդին, գործը քաշ են տալիս Պարսկական վաճառականական ատեանը, որտեղ կողմերին լաւ քամելուց յետո, զօրեղ պահանջատէրը ամբողջապէս կամ 40—50%-ով ծածկապէս ստանում է, վերջացնում է իւր հաշիւը, տկար պահանջատէրները անճարացած 7—10 տոկոս ձեռք գցելով, նախատելով ու հայհոյելով հեռանում են ատեանի դռնից: Պէտք է յիշել, որ վաճառականական դատարանի նախագահն էլ իւրաքանչիւր նահանգի նահանգապետն է, որը գործերը քննել ու վճռել է տալիս լիազօրների միջոցով, իրեն պահպանելով վերջնական որոշումը: Այս լիազօրները նահանգապետի ազգականներն են, կամ որդիները, որոնք քաղաքի վաճառականներից ընտրուած յայտնի անձնաւորութիւնների հետ քննում են գործը, ամէն քայլ խորհրդակցում են նահանգապետի հետ, մինչև վերջնական վճռի արձանագրելը: Պարսկաստանում սիստական դատաստանական գրաւոր գործավարութիւն, գործերի արխիւ չկա, չկան նոյնպէս հիմնական հաստատութիւններ: Ամէն մի գործ քննելուց յետո, գրում կնքում են վճիռը, յանձնում են դանկատաւորին, կամ պարտապանին ու արձակում: Վըճիռներ, փաստաթղթեր, վկաների ցուցմունքների անձնագրութիւններ և ուրիշ թղթեր պիտի ունենան ու պահպանեն կողմերը և իհարկէ ներկայացնեն:

15. Պարսկաստանի դատավարութեան ամենավատ կողմը ՑԱՆՁՆԱՐԱՐԱԳԱՆՆԵՐՆ (թավսիյէ) են, որոնք կապում կաշկանդում են ոչ միայն դատաւորներին, կողմերին, այլ կործանում են երկիրը: Օրինակ, եթէ մէկը մի պարտք ունի, կամ բանի տիրել է մէկի տունը և դա դիցուք ծառայում է մի նըշանաւոր խանի մօտ, կամ հովանաւորեալ է մի նշանաւոր սեղանաւորից, կամ դիցուք պալատական մի խանումի մա-

մատակարարն է, ոչ ոք դրան չի կարող ստիպել և դատարան տանել, պատասխանատուութեան ենթարկել։ Դատաւորը անճարացած, պատասխանատուի հովանաւորին պիտի դիմէ և խնդրէ, որ պատասխանատուին ուղարկէ այս ինչ օրը, այս ինչ ժամին դատարան։ Եթէ հովանաւորողը զօրեղ անձնաւորութիւն է, իսկ գանկատաւորը տկար, անհնարին բան է, մի երկու տարուան ընթացքում հազիւ հնար գտնուի, պատասխանատուին ատեան քաշել, այն էլ պէտք է. որ կորցնէ գանկատը։ Իսկ եթէ գանկատաւորը ուժեղ է, հովանաւորողը իւր յատուկ պաշտօնականի հետ ուղարկում է պատասխանատուին ատեան, նախապէս խօսք առնելով դատաւորից, որ բռնութեան, ծեծի, տանջանքի կամ բռնադատութեան չպիտի ենթարկուի իւր սպասաւորը։ Դատի ընթացքում պատասխանատուն լռում է և նրան փոխարինում է հովանաւորողի ներկայացուցիչը, որը առանձին յանձնարարականով խնդրած է դատաւորից, թոյլատրել պաշտպանելու պատասխանատուին 'և օգնել, որ արդարանա հովանաւորեալը։ Յաճախ այս հովանաւորողը մի քանի զօրեղագոյն բարեկամներից էլ յանձնարարականներ է ստանում և ուղարկում դատաւորին, որ պաշտպանէ հովանաւորեալի շահերը։ Այս յանձնարարականները այնքան սովորական են, որ ոչ ոք ամօթ չի համարում պաշտպանել յանցաւորին, ոճրագործին, գողին և պարտքը ուրացողին, այլ թախանձում են աներեսաբար, որ անպատճառ օգնեն նրանց, որ չվճարեն պարտքերը, կամ ազատեն արժանի պատուհասներից։ Դատաւորը կաշկանդուած չգիտէ ինչպէս վարուի այդպիսիների հետ, կամ ի՞նչ ընթացք տա գործին։ Նա դրկւում է ոչ միայն իւր եկամուտից, այլ պատւից էլ և գործը մընում է տարիներով առանց վճռի։ Դեռ շատ հովանաւորող պահանջում են, որ գանկատաւորը ուղարկւի իրենց ատեանը,

որպէսզի իրենք քննեն ու հաշտեցնեն բողոքողին իրենց թեւարկեալի հետ։

16. Քիչ թէ շատ դատարանի և դիւանատան նմանութիւն ունեցող մի հիմնարկութիւն եթէ կա Պարսկաստանում, այդ քարգուզարաթն է, (արտաքին գործերի մինիստրի բաժանմունքները ամբողջ Պարսկաստանում կոչւում է քարգուզարաթ), որոնց նահանգական և գաւառական լիազօր գործակալները կոչւում են սերփերես։ Թուրքմանչայի վաճառականական դաշնագրի զօրութեամբ Պարսիկները պարտաւորւեցան պետութեան գլխաւոր-նահանգներում դատաստանական բարձրագոյն դիւանխանէներ հիմնարկելու, որտեղ յատուկ մատեաններում արձանագրւում, հաստատւում, պահպանւում են մուրհակների, պայմանագրերի, գրաւագրերի, կալւածագրերի պատճէնները, քննւում և վաւերացւում են վաճառականների ներկայացրած մատեանի գրքերը և իհարկէ տրւում են պատճէններ և վկայագրեր։ Վերոյիշեալ դաշնագրի զօրութեամբ այս հիմնարկութեան մէջ արձանագրւած և վաւերացւած ամէն մի փաստաթուղթ անժխտելի ապացոյց է, որը չի կարելի հերքել վկաների ցուցումով։ Այստեղ հաստատւած փաստաթղթերը վաւերացնում են նոյնպէս իւրաքանչիւր օտարականի կոնսուլատները, որոնց գործադրութիւնը անպայման պահանջում են դեսպանատները և պարտաւորեցուցիչ է նոյնպէս պարսկական պաշտօնակալութեան համար։

17. Իսլամի և քրիստոնէի, պարսկաստանի և օտարականի բոլոր գործերը քննւում և վճռւում են քարգուզարաթներում, օտարականի կոնսուլատի լիազօրի ներկայութեան։ Դատարանում թէև գործը քննում են քարգուզարաթի անդամները, կոնսուլի լիազօրի հետ, որտեղ մասնակցում են նոյնպէս Պարսկական և օտար վաճառականների ներկայացուցիչները,

բայց վերջնական որոշումն ու վճիռը տալիս է քարգուղարը։ Այս վճռին եթէ համերաշխ չէ կօնսուլատի լիազօրը, նա իւր վէտօն դնում է, վճիռը մնում է անգործադրելի, մինչև արտաքին գործերի մինիստրի դիւանատունը դեսպանատան լիազօրի ներկայութեան երկրորդ վճիռ կայացնելը, որի դէմ վճռաբեկ բողոք չի կարելի ներկայացնել, եթէ դեսպանատունը համակերպել է, համաձայնել է Պարսկական վճռի հետ։ Այս պատճառով քարգուղարները միշտ թէքւում են կօնսուլների տրամադրութեան համաձայն են որոշում կայացնում, որպէսզի իրենց վճռի դէմ չկարողանան բողոքել և քանդել տալ, դեսպանատունն էլ ստանում է համարեա իրեն ցանկացած վճիռը, եթէ կամք ունենա վճիռ ձեռք բերել։ Մանաւանդ Պարսկական պաշտօնականները անչափ տգէտ են, օրէնսդրութիւնից ոչինչ չեն հասկանում, իրենց մեծաւորների վրա վստահութիւն չունին, քանի որ ախոյեանները աւթի են սպասում, որ կօնսուլների բողոքի համաձայն դրանք պաշտօնանկ լինեն և իրենք նրանց տեղը բռնեն։ Այս նպաստաւոր պարագաները կօնսուլներն ունենալով, դարձեալ պարսիկ պաշտօնեաների խորամանկ հնարները նրանց ծուղակ է գլորում և օտարականների իրաւունքը փչացնում են, մանաւանդ շնորհիւ անընդունակ և թոյլ կօնսուլների։

18. Քարգուղարաթը կամ արտաքին գործերի մինիստրի դիւանատունը, որտեղ քննւում է, վճռւում օտարահպատակների պարսկահպատակների հետ ունեցած գանգատները, ոչ թէ դատարան—իրաւարան է, այլ մի մրցարան, ուր պարսիկ խորամանկ պաշտօնականները ամէնք ջանք գործ են դնում, որպէսզի կարողանան փչացնել օտարականների իրաւունքը—պահանջը, իսկ օտարականների կօնսուլական ներկայացուցիչները տքնում են իրենց հպատակների պահանջները պա-

ցուցել, հաստատել և ստանալ։ Այն քարգուզարը միայն կարող է երկար ժամանակ վարել իւր պաշտօնը, որը կարողանում է կօնսուլատների անդամներին սիրաշահել, խաբել, կուրացնել, սխալացնել և օտարականների գանկատները կաշկանդել, կամ փչացնել։ Եթէ կօնսուլատի անդամները իրենց կոչման բարձրութեան վրա կանգնում են, պարսիկները պարտաւորւում են բարդւած գործերը աւելի ձգձգելու համար շուտ շուտ քարգուզարները, կամ սէրփէրէստները փոփոխելու, որ գոնէ ժամանակ շահին և ապագա պատեհութի ըսպասեն, որպէսզի պարագաներից կարողանան օգտւել։ Նենգամիտ քարգուզարները դատաստանական գործերը այնքան ձգձգել են, որ այսօր Ատրպատականի Ռուսական կօնսուլատում վեց-եօթ հարիւր գործ է կուտակւել մի քանի միլիոն պահանջի, որոնց վճռահատութիւնը պարսիկների նենգամիտ պաշտօնակալները և կօնսուլատի ձրիակեր չինովնիկները թողել են Մէհթիի վերադարձին, որ գա ու վճռէ։

Կան այնպիսի գործեր, որ 1870 թւականից մինչև այսօր հերթի են սպասում, բայց ո՛չ քննւում են և ո՛չ էլ ուշադրութեան արժանանում։ Խորամանկ քարգուզարները կօնսուլներին հաճոյանալու համար, նրանց խառն պահանջած գործերի վճիռը խոստանում են արագացնել և վերջացնել այն պայմանով, որ միւս գործերը անժամանակ ետաձգւին, ձգձգւին և առաջ չգան մինչև իրենց պաշտօնանկութիւնը։ Այսպէսով նոյն գործերը, որոնց տէրերը հաճելի են եղել կօնսուլատների ծառայողներին մի քանի ամսում վճռւել, պրծել և գոհացում տւել են, իսկ այն գործերը, որոնց տէրերի դէմքերը անհաճո են եղել կօնսուլատի ծառայողներին, ձգձգւել, ետ են մնացել 20—30 տարի և այժմ էլ հնացած գործերի դասը գրաւած արժանի չեն համարւում քննու-

թեան առնելու։ Պարսկաստանում ժամանց (десятилѣтная давность) չկա։

19. Պարսկահպատակների օտարականների վրա ունեցած պահանջները շատ շուտ են վճռւում և գործադրւում։ Կօնսուլները և ոչ իսկ մի շաբաթ ժամանակ կտան իրենց հպատակներին պարտաւորութիւնները վճարելու, այնինչ օտարականների վճռւած պահանջների գանձումը տաս—քսան տարիներ են տևում և յուսահատութիւն պատճառելով մոռացութեան են տրւում։ Քարգուզարները իրենց այս տգեղ վարմունքի համար պարծենում են իւրայինների շրջանում իրենց դիպլոմատիկական նենգամտութիւնով և պոլիտիկական խորամանկ ընդունակութիւնները ջատագովելով։ Օտարականի գոյքը յափշտակելը, պահանջքը փչացնելը, կօնսուլներին խաբելով գործերը ձգձգելը մի վսեմ աստիճանի ղոչաղութիւն է քարգուզարի համար, ինչպէս սարի գլխի աւազակը կողոպտում է ճանապարհորդին։ Պէտք է խոստովանել, որ ընդհանրապէս այս խորամանկ ու ներքնագործ քարգուզարները ծայրահեղ անկիրթ, տգէտ ու ապիկար են։ Եթէ կօնսուլներից մէկը ցանկա որևէ քարգուզարի վրա ճնշում գործ դնել և կամ անկեղծ ցանկութիւն ունենա խճողւած գործերը վճռել տալ և պահանջները գանձել, նա կարող է նպատակին հասնել և չարաչար պատժել տալ քարգուզարներին։ Այսպիսի մի ինքնաբաւական քարգուզար, որ իւրայինների շրջանում պարծենում էր, թէ կօնսուլին ստրկացրել և իր զաւակների սափրիչի պաշտօնին է (դալլաքի) արժանացրել (որովհետև կօնսուլը երբեմն երբեմն խուզում էր քարգուզարի երեխաների մազերը), երբ թէլէֆօնի ձայնն էր լսում, թէ կօնսուլն ուզում է նրան այցելել, ամբողջ ութ-տաս ժամ հոգեկան խաղաղութիւնը կորցրած մտածում էր, թէ արդեօք էլի ինչ

նոր հրամաններ պիտի արձակէր կոնսուլը։ Այս մտորանքից այնքան էր բորբոքւում, որ մոռանում էր խօսքն ու գրութիւնը և բարկութիւնից եղունգները կրծում էր։

20. Սրանից երեք տարի առաջ (1904 թ.) Ատրպատականի Ուրմի նահանգում Սէիդները ոխակալելով, ինչ որ Ամերիկացի քարոզչի դէմ, նրան սպանել տւին Սալմաստի ճանապարհին։ Անգլիական կոնսուլը Ամերիկայի Միացեալ նահանգների լիազօրի պաշտօնով խիստ քննութիւն բացեց և ապացուցեց որ այդ ոճիրը կատարել է Սէիդների ոխակալութեամբ։ Ուրմիի նահանգապետը թոյլ էր հետեւում գործին, իսկ Ատրպատականի փիշիքարը հովանաւորում էր Սէիդներին, որոնց պատժելու հակամէտ էր կառավարութիւնը։ Քարգուզարը ուզում էր խաղացնել կոնսուլատին և գործը ձգձգել։ Բայց Անգլիական կոնսուլը Պարսիկ պաշտօնականների ձեռքը խաղալիք և ծաղրի առարկա դառնալու երբէք չէր զիջել, այնպիսի դիրք բռնեց, որ Թէհրանի դեսպանատունը խիստ միջոցների դիմեց, Սէիդներին կալանաւորել տւեց Ճահնշահի յատուկ հեռագրներով, Թաւրիզ առանձին հրովարտակով պաշտօնակալ եկաւ, Դահաժառանգից և Ուրմիայի նահանգապետից յիսուն հազար թուման (90,000 ռուբ.) տուգանք առաւ յօգուտ սպանւածի ընտանիքին։ Դեռ սրանով չբաւականացան, որոշեալ օրը պաշտօնակալը դրամը բանկին հասցրած չլինելու պատճառով, Պարսկական ծոցի Բուշիր նաւահանգիստը զրահակիր էին ուղարկել, որի տրտակարգ ծախսերն էլ ստացան Պարսկական կառավարութիւնից։ Ապա ստիպեցին, որ չարագործին Թէհրան ուղարկեն և ամժանակիր աշխատութեան դատապարտեն։

21. Այս թւականին Ատրպատականի նահանգներում եօթը ռուսահպատակ վաճառականներ սպանեցին Մաքանդի

ճանապարհին, Ղարադաղում. Խոյում և Ուրմի քաղաքի հրապարակում ցերեկով: Այս սպանութիւնների մասին ռուսական կոնսուլը քննութիւններ բացանել տւեց և պարսիկներից պահանջեց պատժել չարագործներին և բաւարարել նրանց ընտանիքին։ Սպանուածները բոլորն էլ ոխակալութեան էին զոհւած և չարագործները համարձակ ման էին գալիս։ Պարսիկ նենգամիտ պաշտօնականները ոչ միայն պաշտպանեցին չարագործներին, ոչ միայն ոսկէ գրօշի բաւարարութիւն չտւին սպանւածների ընտանիքին, այլ համարձակ և յանդգնաբար ծաղրում էին Ռուսական կոնսուլատի պաշտօնականներին։ Այն կոնսուլատը որ վաթսուն տարի ակնածութիւն էր վայելած, շնորհիւ մեղկ ու ապիկար պաշտօնականների, արհամարհանքի ու ծաղրի էր մատնւել: Սարըպատականի քարգուզարը, որ առերես կեղծ բարեկամութիւն էր պահպանում կոնսուլատի չինովնիկների հետ, անվերջ հըրաւէրներ էր տալիս, կերուխումի ընկերակցութիւններ էր կազմում, պարսիկ խաների և վաճառականների շրջանում պարծենում էր, թէ ինքը իւր նուրբ փոլիթիքայով մի մի բաժակ վօդկայով բաւականացրեց Ռուս չինովնիկներին և եօթը սպանութեան գործի համար չթողեց, որ պարսիկները եօթը շահի տուգանք վճարեն: Փոխանակ իւր նման խորամիտ և կեղծաւոր պոլիտիկոսներին յանձնելու երկրի արտաքին գործերի մինիստրի պորտֆէօյը—սադրը, կառավարութիւնը սորտաբույծներին է թողել պետութեան քաղաքականութեան ղեկը, որոնք մի մուրտարի արիւնի համար յիսուն հազար թուման փող դուրս տւին մեր հարստութիւնից։ Այսպիսի խօսքեր այնքան էր կրկնել, որ Թաւրիզի թէյարաններում Մէշէդիներն էլ ջատագովում էին քարգուզարին։

22. Ինչպէս ամեն վարիչ, քարգուզարներն էլ տարեկան

որոշ վճարով են գնում իրենց պաշտոնը։ Ատրպականի քարգուզարները արտաքին գործերի մինիստրին տարեկան 5—6 հազար թուման հարկ են վճարում իրենց պաշտոնը ձեռք գցելու համար, բացի անուղղակի նուէրներից, որը ուղարկում են ինչպէս մինիստրին, նրա օգնականներին, նոյնպէս սադրազամին ու պաշտօնակիցներին։ Մեծամեծ գործեր կարգաւորելիս դարձեալ բաժին են հասցնում ուղղակի գործից։ Պետական գանձարանից քարգուզարներին էլ ռոճիկ չեն տալիս, միայն Ատրպատականի քարգուզարը վեց հարիւր թուման ըստանում է, որ ճաշ տա պաշտօնականներին և գրագիրներին։ Քարգուզարը վճարում է դիւանատան քըէհ մօտաւորապէս հազար թուման։ Ծառաներին, խոհանոցին, ախոռապաններին, կառապաններին, ձիերին և սրանց կերը առնուազը հինգ հազար թուման։ Հրաւէրներ դիպլոմատիքական շրջանին, նուէրներ, ռէիզներին, ֆարրաշներին և զանազան սպասաւորներին տարեկան ոչ պակաս երեք հազար թուման։ Ընտանեկան, զաւակների կրթութեան և ուրիշ ծախսերի հետ միասին քարգուզարը տարեկան ելք ունի առնուազը քսան հազար թուման (մօտ 35,000 րուբլի), բացի այն գաղտնի և արտաքո կարգի փէշքեշները, որ նա վճարում է մեծամեծներին Թաւրիզում, Թէհրանում, Քէրբէլայում, Մէշէդում, որպէսզի դիրքը բարձրացնէ, յաջողութիւնը պահպանէ և անդունդը չգլորուի։ Այս մութը վճարումները կարելի է ենթադրել, որ սովորականից պակաս չէ, որոնք խնայողութեամբ կառավարողը չարաչար կսխալուի, անարինակ խաների դասը կանցնի։

23. Յայտնի բան է այս բոլոր ծախսերը վճարում է քարգուզարը, որպէսզի տարեկան մի զգալի շահ ստանա, նա ձրի չի ծառայում, հայրենասիրութիւնը չի դրդում նրան զոհողութիւններ կատարելու։ Մուտքի հաշիւը այնքան գաղտնի է,

որ դրա մասին դրական բան չի կարելի ասել, բայց ինչ նըկատելի է, ինչ կարելի է ականջից ականջ լսել առանց փաստերի, նոյնն էլ վերապահութեամբ կարելի է ընթերցողին պատմել, որոշ գաղափար կազմելու համար։ Ատրպատականի քարգուզարն է նշանակում նահանգների սէրփէրէստներին. Արտաբիլ, Սալմաստ—Խոյ, Ուրմի, Մարաղա, Սօուչ-բուլաղ և Սարդաշտ։ Այս սէրփէրէստները ստացած պաշտօնների համար կանխավճար տալիս են ամէն տարի—փէշքէաշի ձևով մօտաւորապէս 3—4 հազար թուման և ամսավճարով տարւա ընթացքում 7—8 հազար թուման։ Ուրեմն Ատրպատականի քարգուզարը անխախտ եկամուտ ունի 10—12 հազար թուման։ Արտաքո կարգի դատաստանական գործերից կամ ոճրագործներից քարգուզարներին մաս հասցնում են սէրփէրէստները տարւա ընթացքում ոչ պակաս 3—5 հազար թուման։

24. Թաւրիզում քննւած գանգատներից քարգուզարն ըստանում է տասը տոկոս պարսկահպատակներից և հինգ տոկոս օտարականներին վճարւած գումարներից։ Եթէ պարսկահպատակը պարտաւորւում է վճարել օտարականին որևէ գումար, կօնսուլատից այդ գումարի 5% յանձնւում է քարգուզարին դատաստանական հարկ, եթէ օտարականից յօգուտ պարսկահպատակի օգտին փող է գանձւում, քարգուզարն ըստանում է 10%։ Եթէ քարգուզարը կարողանում է պարսկահպատակին ազատել օտարականին վճարելիք պարտաւորութիւնից, նա կանխավճար ստանում է 10% և գործի աւարտից յետոյ կրկին 10%։ Պարսկահպատակները որպէսզի ազատւին օտարականներին վճարելիք պարտքերից, որոնք յաճախ տասը տոկոս էլ գործավարութեան ընթացքում են վըճարում, որպէսզի կամ ձգձգէ գործը և կամ իսպառ ազատէ։ Եթէ ի նկատի առնենք, որ անչափ մեծ գանգատներ է մըտ-

նում քարգուզարի դիւանատունը, այդ տեղ տարւա ընթացքում առնւազը հարիւր հազար թումանի գործ է վճռւում, այն ժամանակ հնարաւոր կլինի ըմբռնել, թէ ի՛նչ մեծ գումար է մտնում քարգուզարի գրպանը։

25. Ճշմարիտ է, որ շահնշահի միահեծան իշխանութեան տակ քարգուզարն էլ իւր դիւանատան հասոյթի միահեծան տէրն է, բայց հիմնարկութեան միւս ծառայողներն էլ օդով չեն կերակրւում, կամ «միւֆթա» չեն աշխատում։ Քարգուզարաթի մէջ կան 3—4 ծառայողներ, որոնք տարեկան 2—3 հազար թումանի բիւջէ ունեն, քանի չափ գրագիրներն էլ տարեկան ամէն մէկը հինգ հարիւր թումանով հազիւ ապրին։ Յայտնի բան է այս գումարն էլ դուրս է գալիս գանգատաւորների և պատասխանատուների գրպանից։ Քարգուզարը պահում է տասնից աւելի փիշխիդմէթներ (սենեկապան), որոնք յաճախ զանազան գաւառներ են գնում գործով, կամ պատարանից խոյս տւողներին բռնելու, բերելու, կամ վճիռները գործադրելու։ Սրանք իրենց եկամուտով ո՛չ միայն ընտանիք են կերակրում, այլ քարգուզարին և պաշտօնականներին բաժին են տալիս, որ իրենց յանձնւի այդ պաշտօնները։ Տասնից աւելի մանկլաւիկ է պահում, որոնք դիւանատան ծառայութիւններն են կատարում, թէյ, սուրճ, կալիոն են մատակարարում և խուզարկում են այցելուների գրպանները։ Սրանց շշահողը ո՛չ նստելու տեղ կգտնի դիւանատանը, ո՛չ էլ մի բաժակ թէյի կարժանանա հակառակորդի ներկայութեանը։ Այս մասին թուրքերն այնքա՛ն բծախնդիր և մեծասիրտ են, այսպիսի մի արհամարհանք նրանց համար հայհոյանքից ծանր է, նախատինքից նւաստացուցիչ։ Հապա ֆարրաշները, դռնապանները, պարտիզպանները, մատակարարը, դայֆաջին. գանկատաւորը շւարում է, չգիտէ ո՛ր մէկին վճա-

րէ, որին յիշէ։ Խնդրում են ամեն կողմից, պահանջում են աներեսաբար, կորզում են բռնութեան հարուածների տակ և մերկացնում են անողորմաբար։ Վա՜յ պարսկահպատակին, որ ընկնում է սրանց ճանկը և թշուառ է այն ողորմելին, որ հովանաւոր չունի։ Պարսկահպատակից վրէժ լուծելու ամենագլխաւոր միջոցը նրան քարգուզարի փարրաշ-բաշուն յանձնելն է, ոչ մի խոհարար չի կարող այնպէս մաքուր փետրել ճանկում բռնած մորթած սագին, ինչպէս փարրաշները փետրում են կենդանի մարդուն։

26. Թէև ձգւում է—երկարում է յօդւածը, բայց միայն իրական օրինակները կարող են աւելի պարզ ներկայացնել կենդանի պատկերը, ուստի աւելորդ չենք համարում երեք օրինակ ևս պատմել։

ա. Սրանից հինգ տարի առաջ Կ. Պօլսեցի մի վաճառականի գանգատը մտաւ քարգուզարաթ, որը Թաւրիզեցի մի մոլլայի ժառանգներից մանուֆակտուրային ապրանքից մնացորդ հաշւին էր պահանջում շուրջ տասը հազար լիրա, 90,000 րուբլի։ Քարգուզարը սկսեց տրորել մոլլայի ժառանգներին, սպառնալ և գումարը պահանջել։ Նրանք ուրանում էին պարտքը, ուրանում էին ստացած ապրանքները և ունեցած գրաւոր յարաբերութիւնները։ Մոլլայի ժառանգներից դժուար էր փող պոկել, ուստի առաջին չորս հինգ ժողովներում քարգուզարի մօտ հաստատւեց, թէ այդ նամակները, ապրանքի թղթերը, մաքսային ստացականները, կոմիսիոներական հրամանագրերը բոլորը պատկանում էին մոլլայի առևտրական տան և անպայման ապրանքները մտել էին նրանց վաճառատունը։ Այս հաստատութիւնները վաւերանալուց յետո, քարգուզարը երբ կարողացաւ պայմանաւորւել մոլլայի ժառանգների հետ, ստացաւ կանխավճար 10%-ը, ամ-

բողջ երեք տարի կոնսուլատին Թախանձեց, խնդրեց գործը հաշտութեամբ վերջացնելու։ Ո՛չ սպառնալիք, ո՛չ բողոք, ո՛չ էլ խնդիրք չէր ուզում լսել քարգուզարը. աղերսում էր կոնսուլից—խնդիրը հաշտութեամբ վերջացնել եւ երկու հազար լիրայով հաշտուել։ Փոխանակ կոնսուլը ստիպելու, որ մոլլայի ժառանգները 10 հազար լիրան հինգ տարուան տոկոսով վճարեն, նա էլ մոլորեց քարգուզարի նենգամիտ քարոզներով և սկսեց պահանջատէրին յորդորել, ստիպել. որ համաձայնի երկու հազար լիրայով։ Առարկում էր, թէ մոլլայի ժառանգներին չի կարող կառավարութիւնը ճնշել, թէ նրանք ոչինչ չունեն, իսկ անշարժ կալքերը ծախած ու բաժանած են ժառանգները, թէ գանգատը ապացուցած չէ և ուրիշ սպառնալիքներ։ Քարգուզարը տարաւ յաղթանակը. վաճառատունը կորցրեց մօտ 7500 լիրա դրամագլխից, 5 հազար լիրա տոկոսը։ Իսկ քարգուզարը, ինչպէս պատմում էր մոլլայի ժառանգների հաւատարմատար ազգականը, այս գործից կերել էր մօտ երեք հազար լիրա, բացի դիւանատան պաշտօնակալների բաժնից։

բ. 1882 Թւականից մինչև 1893 Թւականը ռուսահպատակ Տէր-Ղազարեանց ժառանգների պահանջը, 7000 Թուման գանձելու համար, Սուչ-բուլաղ նահանգի Հաջի-Հասան գիւղը քարգուզարից տանելու հրաւիրակ պաշտօնեաներ էին ուղարկել, որ գիւղի տիրոջ բռնի Թաւրիզ բերեն, նրա պարտքը վերջացնելու համար։ Գիւղատէր քուրդ աղան դիւանատանը հաստատուած մուրհակով պարտք էր վերցրել և գիւղերը գրաւ դրել, ոչ մի փաստով ազատելու հնար չկար, անհրաժեշտ էր վճարել։ Ամէն մի հրաւիրակ գիւղ հասնելու պէս, սկսում էր տանջել պարտապանին, իբր սովորական վարձը առնելուց յետո. ստիպել, որ անմիջապէս ճանապարհ

ընկնի դէպի Թաւրիզ։ Քուրդը համոզուած էր, որ այնտեղ քարգուզարը նրան չպիտի կարողանար պաշտպանել, անճարացած բանտից ու տանջանքից ազատուելու համար կալուածքը պիտի ծախէր։ Ուստի ազերսում էր հրաւիրակին իրեն օգնել։ Տասը տարի շարունակ չորս գիւղի եկամուտը քուրդ ազան ուտեցնում էր հրաւիրակի ձեռքով քարգուզարին, որպէսզի մի կերպ գործը ձգձգեն և նրան պարտքից ազատեն։ Գիւղից պաշտօնականը տարեկան ստանում էր մօտ հազար թուման, որի կէսից աւելին ուղարկում էր մեծաւորին։ Մեծաւորի հետ ստացած և բաժանած եկամուտի մասին մանաւոր թղթակցութիւն էր պահում պաշտօնեան, իսկ պաշտօնապէս գրում էր, թէ գիւղատէրը փախել է Մանդուր կամ Գուրգի քուրդ լեռնականների մէջ, սպասում է վերադարձին, կամ մարդիկ է ուղարկել, որ նրան համոզեն, բերեն և շուտով կվերադառնա պարտապանի հետ։ Քարգուզարը այս թղթերով խաբում էր կոնսուլին և ձգձգում գործը։ Վերջապէս 1893 թ. գահաժառանգից պաշտօնական ուղարկեց, որ անպայման գտնի ու բերէ քուրդին։ Արդէն քուրդը յուսահատուել էր տասը տարուան քարգուզարի և նրա պաշտօնականի խաբէութիւններից, զրկուել էր տասներկու տարուան եկամուտից, առանց բան շահելու, իսկ գահաժառանգի պաշտօնականից ահաբեկ, իսկապէս փախել էր անկուսպ լեռնականների մէջ։ Վերջապէս վստահելով իմ հրաւիրական նամակին, ուրիշ պարտապանների հետ կայացրածս գիջող համաձայնութիւններից խրախուսուած, եկաւ ինձ մօտ գործը խաղաղութեամբ վերջացնելու։ Առաջարկեցի կալուածքի կէս բաժինը թողնել պահանջատիրոջ իշխանութեան տակ քառասուն տարի, մինչև պարտքի տոկոսիքով վճարուելը և բաւականանալ միւս կիսով. առանց զրկելու հայրենի ժա-

անզգուշութիւնից։ Համաձայն տրակտատի պիտի 12% վճարէ պարտապանը, բայց ես միադլուխ 6% հաշուեցի, պարտքը դարձաւ մօտ 16,000 թուման, որը 6%-ով տարեկան մօտ հազար թուման շահ պիտի տար։ Իսկ կալքը որքան լաւ բարեկարգուէր, տարեկան հազիւ 1500 թուման բերէր, այն էլ Պարսկաստանում։ Քուրդը չգիտէր քանի տարուց ետեւ թողնել կէս կալքը պարտատիրոջ իշխանութեան տակ, ուստի գնաց, մտաւ միւջթէհիդ Ջաւադ աղայի տունը, ապաստանեց։ Իսկ քարգուզարը չէր ցանկանում կալքը քառասուն տարով թողնել օտարի ձեռքը, ստիպում էր ծախել կէսը և պարտքը վճարել։

Ամբողջ երկու տարի տանջուելուց յետոյ, քուրդը ծախեց կալուածքի կէսը տասն հազար թումանի, որ պարտքից ազատուի։ Քարգուզարը գրամները իր իշխանութեան տակն առնելուց յետոյ, սկսեց կոնսուլատին թախանձել, որ ինձ վերա ճնշում գործ դնեն և գործը վերջացնեն չորս հազար թումանի: Երբ ես մերժեցի կոնսուլի և դեսպանատան առաջարկները, քարգուզարը անճարացած բարձրացրեց առաջարկը հինգ և վերջապէս վեց հազարի։ Ես ժխտում էին ամէն առաջարկ, պահանջում էի 15 հազար։ Ցանկարծ քարգուզարը պաշտօնանկ եղաւ, քիչ էր մնում այդ գումարը ամբողջապէս կուլ տա, ուստի քուրդը և կալուածքի կէսի գնողը դարձեալ ինձ դիմեցին և ես վերջացրի 7750 թումանով, որը կոնսուլատ մտցրին, ազատեցին գրաւականը, իսկ քարգուզարը կերաւ աւելի 2250 թումանը։ Եթէ մանրամասն հաշուենք, տասնեչորս տարուան ընթացքում քարգուզարն ու արքանեակները քրդից աւելի քան 15 հազար թուման էին կերել, բացի նրան տուած տանջանքները։ Գործն այնտեղ հասաւ, որ քուրդը կալուածքի երեք քառորդից զրկուեց և այսօր ապրում

է մի քառորդում։

գ. 1900 Թւականին ամառը մի առաւօտ վաղ գնացել էի քարգուզարի մօտ, որը բաղնիս էր գնացել և ես պարտաւորւած էի գիւանատանը սպասել մինչև վերադարձը։ Ամբողջ գիւանատունը բռնւած էր ինչպէս ծառայողներից, նոյնպէս և բողոքողներից։ Քարգուզարը ներս մտաւ պաշտօնատան պարտէզը առաջին գոռում գոչումով։ Ուշքս գրաւեց նրա անտեղի աղաղակները և սկսեցի դիտել լուսամուտից ու լսել։ Նա անվերջ գոռում էր.

—Ո՞ւր է այդ Ղարադաղցին—Քէլվանցին, հայը համարձակւել իսլամի իմամզադէներին (սէիդներին) ծեծել. բերէք, շուտ բերէք։ Գաւթում կանգնած, բերել տւեց ճիպոտները, առաջ եկան դահիճները և դուրս բերին ինձ ծանօթ Տէր-Գրիգորեանցին, որը յայտնի արտահանութեան տուն ունէր Թաւրիզում և պառկացրին, ֆալախկա դրին։ Իսկոյն տեղից թռա, մինչև սանդուխներից իջնելս և գաւիթ հասնելս, արդէն 4—5 հարւած հասցրին Տէր-Գրիգորեանցի ոտքերին։ Իսկոյն առաջ գնացի, մօտեցա և խնդրեցի քարգուզարից, որ ինձ բաշխէ յանցաւորին։

—Դուք մեր ներքին գործերին մէջ միջամտիլ, ասաց զայրացած քարգուզարը, սա սէիդի է ծեծել։

—Ես ոչ թէ միջամտում, այլ խնդրում եմ, ասացի, որ վաճառականի հետ այդպէս կոպիտ չվարւէք, դրանից ձեզ կարող է վնաս գալ,

Քարգուզարը զայրացած հրամայեց շարունակել ծեծը, բայց օգնականը ականջից ինչ որ փսփսաց և արձակեցին։ Իսկոյն Տէր-Գրիգորեանը բողոք ներկայացրեց Նիզամի-Սալթանէ կառավարչապետին և Գահաժառանգ իշխանին։ Քարգուզարը երկիւղից ուրացաւ, որ ծեծել է տւել Տէր-Գրիգոր-

եանցին և ինձ մօտ երեք անգամ օրդուն, անեբորդուն և օգնականին խնդրանքի էր ուղարկել, որ ես ցուցում չտամ։ Գործը մեծացաւ, Թէհրանից Սադր-Ազամը և արտաքին գործերի մինիստրը ստիպեցին, որ քարգուզարը գնա Տէր-Գրիգորեանցի տունը ներողութիւն խնդրէ և սիրտը շահի։ Այդպէս էլ եղաւ. դեռ մի թազա շալ էլ նւէր տւեց, որ գործը հաշտութեամբ վերջացաւ։ Իսկ այսպիսի մի վճիռ ձեռք բերելու համար, ամբողջ մի տարի խնդրագրեր տւեցաւ և մօտ հազար թուման ծախսի տակ ընկաւ Տէր-Գրիգորեանը, որը ոչ միայն Սէիդի չէր ծեծել, այլ Սէիդի երեսն էլ կեանքում չէր տեսել։

27. Քարգուզարից պակաս չեն կեղեքում սէրփէրէստանները գաւառներում։ Վերջին տասնեհինգ տարւա ընթացքում սէրփէրէստները, օգտւելով հայկական հայցունների խմբումներից, տարէցտարի քարգուզարական տարեկան վճարը-փէշքեաշը աւելացնելով, հինգ հարիւր թումանից հասցրին հինգ հազար թումանի։ Սալմաստի սէրփէրէստը բացի այս հինգ հազար թումանից, կանխավճար է տալիս քարգուզարին և փիշխքարին հրովարտակի համար, մօտ մի հազար թուման։ Որպէսզի բարձր իշխանութեան հասցրած բողոքների պատճառով շուտով պաշտօնանկ չդառնա, նա փիշխքարի, քարգուզարի և կօնսուլատների աւագ միրզաներին (քարտուղար) ամսավճար է տալիս, իւրաքանչիւրին ոչ պակաս 25 թուման, բոլորին տարեկան 1200 թուման։ Սէրփէրստը իւր անձնական ծախսի, ընտանիքի ապրուստ տարեկան վճարում է առնւազը երեք հազար թուման։ Սէրփէրէստի քանի չափ գրագիր, սպասաւոր ձիաւոր և ֆարրաշները առնւազն ամէն մէկը տարեկան 3—500 թուման, բոլորը միասին ութ հազար թուման պոկում են թշւառ Սալմաստեցուց, որոնք

բոլոր այս ծախսերը, մօտաւորապէս 18 հազար թուման վճարում են։ Այս պատկառելի գումարը ահա տասնըհինգ տարի է, որ վճարում է Սալմաստեցին, որի ծանրութիւնից ընկճուած շատերը գաղթում, փախչում են իրենց ծննդավայրից։ Դեռ չեմ յիշում այն ապօրինութիւնների, առևանգումների, պղծութիւնների մասին Սէրփէրէստի և քարգուզարի ստացած արտաքոյ կարգի կաշառները, փէշքիաշները, որոնք կործանում են թշուառ շինականին, որը տարեկան դարձեալ 4-5 հազար թումանի են հանում։ Այս էլ պիտի իմանալ, որ Սալմաստում 1800 տուն հայ կայ, սրա կիսից պակաս էլ Ասորի և այս 20 հազար թումանը վճարում են մեծ մասամբ չարատանջ հայերը։

28. Ընդհանրապէս քարգուզարաթում էլ գործեր չի վըճռւում, որովհետև վճռից խոյս է տալիս քարգուզարը, քանի որ վճիռը յանկարծ կարող է բողոքի առարկա դառնալ կօնսուլատի ներկայացուչի համար, որից կարող են ընդհարուիլ։ Այս պատճառով գործերը քննում են, փաստերը լսում են, դոկումէնտները ուսումնասիրում են և ապա փոխադարձ զիջողութիւններ անել տալով, հաշտութեան վճիռ են կայացնում։ Միշտ այնպիսի որոշում է կայանում, որ էլ ոչ մի կողմը չկարողանա բողոքել։ Իսկ քարգուզարը ընդհանրապէս աշխատում է գործերը որևէ պատրւակով ընդհատել, որպէս զի միջոց ունենա պարսկահպատակի հետ առանձին տեսնուել, պայմանաւորուել և սովորացնել խօսելիքն ու բռնելիք ընթացքը։ Դատավարութեան ժամանակ այնքան կեղծել, փոխել, ծամռել են վճիռների արձագրութիւնները, որ այժմ կօնսուլների միրզաներն են (քարտուղար պարսիկ) գրում դատավարութեան արձանագրութիւնը, որոնց հետ զուգընթաց նստած քարգուզարի միրզան բառ առ բառ արտագը

րում է կոնսուլի միրզայի ձեռագրից։ Դատը քննում ու արձանագրում են կողմերի ներկայութեան, որոնք ներկայացնում են իրենց փաստերը գրաւոր։ Թուրքմանչայի դաշնագրի զօրութեամբ օտարահպատակների գործերի քննութեան ժամանակ դոկումէնտների վրա են հաստատելու ամէն բան, բերանացի վկայութիւն չեն ընդունում։

29. Քարգուզարի պաշտօնին ու գիրքին թէև շատ խոժոռ աչքով են նայում Ատրպատականի փիշխեարը, նահանգապետները, մանաւանդ միւջթէհիդները, նախանձում են նրա եկամուտի, մանաւանդ գիրքի վրա, բայց սրանք էլ նըրանից պակաս չեն կեղեքում իրենց ստորադրեալ թշուառ ժողովուրդին։ Ամէն մի քրէական գործից աշխատում են օգտուել հաքիմները, փիշխեարը և միւջթէհիդները, որոնք աքնում են իրար ձեռքից խլել գործերը և իրենց ատեաններում դատել։ Եթէ քարգուզարը անկարող է, գիրքը բարձր պահել չգիտէ, փիշխեարը, միւջթէհիդները և նահանգապետները միջամտում են քրիստոնեաների. նոյն իսկ օտարականների գործերին և տուժի մասը յափշտակում են քարգուզարի ձեռներից։ Եթէ քարգուզարը զօրեղ է, մանաւանդ եթէ թիկունք ունի գահաժառանգից ու մինիստր նախագահից, ընդունուած է կոնսուլների շրջանում, այս դէպքում նա չէզոքացնում է բոլորին, մենակ իւրացնում է հասոյթը։ Բայց և այնպէս գանգատաւորները եթէ ճնշւում են, դիմում են միւսներին, այս դէպքում նրանից էլ բաժ է հանում ընդհանուր աւարից։ Գործերը իրենց ատեանները քաշելու, կամ ընթացքին միջամտելու օգտուելու համար մեծ կռիւ կա փիշխեարի, միւջթէհիդների և քարգուզարի մէջ, այնպէս որ հեռատես քարգուզարը միշտ շահում է բոլորին, մանաւանդ միւջթէհիդների ախոյեանների։ Խոյի հաքիմը Հաջի-Սաադ-խե-

Միւլքը միջամտել էր Սալմաստի Սէրփէրէստի իշխանութեան տակ ապրող Գանձակեցի Թուրքերի խնդրին, որի ֆարրաշները կողոպտել էին Գանձակեցիների (ռուսահպատակ) տունը։ Որպէսզի ընդմիշտ նահանգապետներին չէզոքացնի, Ատրպատականի քարգուզարը միայա կոնսուլի հետ, պնդեց և 2—3 հազար Թուման փող առաւ Հաջի-Սաադ-իւլ-Միւլքից յօգուտ Գանձակեցիների, որով քարգուզարը իւր իշխանութեան գերակշռութիւնը ցոյց տուեց Ատրպատականի բոլոր պաշտօնեաներին, որից սկսան ակնածել և հեռու փախչել։

30. Որքան գործ որ մանի քարգուզարի. կամ սէրփէրէստի դիւանատունը, քառասուն անգամ աւելի գործ է ընկնում փիշիքարի և նահանգապետների ձանկը, քանի որ ներքին միւլիմանների գործերին քարգուզարները միջամտելու արտօնութիւն չունին։ Փիշիքարի և նահանգապետների դիւանատուն մտած գործերից 90 տոկոսը կալուածական խնդիր է, մնացեալը քրէական և սնանկութեան։ Քրէական գործերը բոլորն էլ վճռահատում են նահանգապետները և փիշիքարը իրենց հայեցողութեամբ, պատիժները անգութ են, տուգանքները անսահման։ Ինչպէս փիշիքարը, նոյնպէս նահանգապետները լիազօր են չարագործներին կախելու, Թնդանօթի բերան դնելու, մորթելու, գնդակահար անելու կամ անդամահատութեան ենթարկելու, դատապարտածի ինչքը գրաւելով։ Պէտք է խոստովանած, որ իրենց իշխանութիւնը չարաչար չեն գործադրում ադմինիստրատորները, աւելի ձըգտում են կողոպտել չարագործի ընտանիքին, ազգականներին, փրկանքով մահուան պատժից ազատել նրան։ Պատիժների չափը, սահմանը, տեսակը որոշ օրէնքներով չի սահմանուած, կախում ունի նահանգապետի կամ փիշիքարի կամքից։ Թէև սրանք պատիժը գործադրելուց առաջ երբեմն դիմում են չէ-

րիաթի վճռին, միւջթէհիդներից օրինական որոշումն են ըստանում, բայց այս որոշումը այնքան էլ պարտաւորեցուցիչ չէ, քանի որ նահանգապետների կամքից է կախուած իրենց ցանկացած գոյնը տալ սրան։ Երբեմն պոռնկութեան, գողութեան, աւազակութեան համար մի դատարկապորտի մորթել, սպանել են տալիս, երբեմն էլ արիւնարբու հրէշներին իրենց կատարած մի քանի արիւնահեղութիւնների համար երեք-չորս տարուան բանտարկութեամբ ապաշխարեցնում և բաց են թողնում։ Ամէնից շատ մահուան դատապարտում են այն աւազակներին, կամ էլ—ալաններին (համայնական առաջնորդ) որոնք ապստամբում են, իշխանութեան դէմ զէնք են բարձրացնում։ Այժ, հովանաւոր, մանաւանդ փող ունեցող ոճրագործը ամէն տեսակ պատժից, պատասխանատուութիւնից կարող է ազատուել, բաւականացնելով դատաւորի ընչաքաղցութիւնը։

31. Ամէնից կնճռոտ գործերը Պարսկաստանում կալուածական վէճերն են, որոնց գանգատները երբեմն մի քանի տասնեակ, նոյն իսկ դար է տևում։ Թէև ըստ շէրիաթի շիան իրաւունք չունի յափշտակած կալուածքի եկամուտը ուտելու, իւրացնելու, որևէ խարէութեամբ, բռնի և կեղծումներով խլուած կալքի տիրոջ աղօթքն անընդունելի է, ծոմը ապօրինի, կինը թողնուած, ծնուած զաւակները պոռնկորդի, ինքն էլ իսլամի համայնքից արտաքսուած է համարւում, զրկուել է ինչպէս այս, նոյնպէս յաւիտենականութեան մէջ միւսլիմանների համար պատրաստուած երանութիւններից. բայց ամբողջ Պարսկաստանում չի կարելի գտնել որևէ կալք քաղաքներում թէ գիւղերում, որի տէրը այդ ձեռք բերած լինի արդար ճանապարհով կամ տիրոջ յօժար կամքով, բոլորն էլ յափշտակութիւններ են իրարից խլուած։ Անցեալ դարերում մեծ կալուա-

ծաաէրները իրենց յափշտակած կալքերը ուրիշի կամայական յափշտակութիւններից ազատելու համար, «Էվլադի-Վաքֆ»-ին էին յատկացրել, որին օրէնքի համաձայն չի կարող մօտենալ որևէ իշխանութիւն։ «Էվլադի-Վաքֆ» կոչւում են այն կալուածները, որոնց տէրերը կտակով իրենց կալուածքի հասոյթի որևէ մասը յատկացնում են որոշ մզկիթների առաջնորդ ախունդների թոշակին, կամ մեդրեսեների (դպրոցի) ուսուցիչներին, որպէսզի դրանք ապահոված իրենց պաշտօնը, ժողովուրդի դատերը կրթութիւնը անվճար կատարեն և անկախ կեանք վարելով արդարութեան շաւղի վրա կանգնած մարմնիշխն անիրաւ դատաւորների դէմ։ Կալուածատէրը կտակելով կալուածքի եկամուտի 1/3 կամ որևէ աւելի նուազ մասը այսպիսի բարենպատակ կրօնական հաստատութեան, կտակի քօղի տակ ձգտում է ապահովել իւր սերունդի ապագան, նրանց գոյքի անձեռնմխելիութիւնը, քանի որ «Էվլադի-Վաքֆի» կալուածների կառավարութիւնը (միւթէվէլիութիւնը) մընում է ընդմիշտ կտակողի արու զաւակներին յաջորդաբար, որոնք իւրացնելով եկամուտի մեծագոյն մասը, փշրանքը թափում են ախունդներին։ Իսլամական հիմնական օրէնքով «Էվլադի-Վաքֆ» հրատարակւած կալուածքը չի կարելի ծախել, փոխել, գրաւ դնել կամ բաժանել, որով յաջորդների ժառանգների պարտքի, յանցանքի կամ որևէ ուրիշ պատճառով անհնար է խլել, գրաւել, յափշտակել կալուածը անսահման ժամանակով։ Շէրիաթը ամէն անգամ յափշտակւած և կեղծումներով օտարացած «Էվլադի-Վաքֆ» կալքը դարձնում է օրինական ժառանգներին։ «Էվլադի-Վաքֆ» հրատարակւում է կալուածատիրոջ կամքով, հոգևորականութեան վճռով և խալիֆի, կամ շահի հրովարտակով, որով կալուածքը անձեռնմըխելի ժառանգական է դառնում։ Թէև Ռուսաստանի կալ-

ւածներից—գիւղերից մեծագոյն մասը եղել է «Էվլադի-Վագըֆ», բայց վերջին 25-30 տարւա ընթացքում դրանից մեծագոյն մասը ծախուել, յափշտակուել մասնաւորուել են և ոչ իսկ երկու տոկոսը մնացել է «Վագֆ»։ Մի յայտնի վէզիր Դիմիշկ անունով սրանից երկու դար առաջ կտակած «Էվլադի-Վագֆ» երեք հարիւր վաթսուն գիւղից այսօր միայն տասներկուսն է մնացել ժառանգների ձեռքին, այս էլ շընորհիւ Ռուսահպատակ եղբ. Նազարբէգեանների և Զարգարեանների, որոնք սրանից 40 տարի առաջ դիւանխանէյում հաստատած կապալագիրների ուժով ստիպել են կառավարութեան-քարգուզարին յարգելու իրենց հաստատած պայմանագիրը, ապա թէ ոչ. այս տասներկու գիւղերն էլ վաղուց ծախծխուած և փոփոխուած էին։ Սրանից հինգ տարի առաջ Թաւրիզի երկու յայտնի միւջթէհիդներ իրար դէմ կռիւ էին վարում այս «Դիմիշկիէ» Վագֆի Քիւր գիւղի համար, ձգտում էին իրար ձեռքից յափշտակել, որոնցից մէկը շատ չնչին գնով իւրացրեց այդ կալուածքը, ընդդէմ շէրիի օրէնքներին։

32. Ամէն մի կալուածատէր Իրանում հաստատ համոզուած է, որ իւր իշխանութեան տակ գտնուած (թէսսարուֆ) կալուածները ինքը յափշտակել, իւրացրել է նենգութեամբ, խարդախութեամբ և բռնութեամբ։ Այս հիման վրա բոլորի խղճի վրա ծանրացած է ապառաժի նման այն բեռը, թէ իրենք դուրս են գտնւում իսլամի դասից, իրենց ծոմն ու աղօթքը, բարեգործութիւնն ու ողորմութիւնը ընդունելի չեն, կանայքը թողնւած և զաւակները պոռնկորդի են։ Բայց մխիթարւում են միայն այն մտքով, որ ամբողջ երկիրը իրենց համանմաններն են յափշտակած, այս պատճառով աշխատում են խղճերը թեթևացնել, կամ համանմանների հետ ջէհէննէմ ուղղուելը այնքան տանելի չի թւում։ Ասենք կալուածատէր-

ներից շատերը, սկսած միւջթէհիդներից, խաւանից մինչև վերջին սարրաֆն ու վաճառականը անհաւատ են, նրանք ժըխտում են ամէն սրբութիւնը և կատարում են ծիսական աղօթքները, իսլամական ծիսակատարութիւնները լոկ ձեւ կամ քարկոծւելուց ազատ մնալու համար է։ Ամէն կալւածատէր աչքի առաջ ունենալով իր կատարած յափշտակութիւնները, չի կարող հաստատ համոզւած լինել, որ ձեռքում գտնւած (թէսսարուֆ) կալւածները իր անձեռնմխելի սեփականութիւնն է։ Որևէ յափշտակողի ձեռքից մի յանկարծական հրամանով, կամ կառավարչական վճռով քաշում, խլում են գիւղը, յանձնում են մի ուրիշին։ Այս պատճառով կալւածատէրը գիշեր ցերեկ աշխատում է անխզելի կապերով միանալ իր հովանաւորի հետ և սիրաշահել նահանգապետ-դատաւորին, կամ միւջթէհիդին, որպէսզի չվտանգէ իր կարողութիւնը։ Միայն կառավարութիւնը և միւջթէհիդները չեն սպառնում կալւածատիրոջ, դեռ մինչև անգամ որևէ ըմբոստ խանբէգ, որ ապստամբել է իշխանութեան դէմ, չի հպատակւում կառավարութեան, ինչպէս Ղարադաղի Րահիմ-խանը, Մուղանցի Խոսրով-խանը, մտնում է որևէ գիւղ և իւրացնում է կալւածքը, տասը, քսան տարի չի դուրս գալիս այսպիսի յափշտակութիւնից։ Պարսկական զօրավար Սիւլէյման խանը անցեալ դարում վաթսուն տարի Աֆշարի զօրքերի հրամանակալութիւնը իւրացնելով, բռնութեամբ յափշտակեց մօտ հարիւր գիւղ, որոնցից մեծագոյն մասը «Վագֆներ» էին, որոնց ժառանգները մինչև այսօր բողոքները շարունակում են Սիւլէյման խանի ժառանգների դէմ։ Կալւածների հասոյթը կլանում են Սիւլէյման խանի թոռները, իսկ «էվլադի-Վագֆի» միւթէվէլի ուէլիդները իրաւազուրկ չափչփում են դատաւորների գանները. արդարութիւնն են ուրանում։

33. Իրանում ոչ մի վճիռ չի կարելի վերջնական համարել, եթէ հիմնուած է որևէ սխալանքի վրա, նրա դէմ կարելի է բողոքել տասը, քսան, յիսուն տարի յետոյ, երբ պարզւի սխալանքը, և ստիպել դատաւորներին նորից քննել ու վճռել։ Ամէն մի նահանգապետ-դատաւոր լիազոր է իւր նախորդի վճիռները նորից քննելու, եթէ այդ պահանջում է կողմերից որևէ մէկը, բեկանելու և փոխելու, եթէ գրական փաստ ներկայանում։ Այնպէս որ՝ մի դատաւորի վճռածը երկրորդը բեկում է, երրորդը նորից վաւերացնում, չորրորդը հիմքից փոփոխում է և շարունակաբար։ Բաւական է որ դատաւորը գանկատ ստանա, նա պատասխանատուին պարտաւոր է կանչել, կողմերի թղթերն ու քաղերը քննել, խուզարկել և հնար մտածել միջից օգուտ դուրս բերելու։ Տկարի, անփողի բողոքը մխիթարական խօսքերից, օդային յոյսերից աւելի բաւարարութիւն չի կարող ստանալ, բայց նա միջոց է դատաւորի ձեռքում ճնշելու յափշտակողին և թեթևացնելու նրա գրպանները։ Քսան-երեսուն տարի շարունակաբար յափշտակուած գիւղերի եկամուտները անվերջ բողոքների առաջն առնելու համար վճարւում են դատաւորներին, մինչև խոպառ յուսահատւում, կործանւում և անհետանում են գանկատաւորները։

34. Ուժեղները ոչ միայն յափշտակում են թոյլերի կալուածները, այլ խիղճը այնպէս է թռել խանի, սարրաֆի ու վաճառականի սրտից, որ զրկում են նոյնպէս հարազատ եղբայրներին, քոյրերին, մայրերին, հօրեղբօր զաւակներին և թոռներին, այնպէս որ՝ ոյժը չափողը, զօրութեան վրա վըստահացողը, հովանաւորից ապահովածը անխնա զրկում է, նոյնպէս միրզաներին, ինչպէս կողոպտում է դրացուն և օտարականին։ Չունևորութեան տանջանքների սուկայի ներգործութիւնից մորմոքացողները, հարազատների մերժնաչու-

թիւններից թակարթուածները, հայրենի ժառանգութիւնից զրկուածները գնում, մտնում են ամենազօրեղ միւջթէհիդի հովանու տակ-ապաստանի: Տասնեակ տարով յամառ կռւից խոցոտուած-վիրաւորուածները, յուսահատ-ընկճուածները անվերջ թախանձանքներով վերջապէս կարողանում են զիջել տալ միւջթէհիդներին պաշտպան հանդիսանալ իրենց արդար գանկատին: Միւջթէհիդը քննում է գործը, փաստերը, դոկումէնտները, ուսումնասիրում է խնդիրը, պատրաստում է կարեւոր վկայականները, բանակցութեան մէջ է մտնում նահանգապետի, կամ կառավարչապետի հետ, համաձայնութիւնը, կապակցութիւնը կայացնում է, և երբ պատեհ առիթը հասնում է, ստիպում է յուսակտուր ապաստանողին իր անւանը փոխանցել վիճելի կալքը, կամ բաժինը: Վիրաւոր գանկատաւորը այրուած սրտով, ապագային իրեն իսպառ սպառնացող վտանգն անգամ նախատեսած, գոնէ վրէժը լուծելու տենչով, կնքում է վաճառման պայմանագիրը, վաւերացնել է տալիս ուրիշ կղերականի և միւջթէհիդը իր սպասաւոր սէիդներին ու ձիաւորներին ուղարկում է վիճելի կալուածքը գրաւելու: Սրանք գրաւում են ոչ միայն վիճելի կալքի պահանջուած մասը, այլ տիրում են ամբողջապէս: Այս դէպքը համոզում է բռնաւոր-յափշտակիչին, որ նա մեծաւոր իշխանութիւնից պիտի յոյսը կտրէ, քանի որ միւջթէհիդը առանց կանխաւոր նրանքին համաձայնութեան չէր յանդգնիլ այդ խիստ միջոցին դիմելու: Եթէ բարձրագոյն իշխանութիւնից, կամ հովանաւորից օգնութեան յոյսը կտրում է, նա անձամբ դիմում է միւջթէհիդի դուռը, նախատում, երբեմն թակում էլ է և ապա հաշտութիւնը կայանում է վերադարձնելով անիրաւի իւրացրածը: Այսպէսով կալուածքը դուրս է գալիս արջի ճիրանից, ընկնում է վագրի ճանկը:

35. Միջթէհիդը երկու երեք տարի գիւղի հասոյթից մաս տալիս է հալածական դրկուածին, հետզհետէ կրճատում և մի օր պատասխանում է, որ արդէն նրա հաշիւը փակ-ուած է։ Այստեղ արդէն հրամայում է դրագրին, որ հաշւի մանրամասնութիւնը ներկայացնէ դրկուածին, որը կարդում է եղած ծախսերը, վճարուած կաշառները, դատավարութիւնը և դատաստանական ծախսերը, նրան տուած նպաստները և գիւղի գնից դուրս գալով այս վճարումները դեռ մի բան էլ պարտք է մնում չարաբաստ գանկատաւորը։ Երկար բարակ քարոզներից, միջթէհիդին շրջապատող թալաբաների թա-խանձանքից սաստկած գանկատաւորը խաղաղ դրկւում է գիւ-ղից, թողնելով այդ յօգուտ միջթէհիդի։ Չեւաց ծախսի հինգ տասը թուման առնելով, հրապարակով իր հաճու-թիւնն էլ յայտնում է, որ նա լիովին ստացել է բաւականու-թիւնը, հեռանում է քաղցած ընտանիքի մօտ, հայհոյելով բազդին էլ, միջթէհիդին էլ, շէրիաթին էլ, գրքին էլ և յու-սահատութեան մէջ կամ խեղդւում է, կամ ցնորում։ Միջթէհիդը այս խաղով խիղճն էլ է խաղաղացնում, շրջապա-տողների առաջ արդարացնում է իր արարքը և համարձակ հետևորդներին առած գնում է մզկիթ աղօթելու, ցանկալով Ալլահին էլ խաբել։ Ինչպէս հաւատացնում են, միջթէհիդնե-րի գիւղերի մեծագոյն մասը այսպէս յափշտակողներից յա-փշտակուած կալուածներից է կազմուած։ Ուրիշ կերպ չի էլ կարելի մտածել, քանի որ քսան տարուան ընթացքում միջ-թէհիդները օրինական եկամուտներով չէին կարող հարիւր, հարիւր յիսուն գիւղ սեփականել և ժառանգութիւն թողնել ճետերին։ Այսօրւա Ատրպատականի կալուածատէր միջթէհիդները ժա-ռանգութիւն կամ բնաւ չեն ստացել, կամ մի երկու գիւղ են ստացել։ Միջթէհիդները եթէ այսպէս են վարւել, հապա

ինչ ընթացքով են կուտակել սեղանաւորները, վաճառականները և խաները իրենց հարիւրաւոր գիւղերը՝ ընթերցողը կարող է մակաբերել, եթէ ուշադրութեամբ քննէ։ Այս էլ պիտի գիտենալ, որ գիւղատիրութիւնը Ատրպատականում զարգացել է և այս ծայրահեղութեան հասել է, վերջ 30 տարուա ընթացքում. 1870 թուականի սովից յետոյ, որով ոչ ոք չի կարող պարծել, թէ կալուածները իրենք ժառանգութիւն են ստացել ծնողներից, կամ պապերից։ Իսկ այսքան կարճ ժամանակամիջոցում այդքան կալուած խլացնողի բարոյականի առաձգութեան սահմանը չեմ կարծում, որ մաթեմաթիքական թւերով հնարաւոր լինի հաշուել։

36. Կալուածատիրական այս խայտառակ եղծումները՝ շէրիական նորանոր կեղծումներ (Հիլլէի-շէրի) է առաջացրել, որոնց մանրամասնութիւնները մեզ շատ հեռու կտանէր նըպատակից, ուստի գաղափար տալու համար մի օրինակով ընթերցողին ծանօթացնենք խորամանկ ախունդների այս ճանճարամտութեան հետ: Վերևը յիշեցինք, թէ որևէ հաշտութիւն, համաձայնութիւն կատարելիս, պայմանագիր վաւերացնելիս ախունդը կամ մուջթէհիդը կարդում է ղուրանից որոշ այաթ (սիղա), որով վաւերացնում է կատարուած գործողութիւն և նրա դէմ որևէ ընթացք անօրէնութիւն է համարւում։ Այդպէս է և առուտուրի համաձայնութիւնը։ Մէկը երբ կալուածք է ծախում, կալուածագիրը վաւերացնելուց առաջ կողմերի համաձայնութիւնը ստանում և ապա աղօթելով կնքում է։ Այս աղօթքը կատարելուց յետո, կալուածքի իշխանութիւնը անցնում է գնողին, համաձայն շէրիաթի, որի անկապտելի սեփականութիւնն է դառնում։ Երբ մէկը ճնշուած պարտաւորւում է իր կայքը ապահովցնելու, կամ յափշտակողից ետ ստանալու համար փոխանցել որևէ մուջթէհիդի

անուանը, նա նախապէս գնում է իւր տան առաջնորդ, վստահութեանը արժանացած ախունդի, կամ միւջթէհիդի մօտ, խոստովանում է վիճակը և կայքը ծախում է կնոջը կամ որդուն, կամ աղջկան, և կամ որևէ ուրիշի անուան, վաւերացնել է տալիս կալւածագիրը սիղայով (աղօթքով)։ Այս փաստաթուղթը նոր տիրոջը յանձնելուց մի քանի ժամանակ յետո, երկրորդ կալւածագիրը կնքել է տալիս ու յանձնում է միւջթէհիդին։ Երբ գիւղը յափշտակողից ետ ստանալով գրաւում է միւջթէհիդը, առաջի թղթի տէրը հրապարակ է գալիս և նա է պահանջում կալւածքը։ Համաձայն շէրիաթի հին կալւածագիրն է տիրում գիւղին, իսկ երկրորդի վրա կարդացւած աղօթքը անզօր է, քանի որ կայքը երկրորդ վաճառման օրը առաջինի սեփականութիւնից դուրս է եկած։ Համաձայն շէրիաթի, ճնշւածը անճարացած իւր իրաւունքը ձեռք բերելու համար կարող է կեղծիքի դիմել և նրա արարքը պատժի ենթակա չէ, քանի որ գոյութիւնը պահպանելու համար արտաքուստ կեղծելը (թաղվիաթ) պարտաւորեցուցիչ է։ Շիա բոլոր աղանդների հոգևորականները պաշտպանում են նախկին—հին թւով հաստատւած դոկումէնտի տիրոջը, իսկ երկրորդ տէրը զրկւում է։ Այնքան այսպիսի կեղծիքներ է կատարւել, որ այժմ կալւածք գնողը տեսնում է ծախողին, որ նա կնոջը, զաւակներին և մերձաւորներին ներկայացնի ախունդին, որպէսզի նրանք էլ խոստովանեն, թէ համաձայն են այդ վաճառումին և իրենց կողմից արգելք չկա, որպէսզի եթէ դրանք ունին ներքին ծածուկ կալւածագիր, նրա ույժը ոչնչանա և բողոքելու հնարաւորութիւնից զրկւին։ Բայց ճընշւածները այնքան խորամանկացել են, որ նորանոր միջոցներ են հնարում, որ կարողանան բռնակալների և յափշտակիչների դիմակները պատռեն և գոյութիւնները պահպանեն։

37. Այս պարագաներից ստիպուած, Պասկեւիչը դաշնագրութեան մէջ Թուրքմէնչայում 1829 թ. փետրուարին, վաճառականական դաշնագրի 2 յօդուածում որոշեցին, որ երբ որեւէ պարսկահպատակ իւր կալուածքը ծախէ կամ գրաւ դնէ ռուսահպատակի մօտ, պարսկական դիւանատունը պիտի քննէ թէ արդեօք կալուածքը ծախուած կամ գրաւական չէ ուրիշի մօտ և ապա հաստատէ։ Իսկ կառավարչական այս հաստատութեան գոյութեան դէպքում մոլլաների վաւերացրած, միւջթէհիդների սիգա կարդացած թղթերը կորցնում են իրենց ոյժը։ Այս դաշնագրից օգտւում են բոլոր եւրոպական ազգերը։

38. Պարսկաստանում բազմաթիւ շիա աղանդաւորներ կան, որոնք իրար դէմ ատելութեամբ են համակուած։ Այս աղանդաւորները որքան որ հալածւում են, այնքան էլ տարածւում են։ Բոլորն էլ շիա են հրապարակով, բայց նախատում են իրար ընթացքը։ Տիրող կրօնը,—միւթէշէրիները հալածում են ոչ միայն բաբիներին, Հաջի-Քէրիմ խանիներին, Ճէյխիներին, այլ անվերջ նախատւած Ալիուլլահիները, Իսմայիլիդները, Սօֆիները, Դաւուդիները, Ֆօրանները և ուրիշները։ Բոլոր աղանդաւորների ներկայացուցիչ միւջթէհիդները նստում են քաղաքներում և վարում են իրենց հետեւողների գործերը։ Ամէն մի աղանդաւոր իր դատաստանական գործը իր աղանդապետին է բերում քննելու ու վճռելու։ Տարբեր աղանդաւորները, գանգատաւոր թէ պատասխանատու, աշխատում են գործը իրենց աղանդապետին հասցնելու, որպէսզի նրա հովանաւորութիւնը վայելին, գործերը շահեն։ Դատավարութեան ընթացքում միւջթէհիդները միշտ օգնում են իրենց անձնուէր հետեւողներին, որից ծագում է աւելի կատաղի վէճ և անկայունութիւն։ Այս դէպքին ընկճուածը դիմում է միւթէ-

չէրի միւջթէհիդի հովանաւորութեան, որի ուժեղ ձայնը խեղդում է նոյն իսկ արդարութիւնը, քանի որ նրա հետեւորդների թիւը մեծ է, նա ամէնից հզօր է և բռնաւոր։ Այս պատճառով աղանդաւորները կպած են աւելի կառավարչական ծառայողներին, աւելի խորամանկութեամբ են գործում և յենւելով կառավարչական ուժին, միշտ տապալում են հակառակորդներին։ Այնքան ջերմ կերպով են ծառայում Ալիուլլահիները, Գօրանները, որ մինչև անգամ շահի, գահաժառանգի վստահութիւնն են գրաւել և նրանց ուտելիքի, խմելիքի, հագուստի և ուրիշ ծախսերի գործերի վերատեսուչների պաշտօնը նրանք են գրաւել։

39. Բացի պարսկական դատարանները, Ատրպատականում գոյութիւն ունին նոյնպէս օտարականների դատարանները։ Ամէն մի պետութեան կօնսուլատը դատում և վճռում է անկախ իւր հպատակների գործերը իրենց երկրի օրէնքների համեմատ, քաղաքական թէ քրէական։ Տարբեր երկրացի օտարականների մէջ եղած գործերը, նոյնպէս վարում են իրանց կօնսուլները, պահանջատէրը և իւր կօնսուլի ներկայացուցիչը գնում են պատասխանատուի կօնսուլատից բաւարարութեան վճիռն ստանալու։ Կօնսուլները վաւերացում են, հաստատում իրենց հպատակների մատեանները, մուրհակները և պայմանագիրը։ Կօնսուլատներն ունին արխիւ, բանտ, գաղտնի ոստիկանական հսկողութիւն և յանցաւորներին ուղարկում են իրենց հայրենիքի դատարանները դատելու։ Շրջակա քաղաքներում և աւաններում կօնսուլներն ունին ագէնտներ և կամ վաճառականութիւնը ընտրում է աւագ իրենց ներքին գործերը վարելու, դատելու և պաշտպան հանդիսանալու պարսիկների ոտնձգութիւնների դէմ։

40 Քրիստոնեա պարսկահպատակները ունին իրենց

եկեղեցական և ժողովրդական ժողովները, որոնք վարում են համայնքի ներքին գործերը հաշտարար որոշումներով։ Դատում են կանկատները, բաժանում են ժառանգութիւնները և վաւերացնում են մուրհակներ և պայմանագրեր։ Ատրպատականի Հայերի առաջնորդարանը գաւառական գործակալական ժողովների արարքը վաւերացնում կամ բեկանումէ, թէ քաղաքացիական, թէ ընտանեկան և թէ նոյն իսկ քրէական գործերը մտնում են սրանց ժողովները, ենթարկւում են քննութեան. եթէ կողմերը անպայման համաձայնին կատարւած որոշումներին։ Հակառակ պարագային գործը հանում է կառավարութեան և քարգուզարները հարստահարում կողմերի քսակները։

Դատաստանական այս սոսկալի վիճակը անշուշտ ժողովուրդի արդար բողոքին տեղի պիտի տար, արտունջներն ու մրմունջները պիտի խռովէին, ինչպէս յափշտակողների, նոյնպէս պետական բարձր իշխանաւորների հանգիստը։ Բայց այնպիսի խոր տգիտութեան մէջ է թաղուած երկիրը, որ չարաչար ժողովուրդը մոլորւել է, առաջնորդող տարր չունի, որ հետևի։ Կան մի դասս աղքատ կղեր—իւլէմաներ, որոնք անվերջ քարոզներ են կարդում ժողովրդին սթափելու, արթնանալու ոչ միայն անիրաւ, կաշառակեր դատաւորներից—քաղաքական թէ կրօնական, այլ թօթափել հողատիրական լուծը, որը ղուրանի և շէրիաթի հակառակ նրա վզին դրւել է ձրիակերների և հարամխորների (հարամ ուտողների) ձեռքով։ Ժողովուրդի բերանը այնպէս է վառւել ախունդներից և թալաբաներից, որ նրանց քարոզութիւնը նպատակի չի հասնում, քանի որ սրանք—անփող կղերը հնարաւոր եղած դէպ-

քում թշւառի պատառը կլանելուց չեն խղճահարւում և կալւածներ գրաւելուց չեն երես դարձնում։ Եթէ պատահի, որ ազնիւ ընթացքով մի ախունդ կարողանա գրաւել ժողովրդի սիրտը, սպառնալ միւջթէհիդներին, այն ժամանակ վերջինների դաւով այդպիսիներին կառավարութիւնը աքսորում է, կամ ոչնչացնում, որպէսզի ամբոխը չկարողանա խլրտալ։ Իսկ իրենք իրենց ինտելիգենտ համարող երիտասարդ պարսիկները այնքան փոքրաթիւ են, այնքան տգէտ ու ապիկար, որ բարոյական ուժ չեն ներկայացնում, որ կարողանան կռիւ դուրս գալ և իրենց փայփայած «Թանզիմաթը» (րէֆորմ) պահանջել և ստիպել գործադրելու։ Պարսիկ ադմինիստրատորների անսահման իրաւունքները, բարբարոսական պատիժները ու պատուհասները այնքան զարհուրելի է, որ թոյլ երիտասարդութիւնը չի կարող երկրում գոյութիւնն անգամ ցոյց դնել։ Ամբողջ Պարսկաստանի ինը միլիոն ժողովրդի կառավարութիւնը, չահնշահի իշխանութիւնը, չունի նոյն իսկ մի հատ ուսումնարան, ոչ թէ բարձրագոյն, նոյն իսկ միջնակարգ կամ տարրական, որ կարողանա կրթել բարոյապէս ազգաբնակութիւնը, իսկ ախունդների մզկիթներում ուսանդած այբուբենով ինչ սնունդ պիտի կարողանա ստանալ մատաղ սերունդը։

Բայց Իրանի դատաստանական վիճակն այնքան սոսկալի է, քաղաքների միջնակարգ և բանւոր դասը այնպիսի անիրաւութիւնների ենթարկւած է, զրկանքները նրա սրտում այնպիսի խոցեր են դրել, թոքերն այնպէս են վիրաւորել, որ կամա ակամա պիտի ցոյցեր կատարէր և պարտաւորացնէր կառավարութեան դրական օրէնքներ հիմնել և պաշտպանել ժողովրդի շահերը բռնաւորների կամայականութիւններից։ Այս ցոյցերը ստիպեցին և շահնշահի հրամանով Թէհրանում

